ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

4

ԱՊՐԻԼ

ԵՐԵՎԱՆ 1962

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 4
ԱՊՐԻԼ
1962 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIX
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ





# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՐՎԱԾԱՅԻՆ ՃԱԿԱՏԸ

Մեր Հայրենիքի լայնարձակ տարածություններում տիրաբար քայլում է առաջին գարունը պարտիայի XXII համագումարից հետո, մեծ գործերի ու սխրանքների գարունը: Յոթնամյակի չորրորդ տարվա գարնան գալուստը մեր երկրում նշանավորվեց քաղաքական ու աշխատանքային հզոր վերելքով, որն առաջ բերին ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումները:

Կոմունիստական պարտիան ձեռնամուխ է եղել ՍՄԿՊ Ծրագրի հետևողական կենսագործմանը: Հատկանշական է, որ XXII համագումարից հետո իր առաջին պլենումում պարտիայի Կենտրոնական Կոմիտեն քննության առավ կոմունիստական շինարարության ամենաբարդ, բայց և կենսական մեծ նշանակություն ունեցող հարցերից մեկը՝ սոցիալիստական գյուղատնտեսության ղեկավարումը բարելավելու հարցը: Եվ դա միանգամայն օրինաչափ է ու հասկանալի: Չէ՞ որ հզոր արդյունաբերության հետ մեկտեղ ծաղկուն, բազմակողմանիորեն զարգացած և բարձր մթերատու գյուղատնտեսության ստեղծումը կոմունիզմի կառուցման պարտադիր պայմանն է:

Գյուղատնտեսությունը կոմունիստական շինարարության հարվածային ճակատն է, և երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելը մեծ սխրանք է: Այն հանդիսանում է կառուցվող ապագա հասարակության նյութա-տեխնիկական բազայի անբաժանելի մասը և շոշափում է յուրաքանչյուր մարդու շահերը: Ահա թե ինչու սովետական մարդիկ այդպիսի մեծ միահամուռությամբ հավանություն տվին պլենումի որոշումներին և ջերմորեն արձագանքեցին ՍՄԿՊ Կենտկոմի՝ բոլոր աշխատավորներին հղած Դիմումին: Պլենումի փաստաթղթերում նրանք տեսնում են իրենց բարեկեցության բարձրացման և սոցիալիստական պետության հզորության ուժեղացման նկատմամբ Կոմունիստական պարտիայի կողմից ցուցաբերվող անդուլ հոգատարության մի նոր, վառ օրինակը:

Ներկայումս խոշոր մասշտաբի, հիրավի, ռևոլյուցիոն գործ է կատարվում երկրում: Վերակառուցվում է գյուղատնտեսության ղեկավարումը: Ներքևից մինչև վերև ստեղծվում է գյուղատնտեսության կառավարման կուռ սիստեմ, ծնվում են բոլորովին նոր օրգաններ, որոնք ինչպես կառուցվածքով, այնպես էլ իրենց առջև դրված խնդիրներով նախորդը չեն ունեցել:

Մեր երկրում գյուղատնտեսական օրգաններ, անշուշտ, շատ են եղել և երբեք դրանց պակասը չի զգացվել: Բայց դրանք բոլորն էլ զբաղվել են գյուղատնտեսության ընդհանուր ղեկավարությամբ: Բանն այն է, որ մինչև հիմա և ոչ մի օրգան չի շոշափել գյուղատնտեսության զարգացման գլխավոր բնագավառը՝ մթերքների արտադրության կազմակերպման բնագավառը, և, որքան էլ տարօրինակ է, պա-

տասխան չի տվել այդ չափազանց կարևոր գործի համար: Զբաղվելով կոլտնտեսություններին ու սովխոզներին ընդհանուր դիրեկտիվներ և ցուցումներ տալով, այդ օրգանները խորամուխ չեն եղել յուրաքանչյուր առանձին կոլտնտեսության ու սովխոզի գործերի մեջ, կոնկրետ օգնություն չեն կազմակերպել ետ մնացողներին, օպերատիվ կերպով չեն լուծել ներքևից բարձրացվող հարցերը: Դրանց տեսադաշտից դուրս են մնացել հանրային հարստության աղբյուրը հանդիսացող հողը, ինչպես նաև տեխնիկան և աշխատանքային ռեսուրսները ռացիոնալ կերպով օգտագործելու խնդիրները:

Կյանքը բազմաթիվ անհերքելի փաստերով ապացուցել է, որ արդեն հասունացել են գյուղատնտեսության ղեկավարման առավել կատարելագործման հարցերը: ՍՄԿԿ Կենտկոմի Մարտյան պլենումը, ելնելով այն բանից, որ գյուղատնտեսության ղեկավարման գոյություն ունեցող սիստեմն այլևս չի համապատասխանում նրան ներկայացվող բարձր պահանջներին և սահմանափակում է եղած հարուստ ռեզերվների օգտագործման հնարավորությունները, որոշեց արմատապես վերակառուցել այն: Պլենումը խնդիր դրեց ստեղծել գյուղատնտեսության կառավարման այնպիսի օրգաններ, որոնք զբաղվեն պլանավորմամբ, վերահսկեն մթերքների արտադրությունը և մթերումները, մոտիկից և օպերատիվ ղեկավարեն յուրաքանչյուր կոլտնտեսություն ու սովխոզ, գործնականորեն ազդեն նրանց աշխատանքների վրա և, որ ամենագլխավորն է, պատասխանատու լինեն երկիրը գյուղատնտեսական մթերքներով ապահովելու համար: Հենց այդպիսի օրգաններ են կոլտնտեսայինսովխոզային և սովխոզային-կոլտնտեսային տերիտորիալ արտադրական վարչությունները, որոնք ստեղծվել են գյուղատնտեսության կառավարումը վերակառուցելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1962 թվականի մարտի 22-ի որոշման համաձայն:

Արտադրական-տերիտորիալ յուրաքանչյուր վարչություն միավորում է մի քանի շրջան: Գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների գործը վերահսկելու, սահմանված առաջադրանքների կատարման գործում կոլտնտեսություններին ու սովխոզներին օգնելու նպատակով արտադրական վարչություններն ունեն տեսուչ-կազմակերպիչներ, որոնցից յուրաքանչյուրն ամրացված է որոշակի թվով կոլտնտեսությունների ու սովխոզների:

Կոլտնտեսություններում ու սովխոզներում կազմակերպչական և մասսայականքաղաքական աշխատանք կատարելու, գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների պլանների կատարման գործում սկզբնական պարտիական ու կոմերիտական կազմակերպություններին օգնություն ցույց տալու համար արտադրական վարչություններում ստեղծվել է պարտիական ու կոմերիտական կազմակերպիչների ինստիտուտ՝ համապատասխան հրահանգիչների խմբով: Արտադրական վարչություններում ստեղծվում են միջշրջանային թերթեր:

Կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարումն այդ վարչություններն իրականացնում են դեմոկրատական հիմունքներով. այդ նպատակով յուրաքանչյուր վարչությունում հիմնվում է խորհուրդ՝ վարչության պետի նախագահությամբ, որի կազմի մեջ մտնում են պարտիական ու կոմերիտական կազմակերպիչները, պարտշրջկոմների առաջին քարտուղարները և շրջսովետների գործկոմների նախագահները, սովխոզների դիրեկտորները, կոլտնտեսությունների նախագահները, «գյուղտեխնիկայի» բաժանմունքի կառավարիչը:

Տերիտորիալ-արտադրական վարչության մեջ պարտիան և կառավարությունը տեսնում են այն հիմնական օղակը, որի օգնությամբ պետք է վճռականորեն բարելավվի գյուղատնտեսության կառավարումը և վերջ տրվի մինչև այժմ այդ գործում տիրող դիմազրկությանն ու անպատասխանատվությանը: Արտադրական վարչությունները ոչ թե բյուրոկրատական, այլ խիստ օպերատիվ, մարտական օրգաններ են: Գլխավորը նրանց գործունեության մեջ պետք է լինի կազմակերպական աշխատանքը: Նրանք պարտավոր են իրենց ուշադրությունը կենտրոնացնել այնտեղ, որտեղ նկատվում է թուլություն և վտանգ պետական առաջադրանքների կատարման գործում:



Գյուղատնտեսության կառավարման նոր օրգանները՝ տերիտորիալ-արտադրական վարչություններն իրենց անելիքները պետք է տեսնեն ոչ թե վանական նիստեր, խորհրդակցություններ ու ժողովներ գումարելու, արձանագրություններ կազմելու և ծավալուն որոշումներ ընդունելու կամ էլ երկարաշունչ շրջաբերականներ գրելու մեջ, այլ տեղերում կատարվող ամենօրյա կենդանի կազմակերպչական աշխատանքում, առանձին վերցրած ամեն մի տնտեսության հուզող հարցերը արագորեն լուծելու, արտադրության մարդկանց ուսուցանելու մեջ: Չպետք է թույլ տալ, որ կրկնվի անցյալի այն արատավոր պրակտիկան, երբ գյուղատնտեսական օրգանի աշխատողը կոլտնտեսություն կամ սովխոզ էր գնում, վերցնում այս կամ այն վիճակագրական տվյալը, վերադառնում և կաբինետում նստելով երկար ու բարակ վեկուցագրեր գրում վերադասին:

Վարչության աշխատողները և, առաջին հերթին, տեսուչ-կազմակերպիչները պետք է ժամանակի մեծ մասն անցկացնեն իրենց ամրացված տնտեսություններում, խորամուխ լինեն նրանց գործերին, ազդեն աշխատանքների ընթացքի վրա, օգնեն գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը: Իհարկե, չի բացառվում նաև խորհրդակցություններ ու նիստեր անցկացնելը, բայց դրանք պետք է հրավիրվեն հազվադեպ և այն էլ այն դեպքում, երբ հարկավոր է ամփոփել աշխատանքի արդյունքները կամ ընդհանրացնել դրական փորձը, այն մյուս տնտեսություններում տարածելու նպատակով: Ժողովամոլությունը, նիստարարական աղմուկը, ինչպես առհասարակ, այս դեպքում առավել վնասակար են և կարող են կազմալուծել կենդանի աշխատանքը: Վարչությունների ղեկավարներն ու պարտկազմակերպիչները պետք է ավելի շատ լինեն կոլտնտեսություններում ու սովխոզներում, խուսափեն ամեն մի փոքր առիթով տնտեսությունների ղեկավարներին աշխատանքից կտրելուց ու կենտրոն կանչելուց:

Պարտիայի Կենտկոմի և Մինիստրների Սովետի որոշմամբ միութենական ռեսպուբլիկաներում, մարզերում, երկրամասերում ստեղծվում են գյուղատնտեսական կոմիտեներ պարտիայի Կենտկոմի, մարզկոմի ու երկրկոմի առաջին քարտուղարների գլխավորությամբ: Գյուղատնտեսության կոմիտե է կազմակերպվում նաև Միության մասշտաբով:

Գյուղատնտեսության կառավարման պարտիայի մշակած և այժմ արդեն գործողության մեջ մտնող այս սիստեմը լայն հնարավորություններ է ստեղծում այն բանի համար, որ ավելի ճիշտ ուղղություն տրվի կոլտնտեսային ու սովխոզային արտադրությանը, առավել արդյունավետ օգտագործվեն ռեզերվները: Այդ սիստեմին անցնելը կնպաստի կարգապահության ամրապնդմանը, հանձնարարված գործի համար մարդկանց պատասխանատվության բարձրացմանը: Գյուղատնտեսության կառավարման այս վերակառուցումը կտա այնպիսի մեծ արդյունք, ինչպիսին տվեց արդյունաբերության կառավարման վերակառուցումը: Դրա համար էլ պարտիական կազմակերպությունները, երկրի բոլոր աշխատավորները ջերմորեն պաշտպա-

նում են առաջարկված սիստեմը, հավանություն տալիս այդ կապակցությամբ իրագործվող միջոցառումներին:

Պարտիայի Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումները և գյուղատնտեսության կառավարումը վերակառուցելու վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի և միութենական կառավարության մարտի 22-ի որոշումը մեծ խանդավառությամբ ընդունեցին նաև մեր ռեսպուբլիկայի աշխատավորները: Այդ որոշումները ամենուրեք քաղաքական ու աշխատանքային մեծ վերելք են առաջ բերել: Գյուղատնտեսության աշխատողները, ուսումնասիրելով այդ փաստաթղթերը և քննարկելով որոշումները, պայքար են ծավալում հենց այս տարի գյուղատնտեսական մթերքների արտադրության բնագավառում լուրջ հաջողությունների հասնելու համար:

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի՝ օրերս տեղի ունեցած պլենումը քննարկեց ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի արդյունքները և գյուղատնտեսության ղեկավարումը բարելավելու ասպարեզում ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության խնդիրները: Պլենումը ամբողջովին ու լիովին հավանություն տվեց երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու վերաբերյալ պարտիայի նոր Ծրագրով առաջադրված խնդիրների պրակտիկ կենսագործմանը ուղղված պարտիայի Կենտկոմի պլենումի որոշմանը, գյուղատնտեսության հարցերի վերաբերյալ ընկեր Ն. Ս. Խրուշչովի ելույթներում շարադրված դրույթներին և միջոցառումներին: Պլենումի հավանությանն արժանացան ռեսպուբլիկայի գյուղատնտեսության կառավարման օրգանները վերակազմելու ուղղությամբ Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի ձեռնարկած միջոցառումները:

Ռեսպուբլիկայում ստեղծված է կոլտնտեսային-սովխոզային տերիտորիալ-արտադրական 11 վարչություն, յուրաքանչյուրը 2—5 շրջանների համար, ՀԿՊ և ՀԼԿԵՄ Կենտկոմների պարտիական ու կոմերիտական կազմակերպիչների ինստիտուտով. կազմակերպված է Գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրություն, Գյուղատնտեսությունը ղեկավարող ռեսպուբլիկական կոմիտե: Արդեն ավարտված է վարչությունների կոմպլեկտավորումը: Նրանցում աշխատանքի են անցել պարտիական, սովետական ու տնտեսական աշխատանքի մեծ փորձ ունեցող և կազմակերպչական ընդունակություններով օժտված մարդիկ, ինչպես մասնագետներ, այնպես էլ պրակտիկներ: Շուտով լույս կտեսնեն միջշրջանային թերթերը:

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի պլենումում, որտեղ մասնակցում էին նաև արտադրական վարչությունների պետերը, պարտիական ու կոմերիտական կազմակերպիչները, սկզբունքային լուրջ քննարկման ենթարկվեցին ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ներկա վիճակը և նրա հետագա զարգացման հարցերը: Հայտնի է, որ վերջին տարիներին Սովետական Հայաստանի կոլտնտեսություններն ու սովխոզները անվիճելի հաջողությունների են հասել գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու բնագավառում: 1961 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, շաքարի ճակնդեղի արտադրությունն ավելացել է 39, բանջարեղենինը՝ 58,4 տոկոսով: Նույն ժամանակամիջոցում խաղողի արտադրությունն ավելացել է 2,5 և պտուղներինը՝ 1,8 անգամ: Զգալի չափով ավելացել է անասունների գլխաքանակը, բարձրացել է մթերատվությունը, որի շնորհիվ էլ վերջին 8 տարում մսի արտադրությունն ավելացել է 1,8 անգամ, կաթինը՝ 1,7, բրդինը՝ 1,6 և ձվինը՝ 2,3 անգամ: Այդ տարիներին հարստացել է կոլտնտեսություն-



ների ու սովխոզների տեխնիկական բազան, որոշակի աշխատանք է կատարվել ջրաշինարարության բնագավառում:

Գյուղատնտեսական մթերքների արտադրության տեմպերը, սակայն, ինչպես նշվեց պլենումում, չեն բավարարում բնակչության աճող պահանջմունքները և ետ են մնում յոթնամյա պլանով սահմանված առաջադրանքներից: Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությանը խոշոր վնաս հասցրեց խոտադաշտային սիստեմը: Վերջին տարիներին մեծ չափերով և միանգամայն անհիմն կերպով կրճատվեցին հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները, կգալի տարածությամբ բերրի հողեր հատկացվեցին նվազ բերքատու կուլտուրաների ցանքին և մաքուր ցելին: Մի՞թե ներելի է, որ մեր ռեսպուբլիկայում, որտեղ առանց այն էլ հողային ռեսուրսները մեծ չեն, վարելահողերի գրեթե 39 տոկոսը օգտագործվում է անտնտեսվար կերպով: Կերի պակասը խանգարում է անասնաբուծության արագ զարգացմանը, կոլտնտեսություններում ու սովխոզներում դեռևս անբավարար ուշադրություն է հատկացվում եգիպտացորենի և լոբազգի կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակմանը:

Պլենումը ընդունեց որոշում, որի մեջ նշված են այն բնագծերը, որ պետք է նվաճեն գյուղատնտեսության աշխատողներն ընթացիկ տարում: Ռեսպուբլիկայում 1962 թվականին ամբողջությամբ վերցրած պետք է ստացվի 293 հազար տոննա հացահատիկ (այդ թվում՝ 33 հազար տոննա եգիպտացորեն), 12 հազար տոննա ծխախոտ, 106 հազար տոննա շաքարի ճակնդեղ, 118 հազար տոննա խաղող, 301 հազար տոննա պտուղ, 135 հազար տոննա բանջարեղեն, 135 հազար տոննա կարտոֆիլ, 46 հազար տոննա միս (սպանդանոցային քաշով), 349 հազար տոննա կաթ, 4205 տոննա բուրդ, 188 միլիոն ձու: Նախատեսված է մեկ կովի կաթնատվությունը հասցնել 1550 կիլոգրամի, մեկ ոչխարի բրդատվությունը՝ 2,5 կիլոգրամի, յուրաքանչյուր հավից ստանալ 90—100 ձու: Այս բնագծերը նվաճելու համար պլենումը խնդիր դրեց ընդարձակել հացահատիկի, եգիպտացորենի, լոբազգի կուլտուրաների ցանքատարածությունները և բարձրացնել ինչպես դրանց, այնպես էլ տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը, ավելացնել անասունների գլխաքանակը:

Պլենումը պարտիական, սովետական ու գյուղատնտեսական օրգաններից, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներից և պարտկազմակերպություններից պահանջեց գործնական միջոցառումներ մշակել ու իրագործել յուրաքանչյուր վարչությունում, շրջանում, ամեն մի կոլտնտեսությունում ու սովխոզում ինչպես ընթացիկ, այնպես էլ առաջիկա տարիներին գյուղատնտեսական մթերքների արտադրությունը շեշտակիորեն ավելացնելու վերաբերյալ Մարտյան պլենումի առաջադրած խնդիրները հաջողությամբ կենսագործելու համար:

Ռեսպուբլիկայում օրեցօր ավելի են ծավալվում գարնան գյուղատնտեսական աշխատանքները: Այս եռուն օրերին էլ իրենց գործունեությունն են ծավալում գյուղատնտեսական կառավարման նորաստեղծ օրգանները:

Նրանք աշխատանքի են անցել այնպիսի ժամանակ, երբ գյուղում կան անհետաձգելի լուծում պահանջող շատ հարցեր, երբ դրվում են բարձր բերքի հիմքերը: Առաջին իսկ օրերից զգացվում են ղեկավարման նոր սիստեմի առավելությունները: Ախուրյանի, Գորիսի, Եղեգնաձորի, Մարտունու և մյուս տերիտորիալ արտադրական վարչությունների աշխատողների ու մասնագետների ակտիվ մասնակցությամբ և օգնությամբ վերանայվում է ցանքատարածությունների կառուցվածքը, կոլտնտեսություններում ու սովխոզներում խոտերի կրճատման հաշվին ընդարձակվում

են եգիպտացորենի, բարձր բերքատու լոբազգի կուլտուրաների ցանքատարածությունները: Բոլոր վարչություններում ավարտվել է տեսուչ-կազմակերպիչների ամրացումը կոլտնտեսություններին ու սովխոզներին և նրանք արդեն տեղերում կոնկրետ գործի են անցել: Պարտիայի շրջկոմների հետ համագործակցած՝ գյուղում մասսայական-քաղաքական աշխատանք են ծավալում պարտիական նոր աշխատողները, կենտկոմների պարտիական ու կոմերիտական կազմակերպիչները և հրահանգիչները:

Գյուղատնտեսության վերելքն ապահովելու համար անհրաժեշտ է առաջիկա մի քանի օրում լիովին ավարտել գյուղատնտեսական օրգանների կոմպլեկտավորումը հմուտ մասնագետներով ու փորձված կազմակերպիչներով, նորմալ պայմաններ ստեղծել գյուղատնտեսության նոր օրգանների արդյունավետ աշխատանքի համար: Կազմակերպչական շրջանում անխուսափելի են դժվարությունները, կարող են լինել նույնիսկ առանձին վրիպումներ ու սխալներ: Խնդիրն այն է, որ դրանք արագորեն հաղթահարվեն:

Տերիտորիալ-արտադրական վարչությունների աշխատանքի հաջողությունը որոշ չափով կախված կլինի նաև ռեսպուբլիկական օրգանների կողմից նրանց ցույց տրվող օգնությունից: Անհրաժեշտ է, որ այդ վարչությունների կողմից բարձրացվող հարցերը ժամանակին արժանանան համապատասխան վերադաս օրգանների ուշադրությանը և լուծվեն առանց ձգձգումների: Չպետք է թույլ տալ, որ ստեղծվեն այնպիսի պայմաններ, որպեսզի այս կամ այն հարցը լուծելու համար վարչության ղեկավար աշխատողները օրերով կտրվեն աշխատանքից և ժամանակ վատնեն գերատեսչություններում:

Ռեսպուբլիկայի պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանների, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների և սկզբնական պարտկազմակերպությունների պարտքն է գործարար սոցիալիստական մրցություն ծավալել գյուղատնտեսական մթերքների արտադրության պետական պլանները և ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և մթերքների ինքնարժեքն իջեցնելու համար: Այժմ, ավելի քան երբևէ, անհրաժեշտ է թանկ գնահատել ժամանակը, արդյունավետ օգտագործել յուրաքանչյուր օրն ու ժամը՝ գարնանացանը սեղմ ժամկետում ու բարձր որակով կատարելու, հանրային հոտը ձմեռումից անկորուստ դուրս բերելու համար: Պետք է վերացնել ցանքի առաջին օրերին նկատվող թերությունները. իսկ թերություններ, անկազմակերպ աշխատանքի փաստեր նկատվում են Ղափանի, Աբովյանի, Աշտարակի շրջանների մի շարք կոլտնտեսություններում ու սովխոզներում:

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի պլենումը ռեսպուբլիկայի բոլոր կոմունիստների և կոմերիտականների, գյուղատնտեսության բոլոր աշխատավորների անունից Սովետական Միության Կոմունիստական պարտիայի լենինյան Կենտրոնական Կոմիտեին հավաստիացրեց, որ Սովետական Հայաստանի պարտիական կազմակերպությունները և բոլոր աշխատավորները, առաջնորդվելով ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումներով, իրենց բոլոր ուժերը, եռանդն ու կարողությունը կգործադրեն գյուղատնտեսության հզոր վերելքը հաջողությամբ ապահովելու համար և իրենց արժանի ավանդը կմուծեն մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում:

---



# ԵՐԵՔ ՀԱՆԴԻՊՈՒՄ ԼԵՆԻՆԻ ՀԵՏ

*Ի. Ի. ՎԱՑԵՏԻՍ*

Սովետական Բանակի Կենտրոնական պետական արխիվում վերջերս հայտաբերվել են սովետական ականավոր զինվորական գործիչ Ի. Ի. Վացետիսի՝ քաղաքացիական պատերազմի անմոռաց տարիներին նվիրված հուշերի ձեռագրի էջերը:

1918 թվականի հուլիսի 6-ին՝ Սովետների V Համառուսական համագումարի օրերին, ձգտելով վիժեցնել Բրեստի հաշտությունը, ձախ էսեռները սպանեցին գերմանական դեսպան Միրբախին և Մոսկվայում խռովություն բարձրացրին: Հակառևոլյուցիոն ելույթի հետքերը տանում էին դեպի օտարերկրյա դիվանագիտական այն միսիաների շենքերը, որոնք փորձում էին կազմակերպել Գերմանիայի հարձակումը երիտասարդ Սովետական ռեսպուբլիկայի վրա:

Երկիրը տագնապի օրեր էր ապրում:

«Անիմաստ և հանցագործ ավանտյուրա» անվանեց Վ. Ի. Լենինն այդ դավաճանական դավադրությունը: Վլադիմիր Իլյիչը պահանջեց արագ և վճռական գործողությունների անցնել: Խռովարարների ճնշման գործում աչքի ընկնող դեր խաղացին լատիշական հրաձիգները, որոնց հրամանատարն էր Ի. Ի. Վացետիսը:

Վաղուց ձեռք չէր դիպել Ի. Ի. Վացետիսի ձեռագրի էջերին, ուր հեղինակը պատմում է Վ. Ի. Լենինի հետ իր հանդիպումների մասին, որոնք տեղի են ունեցել 1918 թվականի հուլիսի 6-ի լույս 7-ի գիշերը:

***

## ՀՈՒԼԻՍԻ ԼՈՒՅՍ 7-Ի ԳԻՇԵՐԸ

*Գիշերվա կեսի մոտ ես ավտոմոբիլով եկա Կրեմլ Վ. Ի. Լենինին ներկայանալու և նրանից ցուցումներ ստանալու համար: Ինձ հետ էր նաև ընկ. Դանիշևսկին: Քաղաքը թաղված էր լռության և խավարի մեջ: Շենքերը վատ էին լուսավորված, պատուհանները ծածկված էին վարագույրներով: 9-րդ լատիշական գնդի հրաձիգները կանգնած էին իրենց պաշտպանական դիրքերում: Ավտոմոբիլից իջնելիս գնդի հրամանատարը մոտեցավ ինձ և զեկույց տվեց:*

*Կրեմլը խավարում խորասուզված արքունական միջնաբերդի տեսք ուներ: Մերձռազմաճակատային գոտու տպավորություն էր ստեղծվել: Ինչպես երևում է, մեզ սպասում էին: Անցաթղթերը նախապես պատրաստվել էին, և ոչ մի*

տեղ որևէ արգելքի չհանդիպեցինք: Մեզ հրավիրեցին Վ. Ի. Լենինի քարտուղարություն: Այնտեղ երկու-երեք մարդ էին աշխատում: Հետո մեզ տարան Ժողկոմսովետի նիստերի դահլիճ և խնդրեցին սպասել: Դանիշևսկին գնաց Վ. Ի. Լենինի մոտ: Ես դահլիճ մտա աջ դռնից և մի հինգ քայլ անելով կանգ առա: Ես գտնվում էի բավականին ընդարձակ դահլիճում: Դա հենց այն տեղն էր, ուր մի քանի ամիս անց Վլադիմիր Իլյիչն ինձ տարավ մասնակցելու Ժողկոմսովետի նիստերին: Դահլիճը լուսավորված էր մի կիսախավար լամպիկով, որը կախված էր առաստաղի ձախ անկյունում:

Երկար սպասելու հարկ չեղավ: Բացվեց դահլիճի՝ դիմացի ավելի լուսավորված սենյակի դուռը, և երևաց Վ. Ի. Լենինը: Արագ քայլերով նա անցավ դահլիճի միջով և, մոտենալով ինձ, բարևեց ու հարցրեց.

— Ընկեր, մինչև առավո՞տ կդիմանա՞նք:

Տալով այս հարցը, Լենինը հայացքը սևեռեց ինձ վրա: Ողջ կյանքումս երբեք ինձ այդպիսի խոշոր նշանակության հարց չէր տրվել և երբեք չէր պատահել, որ ես հանպատրաստից այդքան պատասխանատու և լուրջ պատասխան տայի: Պետք է նկատի ունենալ, որ օպերացիայի հաջողությունը ես գլխովս էի երաշխավորում: Այո, ես գրավ էի դնում գլուխս, և ըստինքյան հասկանալի է, որ դրանից հետո եղած հարցին կարող էի տալ միայն դրական պատասխան: Եվ իրոք, ես համոզված էի մեր հաղթանակում:

Սակայն, եթե Վ. Ի. Լենինը հարցներ, թե ինչով եմ ես համոզված, որ ապստամբությունը կջախջախվի, ապա ես այն րոպեին շատ բան չէի կարողանա ասել: Վ. Ի. Լենինին ես կասեի, որ մտքումս ծագել է մի օպերացիայի պլան, որի հաջողությանը ես հավատում եմ: Ստեղծված ծանր իրադրության մեջ դա նշանակում էր, որ ինքս ինձ չեմ կորցրել, իսկ դա արդեն մեծ բան էր:

Վ. Ի. Լենինի տված հարցի պատմական նշանակությունն ինձ ստիպեց սպասվող պատասխանին պատշաճ լրջությամբ վերաբերվել, բայց խոստովանում եմ, որ Վլադիմիր Իլյիչի հարցը մտահոգություն պատճառեց ինձ իր բովանդակության սրությամբ և կտրականությամբ:

Ես հասկացա, որ Վ. Ի. Լենինը կտրական պատասխանի էր սպասում և որ ամեն մի այլ խոսակցություն ավելորդ կլիներ: Մտքումս ինքս ինձ հարցրի.

— Իսկ ինչո՞ւ է կարևոր դիմանալ հենց մինչև առավոտ: Մի՞թե մենք մինչև վերջ չենք դիմանա: Մի՞թե մեր վիճակն այդքան վտանգավոր է: Ինձնից չէ՞ն թաքցնում արդյոք իրական դրությունը:

Բայց Վլադիմիր Իլյիչը պատասխանի էր սպասում անմիջապես և, ինչպես ասում են, տեղն ու տեղը:

Ես Իլյիչին ասացի, որ մեր զորքերը դեռ չեն հավաքված, ուստի գիշերային հարձակում չի կարող տեղի ունենալ և վճռական գործողությունները կսկսվեն հուլիսի 7-ի լուսաբացին: Թեպետ մեր զորքերը դեռևս ամբողջովին չեն հավաքվել, բայց մեր վիճակը կայուն է, քանի որ մեր ձեռքում է գտնվում Կրեմլը, որն անառիկ է գավառիրների համար:

Վ. Ի. Լենինն ընդհատեց ինձ հետևյալ խոսքերով.

— Իսկ լատիշական հրաձիգները ագիտացիայի չե՞ն ենթարկվի:

Ես պատասխանեցի, որ լատիշական հրաձիգները խաղաղության կողմն են և չեն ցանկանում վերսկսել պատերազմը Գերմանիայի հետ և որ նրանք հավատարիմ կմնան բոլշևիկներին և իրեն՝ Լենինին, որպես իրենց գաղափարական առաջնորդի:



Մեր դրության վերաբերյալ ես ասացի, որ այն միանգամայն կայուն է և Վ. Ի. Լենինից թույլտվություն խնդրեցի ավելի մանրամասն զեկուցման գալ երկու ժամ հետո, այսինքն՝ հուլիսի 7-ի առավոտյան ժամը 2-ին: Լենինը համաձայնեց: Նա սեղմեց մեր ձեռքը և հրաժեշտ տալիս ասաց.

— Ես ձեզ կսպասեմ:

Այդ ասելով, նա արագ քայլերով գնաց իր սենյակը:

## ԵՐԿՈՒ ԺԱՄ ՀԵՏՈ

Այս անգամ ինձ հետ Վ. Ի. Լենինի մոտ եկավ ընկ. Պոդվոյսկին: Կրեմլում կատարյալ խավար էր: Մոսկվա գետի և քաղաքի վրա իջնում էր մառախուղը: Վ. Ի. Լենինի քարտուղարությունում դեռ աշխատում էին: Մեր գալու մասին անհապաղ զեկուցվեց: Վ. Ի. Լենինը ցանկացավ ինձ հետ խոսել առանց վկաների: Ընկ. Պոդվոյսկին մնաց քարտուղարության սենյակում: Ես կանգնեցի առաջվա տեղում: Ընկ. Լենինն արագ քայլերով մոտեցավ ինձ: Ես մի քանի քայլ նրան ընդառաջ գնացի և զեկուցեցի.

Հուլիսի 7-ի ժամը 12-ից ոչ ուշ Մոսկվայում մենք լիովին հաղթանակած կլինենք:

Ընկ. Լենինը երկու ձեռքով բռնեց իմ աջը և ամուր-ամուր սեղմեց այն, ասելով.

— Շնորհակալ եմ, ընկեր: Դուք ինձ շատ ուրախացրիք:

Վ. Ի. Լենինի տեսքը զգալիորեն հանդարտ էր, քան դրանից երկու ժամ առաջ: Նա հագել էր մուգ գույնի կոստյում: Առաջվա պես սենյակը լուսավորված էր առաստաղի մի անկյունում կախված մեկ կիսախավար լամպիկով: Վլադիմիր Իլյիչն ինձ խնդրեց տեղավորվել ոչ հեռու դրված բազկաթոռներից մեկի վրա և ինքն էլ նստեց իմ կողքին: Մենք նստել էինք կիսով չափ իրար դարձած:

Ես իմ զեկույցն ամենայն մանրամասնությամբ անգիր էի արել ու զեկուցում էի հստակ և համարձակ: Մերթ ընդ մերթ Վլադիմիր Իլյիչն ընդհատում էր ինձ մանրամասնություններին վերաբերող հարցերով: Իմ պատասխանները լիովին բավարարում էին նրան: Երբ ես խոսում էի իմ նշած օպերատիվ պլանի հիմնական գծերի մասին և ասացի, որ առավոտվանից լատիշական գնդերը կհարձակվեն Տրյոխսվյատիտելսկի նրբանցքի ուղղությամբ և այդ պատճառով ժամանակավորապես կկտրվեն քաղաքի կենտրոնից և Կրեմլից, Վ. Ի. Լենինը կրկին հարցրեց.

— Չե՞ն ենթարկվի արդյոք լատիշական հրաձիգները դավադիրների ագիտացիային:

Ես կրկնեցի նույնը, ինչ ասել էի առաջին տեսակցության ժամանակ:

Երբ ես շարադրում էի մեր զորքերի վիճակը և նշեցի, որ մեր հրետանին կարող է գործել միայն ուղիղ նշանառությամբ, Վ. Ի. Լենինը ժպտաց և ասաց.

— Իսկ նա ի՞նչ կանի:

Ես բացատրեցի, որ հարկավոր է ցրել ձախ-էսեռական «կառավարությունը» և ստիպել նրան փախչել, և որ այդ ամենից լավ կարվի հրետանային կրակով: Ես զարգացրի իմ օպերատիվ մտադրությունները շոշափվող հարցի մասին և ասացի, թե ցուցում կտամ Լատիշական 1-ին բրիգադի հրամանատարին լատիշական մարտկոցը ձեռքի վրա տանել ձախ-էսեռական «կառավարության»

ռեզիդենցիային որքան հնարավոր է մոտ և հրանոթները տեղադրել այնպես, որ կրակի տակ առնվեն պատուհանները։

Ավարտելով զեկուցումը, ես Վ. Ի. Լենինին հայտնեցի, որ իմ հարցերն սպառված են։ Մենք վեր կացանք։ Վլադիմիր Իլյիչն ամուր սեղմեց իմ ձեռքը և հրաժեշտ տալիս կրկին հարցրեց.

— Ուրեմն դուք մտադիր եք մինչև ժամը 12-ը ճնշե՞լ խռովությունը։

Ես պատասխանեցի.

— Վստահ եղեք։

## ԻՆՉՊԵՍ ԸՆՏՐԵՑԻՆՔ

Վլադիմիր Իլյիչն ինձ հետ դուրս եկավ քարտուղարություն և ինչ-որ կարգադրություններ արեց։

Քարտուղարությունում կանգնած էր ընկ. Պոդվոյսկին. մի ձեռքում նա բռնել էր կես բոքոն հաց, իսկ մյուսով պոկում և, ըստ երևույթին, մեծ ախորժակով ուտում էր։ Նա ինձ էլ առաջարկեց։ Ես չհրաժարվեցի։ Ընկ. Պոդվոյսկին, դիմելով Վլադիմիր Իլյիչին, ասաց.

— Թարմ հաց է, չե՞ք ուզում։

Վլադիմիր Իլյիչը զննեց, գտավ, որ հացը լավն է և վերցրեց Պոդվոյսկու պոկած կտորը։ Մենք երեքով կանգնած էինք իրար դիմաց և ախորժակով ուտում էինք։ Պարզվեց, որ մեզնից ոչ ոք չէր ընթրել, իսկ ես չէի էլ ճաշել։ Երբ ընթրիքն ավարտվեց, Վլադիմիր Իլյիչը հրաժեշտ տվեց մեզ և գնաց իր սենյակը։

## ԼԱՏԻՇԱԿԱՆ ԴԻՎԻԶԻԱՅԻ ՇՏԱԲՈՒՄ

Ես մարտական հրաման պետք է գրեի լենինյան[1] զորքերի համար և որոշեցի այդ անել Լատիշական դիվիզիայի շտաբում։ Կրեմլից ընկ. Պոդվոյսկու հետ մենք գնացինք փոքր Զնամենսկի փողոցի № 10-ը, որտեղ տեղավորված էր Լատիշական դիվիզիայի շտաբը։ Մեզ դիմավորեց շտաբի նոր պետը։ Պարզվեց, որ Պետերսոնը և Դանիշևսկին այնտեղ էին։ Մենք նրանց գտանք հարևան սենյակում, միևնույն մահճակալի վրա խոր քնած։

Ըստ երևույթին, Պոդվոյսկին զայրացած էր, քանի որ բերնից թռցրեց հետևյալ բառերը.

— Խայտառակություն է։ Այսպիսի ժամանակ քնել...

Անձամբ ես ոչ մի վատ բան չէի տեսնում նրանում, որ իմ կոմիսարները ազատ րոպեին հանգստանում էին։ Կամենալով փոխել տրամադրությունը և արթնացնել քնածներին, ես մահճակալի մոտ արտասանեցի ավետարանական հայտնի կալամբուրը՝

— Դուք ինչ եք քնել, որպես թեթևամիտ օրիորդներ և չեք տեսնում, որ ձեր շուրջը պտտվում է սատանան, ինչպես մռնչացող առյուծը...

Քնածները մահճակալից վեր թռան, և բոլորս քահ-քահ ծիծաղեցինք։

---

[1] Այդպես է հեղինակն անվանում Լատիշական զորքին։



## ԴԱՎԱԴԻՐՆԵՐԻ ՋԱԽՋԱԽՈՒՄԸ

Ես գործում էի Վ. Ի. Լենինից առավոտյան ժամը 2-ին ստացած դիրեկտիվի համաձայն։ Այդ դիրեկտիվը միանգամայն որոշակի ասում էր.

1. Որ պետք է լիկվիդացիայի ենթարկել ապստամբությունը,

2. Որ այդ խնդիրը ինձ է հանձնարարվում։

Մեր հրաժեշտի պահին Վ. Ի. Լենինի վերջին խոսքերն էին.

— Ուրեմն՝ ժամը 12-ից ոչ ուշ...

Ես դրական պատասխան տվի։ Ինձ համար Վ. Ի. Լենինի ցուցումները միանգամայն բավական էին, և ես անդառնալիորեն ընթանում էի նշված ուղիով։ Օպերացիայի վճռական ժամանակամիջոցը ժամը տասնմեկից մինչև մեկն անց կեսն էր։

Մենք սպասում էինք բրիգադի հրամանատար Դուդինի այն հաղորդմանը, թե հրանոթներն արդեն նշանադրված են։ Ժամանակն անցնում էր, իսկ այդ հաղորդումը դեռ չկար։

Սկզբում Լատիշական դիվիզիայի շտաբից հաղորդումներ ստացվեցին, որ քաղաքի կենտրոնում երևացել են լենինյան զորքերին չպատկանող ջոկատներ։

Ձախ-էսեռական ռազմաճակատի իրադարձությունների մասին նոր տեղեկություններ չէին ստացվել։ Մյուս տեղամասերում՝ ոչ մի փոփոխություն։

Մինչդեռ վիճակն այնքան էլ պարզ չէր։ Դավադիրները գործում էին որոշակի, ընդ որում ինձ անհայտ պլանով և ինչ-որ մեկի ղեկավարությամբ։

Առաջին բրիգադի հրամանատար Դուդինին հրաման տրվեց ըստ հնարավորին արագացնել է. Պ. Բերզինի մարտկոցի տեղադրումը՝ Մորոզովի առանձնատան վրա կրակ արձակելու համար և, դրանից հետո, անմիջապես զեկուցել։ Դուդինը պատասխանեց, որ ամեն ինչ կկատարվի։

Հուլիսի 7-ի առավոտը խիստ մառախլապատ էր, քաղաքը ծածկված էր գորշ շղարշով։ Տեսադաշտը 15—20 քայլից ավելի չէր։ Քանի որ համազգեստը նույնն էր, ապա խիստ դժվար էր տարբերել մեր զորքերը հակառակորդից։

Հարձակումն սկսվեց ուղիղ ժամը 5-ին, և հակառակորդը նեղվեց։ Բայց հետո բրիգադի հրամանատար Դուդինը հաղորդեց, որ հակառակորդի դիմադրությունը դառնում է ավելի համառ, և որ փողոցները ծածկված են խրամատներով, իսկ տները հարմարեցված են պաշտպանության համար և տանիքների վրա գնդացիրներ են դրված։

Առաջին Լատիշական և Օրինակելի գնդերում կային սպանվածներ և վիրավորներ։

Առաջխաղացումը սաստիկ դանդաղ էր տեղի ունենում, իսկ որոշ տեղերում նույնիսկ կանգ առավ։ Բրիգադի հրամանատարը շատ ծանր էր համարում իր ենթակայության բրիգադի վիճակը, այնուհանդերձ նա հույս ուներ կատարել առաջադրված խնդիրը։

Իմ և Դուդինի միջև կապը պահվում էր հեռախոսով, ձիավոր և հետիոտն հանձնակատարներով։ Նրա հրամանատարական կետը գտնվում էր Դաստիարակչական Տան մոտ։ Մոտավորապես ժամը 10-ին բրիգադի հրամանատար Դուդինը հաղորդեց.

1) I Լատիշական և Օրինակելի գնդերը հակառակորդին ետ շպրտեցին

Տրյոխսվյատիտելսկի նրբանցքը և մոտեցան Վլադիմիրի տաճարին և որ է. Պ. Բերզինի մարտկոցի համար դիրք է ընտրվել հիշյալ տաճարի մոտ՝ Մորոզովի առանձնատնից՝ որը հանդիսանում է դավադիրների կառավարության ռեզիդենցիան մոտ երեք հարյուր քայլ հեռու։

2) II լատիշական գունդը գրավեց Պոկրովսկի զորանոցները։

3) III լատիշական գունդը հարձակվում է հաջողությամբ։

Մոտավորապես ժամը ութին թե իննին դավադիրները հրետանային կրակ բացեցին Կրեմլի վրա։ Մի քանի արկ ընկավ փոքր պալատի վրա։ Կրակում էին հրկիզող արկերով։ Ես սաստիկ վախենում էի, որ նրանք կարող էին հրդեհ առաջացնել Կրեմլում։ Մի քանի տասնյակ արկ արձակելով, դավադիրների հրետանին լռեց։

Շուտով տասներկուսը կլիներ։ Մեր սենյակում ճնշող լռություն է։ Մենք անհամբեր սպասում ենք բրիգադի հրամանատար Դուդինի պատասխան-ազդանշանին։ Նա իր հրամանատարական կետից դուրս էր եկել ավելի քան կես ժամ առաջ։ Իմ ուշադրությունը բևեռված էր երկու մարտադաշտերի՝ Տրյոխսվյատիտելսկի նրբանցքի և Կրեմլի վրա։

Վերջապես բրիգադի հրամանատար Դուդինը զանգեց։ Ես շտապ վերցնում եմ լսափողը։ Դուդինը զեկուցում է.

— Հրանոթներն ուղղված են նպատակակետերին։

Ես հրամայեցի։

— Կրա՜կ։ Գրոհե՛լ։

Համազարկը տրվեց անհապաղ։

Առաջին իսկ արկերը պատուհանից ներս ընկան, ծակեցին-անցան պատը և պայթեցին այն սենյակում, որին կից նիստ էր անում ձախ-էսեռական «կառավարությունը»։ Մեծ խառնաշփոթություն առաջացավ։ Զորքերի մեջ խուճապ սկսվեց։ «Կառավարության» անդամները թողեցին իրենց ռեզիդենցիան։ Անվտանգ տեղ գտնելը դժվար էր, իսկ կարտեչն էլ թույլ չէր տալիս ուշքի գալ և կարգի բերել խուճապահար զորքը։

Տասնյոթ արկ արձակելուց հետո հրաձիգները գրոհի անցան և փախուստի մատնեցին դավադիրներին ու նրանց զորքը։

Ձախ էսեռների դեմ մղվող մարտի բախտը վճռեց հրետանին։ Առաջին բրիգադի գնդերին մնում էր գրավել ձախ էսեռների թողած դիրքերը։ Մորոզովի առանձնատան մառանից ազատվեցին Ձերժինսկին, Լացիսը, Սմիդովիչը և իններորդ գնդի լատիշական հրաձիգները, որոնք պահվում էին իբրև պատանդ։

Ժամը 14-ի մոտ մեր ձեռքում էր Տրյոխսվյատիտելսկի նրբանցքի ամբողջ շրջանը։

## ԶԵԿՈՒՑԵԼՈՎ ԼԵՆԻՆԻՆ...

Լատիշական դիվիզիայի կոմիսար Կ. Ա. Պետերսոնի միջոցով Վլադիմիր Իլյիչն ինձ հայտնեց, որ նախքան Արևելյան ռազմաճակատ մեկնելս անցնեմ իր մոտ։ Ընդունելությունը նշանակված էր հուլիսի 10-ին մինչև ցերեկվա ժամը 12-ը։

Ես Վլադիմիր Իլյիչին ներկայացա Արևելյան ռազմաճակատի Գլխավոր հրամանատար նշանակվելուս առթիվ։ Վլադիմիր Իլյիչն ինձ ջերմ շնորհակա-



լություն հայտնեց ապստամբության լիկվիդացման համար և խնդրեց, չսահմանափակվելով ժամանակով, զեկուցել հուլիսի 6-ի և 7-ի իրադարձությունների մասին և հատկապես մանրամասն խոսել այն մասին, թե ես ինչպես եմ գնահատում Արևելքում տիրող վիճակը, որոնք են իմ պլանները (եթե ես հասցրել եմ կազմել) և ինչ պետք է անել՝ ամենակարճ ժամանակամիջոցում այդ պատերազմը լիկվիդացնելու համար։

Հուլիսի 6-ի և 7-ի իրադարձությունների մասին Վլադիմիր Իլյիչն արդեն ուներ Կ. Ա. Պետերսոնի բավականին մանրակրկիտ զեկուցագիրը, որը կազմված էր Լատիշական դիվիզիայի շտաբում գտնվող տեղեկությունների հիման վրա։

Լենինը մեծ ուշադրությամբ էր լսում, երբ ես պատմում էի, որ մենք շատ քիչ զորք ունեինք, զգալիորեն ավելի պակաս, քան հակառակորդը, և որ ապստամբությունը լիկվիդացվեց հրետանային կրակով՝ ձախ էսեռների ռեզիդենցիայի ջախջախմամբ։

Հրաժեշտ տալիս Վլադիմիր Իլյիչը ինձ կրկին շնորհակալություն հայտնեց հուլիսի 6-ի և 7-ի ապստամբությունը լիկվիդացիայի ենթարկելու համար և խնդրեց բոլոր ջանքերը գործադրել՝ Արևելյան ռազմաճակատում հաղթանակ տանելու։

«Неделя» № 7, 1962 թ.

# ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ԴԻԿՏԱՏՈՒՐԱՅԻ ԹԵՈՐԻԱՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԿՈՂՄԻՑ

Վ. Դ. ԴԱՐԲԻՆՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

— Մեր ուսմունքը դոգմա չէ, այլ գործողության ուղեցույց,— հաճախ կրկնում էին գիտական կոմունիզմի հիմնադիրները։ Մինչև վերջ հավատարիմ մնալով այդ թեզին, նրանք անընդհատ կատարելագործեցին, հարստացրին ու զարգացրին այն՝ ընդհանրացնելով գիտության նորագույն նվաճումներն ու աշխատավորների ռևոլյուցիոն պայքարի փորձը։ Այդ ուսմունքի բաղկացուցիչ մասն է հանդիսանում պրոլետարիատի դիկտատուրայի տեսությունը։ Պրոլետարիատի դիկտատուրայի՝ որպես կապիտալիզմից սոցիալիզմին անցման քաղաքական ձևի անհրաժեշտության գաղափարին Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը հանգեցին անցյալ դարի 50-ական թվականներին, երբ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստում» որոշակիորեն նշեցին, որ հին հասարակական հարաբերությունները կոմունիստականի վերափոխելու համար պրոլետարիատն ամենից առաջ պետք է դառնա «տիրապետող դասակարգ»։ Հետագայում այդ գաղափարը նրանք ավելի ու ավելի են կոնկրետացնում և հստակ ձևակերպում։

Ընդհանրացնելով նախորդ ռևոլյուցիաների ու աշխատավորների դասակարգային պայքարի հարուստ փորձը և ընդգծելով այն նորը, որ ինքը կատարել է դասակարգային պայքարի տեսության բնագավառում, 1852 թվականի մարտի 5-ին Վայդեմայերին գրած նամակում Կ. Մարքսը նշել է. «Իմ արած նորն այն է, որ ես ապացուցել եմ հետևյալը. 1) որ դասակարգերի գոյությունը կապված է արտադրության զարգացման որոշ պատմական ֆազերի հետ միայն, 2) որ դասակարգային պայքարն անհրաժեշտաբար տանում է դեպի պրոլետարիատի դիկտատուրա, 3) որ այդ դիկտատուրան ինքը սոսկ մի անցում է դեպի ամեն տեսակ դասակարգերի ոչնչացում ու դեպի անդասակարգ հասարակություն...» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II, էջ 584)։ Պրոլետարիատի դիկտատուրան դասակարգային պայքարի օրինաչափ արդյունք է և այդ իմաստով հասարակության զարգացման պատմականորեն անխուսափելի մի շրջան, որի ընթացքում շահագործողական դասակարգային հասարակությունը ռևոլյուցիոն ճանապարհով փոխակերպվում է անդասակարգ, կոմունիստական հասարակության։ Անցման այդ շրջանում պրոլետարիատի



դիկտատուրան անհրաժեշտ է, մի կողմից՝ շահագործողների դիմադրությունը ճնշելու և, մյուս կողմից՝ անդասակարգ հասարակարգ կառուցելու համար։

Հիմնավորելով սոցիալիստական ռևոլյուցիայի ժամանակ շահագործողական պետական ապարատը ջարդելու անհրաժեշտությունը, գիտական կոմունիզմի հիմնադիրներն ապացուցեցին, որ բուրժուական պետական ապարատի հաստատությունները բազմաթիվ թելերով կապված են իշխող դասակարգի հետ և ծառայում են նրա շահերին, որ այդ ահռելի բյուրոկրատական-չինովնիկական, ռազմա-ոստիկանական ապարատը պարազիտ է հասարակության մարմնի վրա, որը զարգացել, կատարելագործվել և ամրացել է բոլոր հեղաշրջումների ընթացքում։ Մինչև այժմ եղած «Բոլոր հեղաշրջումները կատարելագործում էին այդ մեքենան, փոխանակ ջարդելու այն»,— եզրակացնում է Մարքսը (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. I, էջ 388)։

Սակայն անցյալ դարի կեսերին բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարի փորձը դեռևս չէր պատասխանում այն հարցին, թե ինչո՞վ փոխարինել շահագործողական պետությունը։ Դրա պատասխանը տվեց Փարիզի Կոմունան։ Այն ցույց տվեց, որ պրոլետարիատը «...որպեսզի նորից չկորցնի իր՝ հենց նոր նվաճած իշխանությունը, պետք է, մի կողմից, վերացնի ամբողջ հին, մինչև այժմ իր դեմ գործադրված ճնշման մեքենան, իսկ մյուս կողմից, պետք է իրեն ապահովի իր սեփական դեպուտատների ու պաշտոնյաների դեմ, հայտարարելով, որ նրանք բոլորն առանց որևէ բացառության փոփոխելի են ամեն ժամանակ» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. I, էջ 587)։ Իր գոյության կարճ ժամանակամիջոցում Կոմունայի ձեռնարկած և մասամբ կենսագործած միջոցառումները լիովին հաստատեցին Մարքսի և Էնգելսի այդ եզրակացությունը։

Անդրադառնալով պրոլետարիատի դիկտատուրայի ապագա հնարավոր քաղաքական ձևերի հարցին, գիտական կոմունիզմի հիմնադիրները նշում էին նաև դեմոկրատական ռեսպուբլիկան որպես «սպեցիֆիկ ձև... պրոլետարիատի դիկտատուրայի համար», որպես պրոլետարիատի «ապագա տիրապետության պատրաստի քաղաքական ձև» (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс Соч., т. XXIX, ч. II, стр. 109 и 291)։

Պետք է նշել, որ պրոլետարիատի դիկտատուրայի և նրա քաղաքական ձևերի հարցը գիտական կոմունիզմի հիմնադիրները քննարկում էին առավելապես տեսականորեն և կարող էին մշակել այդ պրոբլեմի հիմնական սկզբունքները միայն, որովհետև մինչմոնոպոլիստական կապիտալիզմի դարաշրջանում բանվոր դասակարգը դեռևս չուներ սոցիալիստական ռևոլյուցիոն շարժման բավարար փորձ։

***

XIX դարի վերջին և XX դարի սկզբներին կապիտալիզմի գլխավոր երկրները թևակոխեցին զարգացման իմպերիալիզմի փուլը, որը սոցիալ-տնտեսական նոր պայմաններում, նոր ձևով դրեց սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հարցն ընդհանրապես, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման և նրա աշխատանքի ձևերի ու մեթոդների հարցը՝ մասնավորապես։ Գիտական կոմունիզմի հիմնադիրների մահից հետո, իմպերիալիզմի դարաշրջանում իրադրությունն այլ կերպ դասավորվեց նաև միջազգային բանվորական շարժման

տեսության ու պրակտիկայի ասպարեզում։ Տիրապետող դիրքեր գրավեցին Երկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիզմն ու անարխիզմը։ Սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի մարքսիստական ուսմունքը հայտարարելով հնացած, օպորտունիզմն ամենուրեք պրոպագանդում էր խաղաղ ձևով «կապիտալիզմը սոցիալիզմի ներաճելու» տեսակետը, աշխատելով ամեն կերպ դուրս մղել մարքսիզմի ռևոլյուցիոն ոգին՝ պրոլետարիատի դիկտատուրայի տեսությունը։ Փաստորեն դրան էր ձգտում նաև անարխիզմը «ամեն մի պետություն բացարձակ չարիք է» լոզունգով։

Այս ամենը պահանջում էր նոր մոտեցում ցուցաբերել հասարակության զարգացման օբյեկտիվ ընթացքով առաջադրված խնդիրների լուծմանը։ Պրոլետարական շարժման համար տեսական և գործնական հսկայական նշանակություն ունեցող այդ խնդրին էլ հենց ձեռնամուխ եղավ Վ. Ի. Լենինը։ Ընդհանրացնելով ռուսական բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիաների փորձը, հանձինս բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների Սովետների, Լենինը հայտնագործեց պրոլետարիատի դիկտատուրայի քաղաքական մի նոր ձև։ Վերլուծելով Սովետների գործունեությունը, Վ. Ի. Լենինը դեռևս 1905 թվականին դրանք գնահատեց որպես զինված ապստամբության օրգաններ և նոր, **ռևոլյուցիոն իշխանության** սաղմեր։ «...ինձ թվում է (ըստ իմ ունեցած ոչ լրիվ ու միայն «թղթե» տեղեկությունների),—գրում էր Լենինը,—որ քաղաքական տեսակետից բանվորների դեպուտատների Սովետը (խոսքը Պետերբուրգի Սովետի մասին է—Վ. Դ.) պետք է դիտել իբրև **ռևոլյուցիոն ժամանակավոր կառավարության** սաղմ» (Երկեր, հ. 10, էջ 8)։

1917 թվականին Սովետներն առավել հստակորեն ու որոշակիությամբ հանդես եկան՝ արդեն որպես բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի օրգաններ, որպես այդ դասակարգերի ռևոլյուցիոն իշխանություն, նրանց **դիկտատուրայի** օրգաններ։ Հաշվի առնելով այդ բոլորը, Լենինն Ապրիլյան թեզիսներում հստակորեն ընդգծեց, որ պրոլետարիատի դիկտատուրայի լավագույն պետական ձևը Ռուսաստանում կլինի ո՛չ թե դեմոկրատական պառլամենտական ռեսպուբլիկան, այլ Սովետների ռեսպուբլիկան։ **Դա մեծ խիզախում էր գիտության մեջ, որը միաժամանակ վիթխարի նշանակություն ունեցավ սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի և պրոլետարիատի քաղաքական իշխանության ամրապնդման համար Ռուսաստանում։**

Վ. Ի. Լենինի հանճարով հայտնագործված, նրա անմիջական մասնակցությամբ ու տեսական դրույթների հիման վրա ստեղծված պրոլետարիատի դիկտատուրայի սովետական ձևը մեկընդմիշտ վերջ տվեց պետության օրենսդիր և կատարողական օրգանների դարերով սրբագործված խզմանը, սերտ ու անմիջական կապ ստեղծեց պետական իշխանության օրգանների և աշխատավորների ամենալայն մասսաների միջև։ Այն ոչ միայն հռչակեց դեմոկրատական իրավունքներ և ազատություններ, այլև, տրամադրելով նյութական երաշխիքներ, ապահովեց տասնյակ միլիոնավոր աշխատավորների ամենաակտիվ, վճռական և ինքնուրույն մասնակցությունը պետության կառավարմանը, նրանց համար ստեղծեց դեմոկրատիայից օգտվելու փաստական հնարավորություններ։ Սովետներն ապահովեցին պրոլետարիատի ղեկավար դերը դիկտատուրայի սիստեմում, բոլոր աշխատավորներին ու շահագործվողներին պրոլետարիատի շուրջը համախմբելու գործը։ Զարգացնելով Մարքսի և Էնգելսի հայտնի դրույթը, Վ. Ի. Լենինը պատմական նոր պայմաններում ցույց տվեց, որ դեմոկրատական ցենտրալիզմը պետության կազմակերպման մեջ ամենևին չի բացառում, այլ, ընդհակառակը, անհրաժեշտորեն ենթադրում է ավտոնոմիա և ֆեդերացիա, եթե այս վերջիններս հիմնված են տնտեսական և ազգային լուրջ տարբերությունների վրա, «որոնք հարուցում են պետական որոշ առանձնացման իրական անհրաժեշտություն»։ Դեմոկրատական ցենտրալիզմի և ավտոնոմիայի օրգանական զուգակցման լենինյան հենց այս սկզբունքով էլ կազմակերպվեց պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձևը մեր երկրում։

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր երբեք չկառչել Մարքսի ուսմունքի տառից, այլ խորապես յուրացնել նրա ռևոլյուցիոն ոգին և գործնական ու տեսական աշխատանքում անշեղորեն ղեկավարվել դրանով։ Եվ այդ բանի լավագույն օրինակը տալիս էր ինքը։ Գիտականորեն վերլուծելով սոցիալիստական ռևոլյուցիայի զարգացման պայմանները Ռուսաստանում, Լենինը հանգեց այն եզրակացության, որ ընդհանուր, հավասար ընտրական իրավունքի կիրառումն այդ պայմաններում անհնար է, որ շահագործողներին քաղաքական կյանքի ասպարեզից օրենսդրական կարգով հեռացնելը սոցիալիստական ռևոլյուցիայի վերջնական հաղթանակի պարտադիր և անհրաժեշտ պայմանն է։ Պրոլետարիատի դիկտատուրայի սովետական ձևի կազմակերպման այդ կարևոր առանձնահատկությունը,— ասում էր նա,— կյանքի է կոչվել ռուսական ռևոլյուցիայի զարգացման «հատուկ պայմաններով», Սովետների դեմ բուրժուազիայի մղած «ամենաանպատկառ, շահադիտական և կեղտոտ» պայքարով, շահագործողների ցույց տված ամենակատաղի և սուր դիմադրությամբ։ Բայց եթե դա այդպես է, ապա պրոլետարիատի դիկտատուրայի սովետական ձևի այդ առանձնահատկությունը «**պարտադիր** չէ դիկտատուրայի իրականացման համար, այդ՝ դիկտատուրայի տրամաբանական հասկացողության **անհրաժեշտ** հատկանիշը չէ, այդ չի մտնում դիկտատուրայի պատմական և դասակարգային հասկացողության մեջ որպես **անհրաժեշտ** պայման» (**Վ. Ի. Լենին**, Երկեր, հ. 28, էջ 322)։ Ինքնին հասկանալի է, որ Սովետների՝ որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձևի, լենինյան տեսության նշանակությունը չէր սահմանափակվում միայն Ռուսաստանի շրջանակներով, որ նրանք պատմական տվյալ իրադրությամբ պայմանավորված առանձնահատկություններով հանդերձ, մարմնավորում են պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձևի հիմնական հատկանիշներն ընդհանրապես։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ սովետական ռեսպուբլիկայի կառուցվածքի և աշխատանքի հիմնական սկզբունքները կիրառելի ու պարտադիր կլինեն սոցիալիզմի կառուցման ուղին թևակոխած բոլոր երկրների համար։ «Սովետական իշխանություն իրագործելով,—ասում էր նա,—մենք գտել ենք **պրոլետարիատի դիկտատուրայի միջազգային, համաշխարհային ձևը**» (Երկեր, հ. 29, էջ 162)։

Լենինյան այս դրույթն, իհարկե, ամենևին չէր բացառում պրոլետարիատի դիկտատուրայի քաղաքական այլ ձևերի օրինաչափությունը։ Ընդհակառակը, Վ. Ի. Լենինը գիտական ճշգրտությամբ սահմանեց, որ տարբեր երկրների տնտեսական, քաղաքական և ազգային զարգացման առանձնահատկությունները և այդ երկրներին շրջապատող արտաքին իրադրության յուրահատկություններն օբյեկտիվ հիմք են հանդիսանում պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձևերի բազմազանության համար և այն դարձնում են օրինաչափ։ Այդ, սակայն, չի կարող վերաբերել հիմնականին, էականին։ Կապիտալիզմից կոմունիզմին անցման շրջանի քաղաքական ձևերի առատությունն ու

բազմազանությունը չեն ժխտում, չեն բացառում նրանց էության նույնությունը, որն անխուսափելիորեն լինելու է պրոլետարիատի դիկտատուրա:

Ելնելով միջազգային պրոլետարիատի ռևոլյուցիոն շարժման և, հատկապես, մեր երկրում սոցիալիստական շինարարության փորձից, Վ. Ի. Լենինը տվել է պրոլետարիատի դիկտատուրայի բազմաթիվ սահմանումներ, որոնցից յուրաքանչյուրն ընդգծում է հասարակական երևույթների պատմական զարգացման դիալեկտիկական բարդ շղթայի մեջ այլ երևույթների հետ պրոլետարիատի դիկտատուրայի ունեցած բազմաթիվ կապերից ու կապակցություններից հատկապես մեկը, որը սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիալիզմի շինարարության տարբեր էտապներում առավել սրությամբ ծառացել է պրոլետարիատի առաջ:

Կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջանում բանվոր դասակարգի կողմից շահագործող դասակարգերի նկատմամբ կիրառվող ռևոլյուցիոն բռնությունը պրոլետարիատի դիկտատուրայի էական, անհրաժեշտ հատկանիշներից մեկն է, պրոլետարիատի դիկտատուրայի առաջ ծառացած մյուս բոլոր խնդիրների լուծման անհրաժեշտ քաղաքական պայմանը: Երկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիզմի դեմ մղած գաղափարական սուր պայքարում Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ պրոլետարիատի դիկտատուրան ամենակատարյալ դեմոկրատիան է դասակարգային հասարակության պայմաններում, որովհետև այն դեմոկրատիա է նախկինում ճնշված ու կեղեքված աշխատավորների ամենալայն մասսաների համար և դեմոկրատիայի արդարացի բացառում շահագործողների նկատմամբ: Պրոլետարիատի դիկտատուրայի կողմից կիրառվող ռևոլյուցիոն բռնությունը պայմանավորված է դասակարգային թշնամու դիմադրության ձևերով ու աստիճանով: Եվ պատահական չէ, որ պրոլետարիատի ռևոլյուցիոն բռնության կողմն ընդգծող սահմաններն առանձնապես շատ են լենինյան այն աշխատություններում, որոնք վերաբերում են դասակարգային պայքարի հարցերին և Երկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիստ առաջնորդներին, որոնք փորձում են ռևոլյուցիոն մարքսիզմը նենգափոխել անատամ լիբերալիզմով: «Դիկտատուրայի անհրաժեշտ հատկանիշ,— ընդգծում էր Լենինը,— պարտադիր պայման է հանդիսանում շահագործողների, որպես դասակարգի, բռնի ճնշումը և հետևաբար այդ դասակարգի նկատմամբ «մաքուր դեմոկրատիայի», այսինքն՝ հավասարության և ազատության խախտումը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 322):

Բայց պրոլետարիատի դիկտատուրան միայն բռնություն չէ, թեև ռևոլյուցիոն բռնությունը պրոլետարիատի դիկտատուրայի էական, անհրաժեշտ հատկանիշներից մեկն է և առանց բռնության դիկտատուրա չի լինում: Պրոլետարիատի դիկտատուրայի մեջ գլխավորը նրա ստեղծագործական, տնտեսական-կազմակերպական, կուլտուր-դաստիարակչական աշխատանքն է: Ահա լենինյան բնորոշումը: «Պրոլետարիատի դիկտատուրան... միայն բռնություն չէ շահագործողների վերաբերմամբ և նույնիսկ ոչ գլխավորապես բռնություն: Այդ ռևոլյուցիոն բռնության տնտեսական հիմքը, նրա կենսունակության և հաջողության երաշխիքն այն է, որ պրոլետարիատը ներկայացնում և իրականացնում է աշխատանքի հասարակական կազմակերպության ավելի բարձր տիպ՝ կապիտալիզմի համեմատությամբ: Դրանում է էությունը: Դրանում է կոմունիզմի անխուսափելի լիակատար հաղթանակի ուժի աղբյուրը և գրավականը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 513): Այսպիսով, մատնանշելով պրոլետարիա-



տի դիկտատուրայի ռևոլյուցիոն բռնությունը և խաղաղ ստեղծագործական, կազմակերպական աշխատանքը, Վ. Ի. Լենինը միաժամանակ ընդգծում էր, որ պրոլետարիատի դիկտատուրայի էությունը, հատկապես զարգացման հեռանկարի տեսակետից, ստեղծագործական, կազմակերպական-դաստիարակչական աշխատանքն է: Բայց ինչո՞վ են որոշվում դիկտատուրայի այդ անհրաժեշտ հատկանիշները, ինչո՞վ են պայմանավորված դրանք:

Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ քաղաքական տիրապետության հասնելով, պրոլետարիատն անպայման պետք է լուծի շահագործող դասակարգերի դիմադրությունը ճնշելու և նոր հասարակարգ կառուցելու երկու հիմնական խնդիրները, որոնք Վ. Ի. Լենինը համարում էր սոցիալիստական հեղաշրջման իրականացման ընդհանուր խնդրի հարաբերականորեն ինքնուրույն երկու հիմնական բնագավառները, կողմերը՝ շեշտելով, որ... «Կապիտալիզմին ընդհանրապես հաղթելու համար պետք է, նախ՝ հաղթել շահագործողներին և պաշտպանել շահագործվողների իշխանությունը՝ շահագործողներին ռևոլյուցիոն ուժերով տապալելու խնդիրը. երկրորդ՝ ստեղծագործական խնդիր՝ ստեղծել նոր տնտեսական հարաբերություններ, ցույց տալ այն բանի օրինակը, թե ինչպե՛ս է այդ արվում: Սոցիալիստական հեղաշրջումն իրագործելու խնդրի այս երկու կողմերն անխզելիորեն կապված են և մեր ռևոլյուցիան տարբերում են բոլոր նախորդներից...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 523):

Մեթոդոլոգիական սկզբունքային նշանակություն ունեցող լենինյան այս դրույթը անհատի պաշտամունքի տարիներին մոռացության էր տրվել, մինչդեռ այն պետք է դրվի այդ հարցի լուծման հիմքում:

Այսպես, ուրեմն, սոցիալ-քաղաքական երևույթների մի խմբի հետ ունեցած հարաբերության մեջ պրոլետարիատի դիկտատուրան հանդես է գալիս որպես ռևոլյուցիոն բռնություն, մյուս կողմից, երևույթների մեկ այլ խմբի նկատմամբ՝ որպես կազմակերպող, դաստիարակող: Այդ երկու հիմնական կապակցությունների մեջ էլ հենց արտահայտվում են պրոլետարիատի դիկտատուրայի երկու հիմնական կողմերը, որոնք փոխադարձաբար գտնվում են ամբողջի և մասի յուրատեսակ դիալեկտիկական կապակցության մեջ. առանց մասերի (դիկտատուրայի երկու հիմնական կողմերի) չկա ամբողջը՝ դիկտատուրան և, հակառակը, մասերը գոյություն ունեն միայն ամբողջի մեջ և ամբողջի շնորհիվ: Հետևապես, «պրոլետարիատի դիկտատուրայի հիմնական կողմեր» հասկացությամբ լենինիզմը գիտական ճշգրտությամբ նշում է պրոլետարիատի դիկտատուրայի երկու էական, պատմականորեն անհրաժեշտ հատկանիշները, նրա գործունեության՝ ըստ բնույթի տարբեր, բայց ըստ էության, սերտորեն միահյուսվող երկու առավել ընդհանուր հիմնական ուղղությունները:

Վ. Ի. Լենինի գիտական և մեծագույն ծառայություններից մեկն էլ այն է, որ նա «պրոլետարիատի դիկտատուրա» հասկացությունը բացահայտեց պրոլետարիատի դաշնակիցների հարցի տեսանկյունով: Ապացուցելով այդպիսի դաշինքի անհրաժեշտությունը, նա ցույց տվեց, որ պրոլետարիատի դիկտատուրան դասակարգային դաշինքի հատուկ ձև է գյուղացիության և աշխատավորների ոչ-պրոլետարական մյուս խավերի հետ՝ բանվոր դասակարգի ղեկավար դերով: Բանվոր դասակարգի և աշխատավոր մյուս դասակարգերի ու խավերի դաշինքը Վ. Ի. Լենինը դիտում էր որպես պրոլետարիատի դիկտատուրայի կենսունակության անհրաժեշտ պայման, բարձրագույն սկզբունք, առանց որի անհնար է դիկտատուրայի գոյությունը: Բայց բանվոր դասակարգի և գյու-

ղացիության դաշինքի հարցը Վ. Ի. Լենինը քննարկում է նաև պրոլետարիատի դիկտատուրայի առաջ ծառացող խնդիրների տեսանկյունով։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ պրոլետարիատի դիկտատուրայի վերջնական նպատակը, գլխավոր և հիմնական խնդիրը սոցիալիզմի, կոմունիզմի կառուցումն է, կապիտալիզմի համեմատությամբ աշխատանքի ավելի բարձր արտադրողականության ստեղծումը։ Այդ խնդիրները պրոլետարիատը միայնակ, առանց դաշնակիցների, իրականացնել չի կարող։ Ուստի բանվոր դասակարգը ոչ-պրոլետարական աշխատավորական մասսաներին՝ քաղաքային մանր բուրժուազիային, ինտելիգենցիային և, հատկապես, աշխատավոր գյուղացիությանը պետք է վերջնականապես կտրի բուրժուազիայից, նրանց գործով համոզի խոշոր սոցիալիստական արտադրության առավելությունների մեջ։ Իսկ այդ խնդիրը պրոլետարիատը կարող է լուծել միայն իր դիկտատուրայի միջոցով։ Դրա համար հարկավոր է երկարատև, սիստեմատիկ դաստիարակչական-կազմակերպական աշխատանք գյուղացիության և քաղաքի մանրբուրժուական խավերի մեջ, հարկավոր է պրոլետարիատի պետական օգնությունը նրանց՝ աշխատանքի գործիքներով, կադրերով, ֆինանսական և այլ միջոցներով։

Վ. Ի. Լենինը Երկրորդ Ինտերնացիոնալի սոցիալիստների գլխավոր սխալներից մեկը համարում էր այն, որ նրանք չէին հասկանում, որ բնակչության մեծամասնությանն իր կողմը գրավելու և նրանց հետ պրոլետարիատի դաշինքն ամրապնդելու համար պետք է տապալել բուրժուազիային, հաստատել պրոլետարիատի դիկտատուրա և այն օգտագործել աշխատավոր մասսաների շրջանում բուրժուազիայի ազդեցությունը ջախջախելու համար՝ աշխատավորների տնտեսական կարիքները շահագործողների հաշվին ռևոլյուցիոն ձևով բարելավելու միջոցով։ Երկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիստների կողմից պրոլետարիատի դիկտատուրան չհասկանալու գլխավոր աղբյուրը Վ. Ի. Լենինը համարում էր այն, «...որ նրանք չէին հասկանում, թե պետական իշխանությունը մի դասակարգի՝ պրոլետարիատի ձեռքում գտնվելը կարող է և պետք է գործիք դառնա պրոլետարիատի կողմը գրավելու ոչ-պրոլետարական աշխատավոր մասսաներին, գործիք՝ նվաճելու այդ մասսաներին բուրժուազիայից և մանր-բուրժուական պարտիաներից» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 327)։ Պարզ է, որ բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության և աշխատավորների մյուս խավերի դաշինքի ամրապնդման նպատակին ուղղված պրոլետարիատի դիկտատուրայի գործունեությունը Վ. Ի. Լենինը համարում էր ստեղծագործական, դաստիարակչական-կազմակերպական բնույթի աշխատանք։ Հետևապես, երբ բանվոր դասակարգի և մյուս աշխատավորների դաշինքի հարցը քննարկվում է պրոլետարիատի դիկտատուրայի խնդիրների տեսանկյունից, աշխատավորների դաշինքի ամրապնդման նպատակին ուղղված պրոլետարիատի դիկտատուրայի գործունեությունն անպայման պետք է վերագրվի վերջինիս ստեղծագործական, կազմակերպչական-դաստիարակչական կողմին և ոչ թե առանձնացվի որպես պրոլետարիատի դիկտատուրայի ինքնուրույն կողմ։ Այս եզրակացության օգտին են խոսում վերը բերված և լենինյան բազմաթիվ այլ դրույթներ։

Զարգացնելով պրոլետարիատի դիկտատուրայի մասին գիտական կոմունիզմի հիմնադիրների հայացքները, Վ. Ի. Լենինը մշակեց «պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմ» հասկացությունը։ Նա ցույց տվեց, որ «պրոլետարական» կամ «սոցիալիստական պետականություն» և «պրոլետարիատի դիկտատուրա» հասկացությունները թեև որոշ իմաստով համընկնում են, բայց նույնական չեն։ Պրոլետարիատի դիկտատուրան ամենից առաջ պետական հասկացություն է։ Այն յուրաքանչյուր սոցիալիստական պետության էությունն է, որին հատուկ է բազմազանություն, դրսևորման ձևերի հարստություն։ Մյուս կողմից, լինելով պետական և հասարակական կազմակերպությունների մի ամբողջական սիստեմը՝ Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ, պրոլետարիատի դիկտատուրան ավելի լայն հասկացություն է, քան «պրոլետարական պետությունը»։ Կապիտալիզմից կոմունիզմին անցման շրջանում պրոլետարիատի դիկտատուրան իրականացվում է պետական իշխանության այնպիսի օրգանների միջոցով, ինչպիսիք են՝ կառավարման վարչական օրգանները, բանակը, դատարանը, հետախուզությունը, միլիցիան, ինչպես նաև սոցիալիստական հասարակության տնտեսական կյանքը կարգավորող և կառավարող մի շարք ուրիշ պետական օրգաններ։ Բայց այն իրականացվում է ոչ միայն մասնանշված պետական կազմակերպությունների, այլև մի ամբողջ շարք ոչ-պետական, հասարակական կազմակերպությունների (արհմիություններ, կոոպերացիաներ, կոմերիտմիություն և այլն) միջոցով. դրանց և պետական օրգանների օրգանական միասնությունը կազմում է պրոլետարիատի դիկտատուրայի մի բարեկերտ սիստեմ՝ Կոմունիստական պարտիայի ղեկավար դերով։ «Ստացվում է,— ասում էր Վ. Ի. Լենինը,— ընդհանուր առմամբ և ամբողջությամբ ձևականորեն ոչ-կոմունիստական, ճկուն և համեմատաբար լայն, շատ հզոր, պրոլետարական ապարատ, որի միջոցով պարտիան սերտորեն կապված է դասակարգի ու մասսայի հետ և որի միջոցով, պարտիայի ղեկավարությամբ, իրագործվում է դասակարգի դիկտատուրան» (Երկեր, հ. 31, էջ 40)։

Վ. Ի. Լենինը բացահայտեց և բազմակողմանիորեն հիմնավորեց Կոմունիստական պարտիայի դերը պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում որպես նրա ղեկավար և ուղղություն տվող ուժի, ցույց տվեց, որ այդ դիկտատուրան կարող է իրականացվել միայն պրոլետարիատի ավանգարդի, նրա Կոմունիստական պարտիայի միջոցով, որը համախմբում, միավորում և ղեկավարում է բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների կազմակերպությունները։

Պրոլետարիատի դիկտատուրայի տեսության նշանակալից զարգացում էր նաև սոցիալիզմի, կոմունիզմի կառուցման ժամանակ կապիտալիզմի պայմաններում ստեղծված տնտեսության կառավարման որոշ օրգանների օգտագործման մասին լենինյան դրույթը։ Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ բուրժուական պետությունը, հատկապես մոնոպոլիստական կապիտալիզմի շրջանում, բացի ռեակցիոն հարկադրանքից, իրականացնում է նաև որոշ տնտեսական-կազմակերպչական ֆունկցիա և դրան համապատասխան ունի իր ապարատը, տնտեսության կառավարման օրգանները, որոնք ստեղծվել են տնտեսության զարգացման օբյեկտիվ պահանջներին համապատասխան, կյանքի են կոչվել հանրային խոշոր արտադրության կողմից և ծառայում են նրան։ Ինչպե՞ս վարվել այդ ապարատի հետ,— հարցնում էր Վ. Ի. Լենինը և անմիջապես պատասխանում։ «Այստեղ մենք մոտեցանք պետական ապարատի հարցի մյուս կողմին։ Մշտական բանակի, ոստիկանության, պաշտոնեության առավելապես «ճնշիչ» ապարատից զատ, ժամանակակից պետության մեջ կա բանկերի ու սինդիկատների հետ առանձնապես սերտ կապված մի ապարատ, որը, եթե կարելի է այսպես արտահայտվել, հաշվառման-գրանցման մեծ աշխատանք է

կատարում։ Այդ ապարատը չի կարելի և չպետք է ջախջախել։ Հարկավոր է պոկել նրան կապիտալիստների ենթարկումից, հարկավոր է նրանից կտրել, անջատել ու ճատել-դեն գցել կապիտալիստներին՝ իրենց ազդեցության թելերի հետ միասին, հարկավոր է նրան պրոլետարական Սովետներին ենթարկել, հարկավոր է նրան դարձնել ավելի լայնածավալ, ավելի համապարփակ, ավելի համաժողովրդական» (Երկեր, հ. 26, էջ 112)։

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ այդ ապարատը բացարձակապես անհրաժեշտ է սոցիալիզմի կառուցման համար, որովհետև սոցիալիզմը ոչ միայն չի կաշկանդում, չի արգելակում արտադրության հանրայնացման պրոցեսը, այլ, ընդհակառակը, ենթադրում է առավել խոշոր հանրայնացված արտադրություն, քան կապիտալիզմը։ Ուստի պրոլետարիատը պետք է այդ ապարատը «պատրաստի կերպով» վերցնի կապիտալիզմից ու շարժման մեջ դնի հօգուտ սոցիալիզմի «մի հարվածով, մի հրովարտակով»։ Դրա համար օբյեկտիվ հիմք, երաշխիք է այն, որ կապիտալիզմի ժամանակ նշված ապարատում փաստական աշխատանքը կատարում են ծառայողները, որոնց մեծամասնությունը գտնվում է պրոլետարական կամ կիսապրոլետարական դրության մեջ։

ՍՄԿՊ XXII համագումարում նշվեց անհատի պաշտամունքի տարիներին մոռացության տրված Վ. Ի. Լենինի վիթխարի ծառայությունը սոցիալիստական պետության տեսության զարգացման բնագավառում։ Հատկապես ըստ արժանվույն չէր գնահատվում Լենինի տեսական ու գործնական չափազանց կարևոր աշխատանքը պրոլետարիատի դիկտատուրայի մշտական զինված ուժերի ստեղծման գործում։

Պրոլետարիատի դիկտատուրայի մշտական զինված ուժեր ստեղծելու հարցը մինչ այդ «բոլորովին չէր դրվել անգամ տեսականորեն» (Լենին)։ Վ. Ի. Լենինի մեծագույն ծառայությունն այն էր, որ նա համարձակ կերպով առաջ մղեց, զարգացրեց պրոլետարիատի դիկտատուրայի մարքսիստական տեսությունը՝ հիմնավորելով պրոլետարիատի դիկտատուրայի մշտական զինված ուժերի անհրաժեշտությունը, մշակեց այն կազմակերպելու հիմնական սկզբունքները։ Ելնելով պատմական կոնկրետ իրադրությունից, դրանք իրենց արտացոլումը գտան Սովետական իշխանության ընդունած մի շարք պատմական որոշումներում, որոնց հիման վրա կազմակերպվեցին պրոլետարիատի դիկտատուրայի՝ աշխարհում առաջին մշտական, կանոնավոր զինված ուժերը։ Դա բոլորովին նոր խոսք էր պրոլետարիատի դիկտատուրայի մարքսիստական տեսության զարգացման ասպարեզում։

Ստեղծագործելով պատմական նոր դարաշրջանում, օպորտունիզմի և անարխիզմի դեմ մղվող գաղափարական սուր պայքարում, Վ. Ի. Լենինը ոչ միայն վերականգնեց, պաշտպանեց ու վարպետորեն կիրառեց Մարքսի ու Էնգելսի տեսական հարուստ ժառանգությունը, այլև հարստացրեց այն նոր դրույթներով, պրոլետարիատի դիկտատուրայի մարքսիստական տեսությունը բարձրացրեց զարգացման մի նոր աստիճանի։

***

Պրոլետարիատի դիկտատուրայի մարքսիստական-լենինյան տեսությունը լիովին հաստատվեց և հաստատվում է միջազգային պրոլետարական շարժման ռևոլյուցիոն պրակտիկայով՝ հասարակության զարգացման արդի էտապում,



որի գլխավոր բովանդակությունը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելն է։ Կապիտալիզմի համաշխարհային սիստեմի հետ միասին ներկայումս գոյություն ունի և արագ տեմպերով զարգանում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, որն ընդգրկում է շատ երկրներ ու ժողովուրդներ։ Սոցիալիզմի, կոմունիզմի կառուցումը դարձել է հարյուր միլիոնավոր մարդկանց անմիջական գործը։ Նոր հասարակարգի կառուցման այդ պրակտիկան առաջադրում է նորանոր խնդիրներ և հրամայաբար պահանջում դրանց տեսական իմաստավորում, հիմնավորում ու լուծում։ Ուստի պատմական նոր պայմաններին համապատասխան պրոլետարիատի դիկտատուրայի, սոցիալիստական պետության ֆունկցիաների, աշխատանքի մեթոդների ու ձևերի տեսական մշակման հարցը դարձել է կոմունիզմի ամենահրատապ հարցերից մեկը և միանգամայն արժանի կերպով գտնվում է միջազգային կոմունիստական շարժման ուշադրության կենտրոնում։ Այս տեսակետից առանձնապես նշանակալից են ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարների առաջադրած և լուծած տեսական մի շարք դրույթներ, որոնք վերջնականապես ձևակերպվեցին ՍՄԿՊ նոր Ծրագրում։

Գիտական կոմունիզմի այդ փաստաթղթում պատմական նոր պայմաններին համապատասխան խիզախորեն առաջադրվում և լուծվում են տեսական բազմաթիվ նոր դրույթներ՝ մարքսիզմ-լենինիզմի բոլոր բաղկացուցիչ մասերի վերաբերյալ։ Այստեղ իր հետագա զարգացումն է գտել նաև պրոլետարիատի դիկտատուրայի մարքսիստական-լենինյան տեսությունը։ «Ապահովելով սոցիալիզմի... լրիվ ու վերջնական հաղթանակը... պրոլետարիատի դիկտատուրան կատարեց իր պատմական միսիան և ներքին զարգացման խնդիրների տեսակետից դադարեց ՍՍՌՄ-ում անհրաժեշտ լինելուց... Պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը... մեր երկրում վերածվեց համաժողովրդական պետության, դարձավ ամբողջ ժողովրդի շահերն ու կամքն արտահայտող օրգան» (ՍՄԿՊ Ծրագիր, էջ 120)։

ՍՄԿՊ Ծրագրում սահմանվեցին մեր երկրի զարգացման արդի էտապում համաժողովրդական պետության հիմնական խնդիրները, նշվեցին նրա մահանալու ներքին և արտաքին պայմանները, որոշվեց սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությունը կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում՝ դեմոկրատիայի համակողմանի զարգացում, պետության կառավարմանն աշխատավորների ավելի ու ավելի լայն խավերի մասնակցություն, պետական ապարատի աշխատանքի բարելավում և նրա գործունեության նկատմամբ ժողովրդական վերահսկողության ուժեղացում, տնտեսական-կազմակերպական և կուլտուր-դաստիարակչական աշխատանքներում հասարակական կազմակերպությունների դերի է՛լ ավելի բարձրացում և այլն։ Սոցիալիստական պետականությունը զարգանալով այս ուղիով աստիճանաբար կվերափոխվի հասարակական կոմունիստական ինքնավարության։ ՍՄԿՊ Ծրագրում առաջադրված դրույթները նշանավորում են պրոլետարիատի դիկտատուրայի մարքսիստական-լենինյան թեորիայի զարգացման մի նոր աստիճան։

# ԼԵՆԻՆԸ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԲՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

*Ա. ՄԻՆԱՍՅԱՆ*

*Զարգացնելով մարքսիստական փիլիսոփայությունը՝ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը, Վ. Ի. Լենինը բնագիտության փիլիսոփայության հարցերին մեծ տեղ է հատկացրել ո՛չ միայն նրա համար, որ բնագիտության նվաճումները միշտ եղել են և մնում են դիալեկտիկական մատերիալիզմի անսասան բնագիտական հիմքերը, այլ նրա համար, որ բնագիտության բուռն զարգացման պրոցեսն իմպերիալիզմի էպոխայի ռեակցիոն բուրժուական մտածողների կողմից օգտագործվում է իդեալիզմն ու տերտերականությունը «հիմնավորելու», գիտության առաջընթացն արգելակելու համար։ Լենինը կռեց հզոր զենք՝ գիտության նվաճումներից արվող կեղծ, իդեալիստական եզրակացությունների դեմ պայքարելու համար։*

*Իր փիլիսոփայական աշխատություններում Լենինը զարգացրեց դիալեկտիկական մատերիալիզմի իմացության թեորիան, ցույց տալով, թե փիլիսոփայության հիմնական հարցի ճիշտ լուծումն ինչպես է օգտագործվում շարժման, ժամանակի և տարածության, պատճառականության, անհրաժեշտության և պատահականության, օրենքի և օրինաչափության, իմացության թեորիայի և հասարակության վերաբերյալ եղած գիտությունների ամենատարբեր բնագավառներում։ Նա հատուկ ուշադրություն հատկացրեց բացարձակ և հարաբերական ճշմարտությունների դիալեկտիկային, շեշտելով, թե ինչպիսի խոշոր նշանակություն ունի գիտության և գիտական ճանաչողության զարգացման գործում խնդրի դիալեկտիկա-մատերիալիստական ըմբռնումը, հիմնովին քննադատեց բուրժուական ռեակցիոն իդեալիստական ուղղությունները, որոնք կանգնած էին ագնոստիցիզմի, սուբյեկտիվիզմի, ռելյատիվիզմի, օբյեկտիվ ճշմարտության բացասման հակագիտական տեսակետի վրա։*

*Մեծ է գիտության զարգացման համար Լենինի կողմից մշակված՝ պրակտիկայի, որպես իմացության չափանիշի, դիալեկտիկական-մատերիալիստական ըմբռնման նշանակությունը։*

*Լենինը ապացուցեց, որ XX դարի բնագիտությունը չի կարող հաջողությամբ զարգանալ նախկին մեխանիստական, մետաֆիզիկական մատերիալիզմի բազայի վրա, ընդգծելով, որ բնագիտությունն ընթանում է դեպի դիալեկտիկական մատերիալիզմ, սակայն այդ ընթացքը կատարվում է տարերայնորեն, խարխափելով ոչ թե վերընթաց ուղիղ գծով, այլ զիգզագներով։ Լենինը ոչ միայն բացահայտեց մախիզմի ռեակցիոն էությունը, որն ամբողջովին ուղղ-*



*ված էր մարքսիստական փիլիսոփայության դեմ, այլև պոզիտիվիստական կեղծարարներից պաշտպանեց բնագետների մեծ մասի տարերային մատերիալիզմը։ Ցույց տալով, որ տարերային մատերիալիզմն ու բնագիտությունն անբաժանելի են իրարից, նա միաժամանակ նշեց, որ այդ մատերիալիզմով սահմանափակվող բնագետներն անօգնական են իրենց փիլիսոփայական եզրակացություններում, դրա համար էլ առաջ քաշեց բնագետների և մարքսիստ փիլիսոփաների միության անհրաժեշտության գաղափարը։*

*Իր փիլիսոփայական աշխատություններում Լենինն արծարծեց ու լուծեց մատերիայի և շարժման, ժամանակի ու տարածության օբյեկտիվության և փոխադարձ կապի, պատճառականության օբյեկտիվ բնույթի, մատերիայի ու նրա ճանաչելիության անսպառելիության և բազմաթիվ այլ պրոբլեմներ։ Բնագիտության փիլիսոփայության ասպարեզում Լենինի կողմից առաջադրված պրոբլեմները հանդիսացել են այն ավարտուն ծրագիրը, որով ընթացել և շարունակում է ընթանալ մեր դարի առաջավոր բնագիտությունն ու մարքսիստական փիլիսոփայությունը։*

*Մարքս-լենինյան փիլիսոփայությունը հսկայական վերափոխիչ ազդեցություն է ունեցել համաշխարհային գիտական մտքի առաջավոր ներկայացուցիչների վրա։ Այդ ազդեցությունն է՛լ ավելի է մեծանում մեր դարաշրջանում, երբ սոցիալիզմի հզոր լագերի զարգացման ամեն մի առաջընթաց քայլ մարքսիստական փիլիսոփայության նոր, պրակտիկ հաստատումն է։*

*Բացի նշված պրոբլեմներից, Լենինը թողել է հարուստ ժառանգություն և բազմաթիվ արժեքավոր, ծրագրային դրույթներ, որոնցից է մատերիալիստական դիալեկտիկայի օրենքների և կատեգորիաների արդարացիության ստուգումը՝ գիտության և տեխնիկայի պատմության օգնությամբ։ Լենինը թողել է դիալեկտիկական տրամաբանության, նրա օրենքների և կատեգորիաների մշակման մի ամբողջ ծրագիր, որի իրականացումը մարքսիստ փիլիսոփաների պատվի գործն է։*

*Կանգ առնենք ժամանակակից բնագիտության մի քանի փիլիսոփայական պրոբլեմների վրա, որոնք սերտորեն առնչվում են լենինյան ժառանգության հետ։*

*XIX դարի վերջին և XX դարի սկզբին բնագիտության մեջ կատարված մի շարք խոշոր հայտնագործություններ մահացու հարված հասցրին ատոմի անբաժանելիության և անփոփոխության մետաֆիզիկական ըմբռնմանը, ապացուցեցին ատոմի բաժանելիությունը, մասսայի փոփոխականությունը, մատերիայի թափանցելիությունը։ Քանի որ մինչև այդ մատերիան նույնացվում էր անփոփոխ և անբաժանելի ատոմների հետ, ապա ատոմի փոփոխականությունը դիալեկտիկա չիմացող բուրժուական որոշ ֆիզիկոսներ մեկնաբանեցին որպես «մատերիայի չքացում»։ Այդ էր պատճառը, որ Վ. Ի. Լենինը նոր պայմաններում իր ուշադրությունը կենտրոնացրեց մատերիայի և շարժման պրոբլեմի վրա։ Նա ցույց տվեց, որ ֆիզիկայի նվաճումների ոչ ճիշտ, միակողմանի մեկնաբանությունը հանգեցնում է «ֆիզիկական» իդեալիզմին, որն առաջ է քաշում շարժումն առանց մատերիայի կեղծ թեզը։ Լենինը բացահայտեց մախիզմի կապը ֆիզիկայի մի փոքրիկ դպրոցի հետ, որի ներկայացուցիչները դիալեկտիկա չիմանալու պատճառով, ռելյատիվիզմի վրայով գլորվել, ընկել*

էին իդեալիզմի մեջ։ Սակայն միայն ռելյատիվիզմով չեն սահմանափակվում «ֆիզիկական» իդեալիզմի իմացաբանական արմատները։ Այդ ժամանակաշրջանի ֆիզիկայի զարգացման սպեցիֆիկ առանձնահատկություններից մեկն էլ այն էր, որ մաթեմատիկան լայն կերպով թափանցում էր ֆիզիկայի բնագավառը, ֆիզիկայի օրինաչափություններն իրենց արտացոլումն էին գտնում մաթեմատիկական հավասարումների մեջ։ Այդ պրոցեսի միակողմանի մեկնաբանությունը հանգեցնում էր այն սխալ տեսակետին, թե իբր «մատերիան չքանում է», մնում են սոսկ մաթեմատիկական հավասարումները։ Ֆիզիկայի մաթեմատիզացիայի նման մեկնաբանությունը հանդիսանում է «ֆիզիկական» իդեալիզմի իմացաբանական մյուս արմատը։

Ատոմը բաժանվեց, բացահայտվեցին նոր տեսակի մասնիկներ՝ էլեկտրոններ։ Այդ հանգամանքը մետաֆիզիկական մտածելակերպ ունեցող բուրժուական բնագետներին հանգեցրեց այն տեսակետին, թե իբր մատերիան կազմված է ոչ թե անփոփոխ ատոմներից, այլ անփոփոխ էլեկտրոններից։ Այլ կերպ ասած, եթե մինչև այդ հայտնագործություններն աշխարհի հիմքում դրվում էին անբաժանելի ատոմները, ապա այդ հայտնագործություններից հետո այդպիսի հիմք համարվեցին էլեկտրոնները։ Ելնելով այն բանից, որ էլեկտրոնները հանդիսանում են էլեկտրական էներգիայի կրողներ, որոշ բուրժուական մտածողներ հանգեցին այն եզրակացության, որ էլեկտրոնները ոչ թե մատերիա են, այլ էներգիա, դրա համար էլ անցումն ատոմներից էլեկտրոններին նրանք մեկնաբանում են որպես մատերիայի վերածում էներգիայի։ Այդ հանգամանքն օգտագործվում էր անպտուղ էներգետիզմը «հիմնավորելու» համար։

Ընդհանրացնելով XIX դարի վերջի և XX դարի սկզբի բնագիտության ձեռք բերած խոշոր նվաճումները, Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ այդ նվաճումները ոչ թե հերքում են աշխարհի մատերիականությունը, մատերիայի գոյությունը, որպես օբյեկտիվ ռեալականություն, այլ մեկ անգամ ևս հաստատում են այդ։ Ատոմի բաժանելիությունը, մատերիայի առանձին հատկությունների փոփոխականությունը,— նշում է Լենինը,— սասանում են ոչ թե մատերիայի գոյությունը, այլ ընդարձակում են մեր գիտելիքների սահմանները մատերիայի կառուցվածքի և նրա հատկությունների մասին, պայքարելով ֆիզիկայի նորագույն հայտնագործություններից արվող իդեալիստական եզրակացությունների դեմ։ Մերկացնելով մախիստների սոփեստական պրիոմներն այդ հարցում՝ Լենինը ցույց տվեց, որ մախիստները մատերիայի օբյեկտիվության հարցը խառնում են նրա կառուցվածքի և ֆիզիկական հատկությունների վերաբերյալ եղած մարդկային պատկերացումների հարցի հետ։

Մարդկային պատկերացումները մատերիայի կառուցվածքի և նրա հատկությունների վերաբերյալ փոխվել են, փոխվում են և պետք է փոխվեն, սակայն այդ փոփոխվող պատկերացումների մեջ անխախտ ձևով արտացոլվում է մատերիան, որը գոյություն ունի անկախ մարդու կամքից ու գիտակցությունից։ Լենինը գրում է. «... մատերիան այն է, ինչ որ ներգործելով մեր զգայարանների վրա՝ առաջ է բերում զգայություն, մատերիան զգայությունների մեջ մեզ տրված օբյեկտիվ ռեալությունն է...» (Լենին, Երկեր, հ. 14, էջ 183)։

Լենինը ո՛չ միայն հիմնավորեց մատերիայի օբյեկտիվության դրույթը, այլև պայքարեց մատերիայի սպառելիության մետաֆիզիկական տեսակետի դեմ, ապացուցելով, որ մատերիան չի կարելի հանգեցնել ինչ-որ մեկընդմիշտ տրված անփոփոխ մասնիկների՝ էլեկտրոնների։ Օգտագործելով բնագիտու-



թյան նոր նվաճումները, Լենինը խորացրեց և զարգացրեց մատերիայի անսպառելիության գաղափարը, շեշտելով, որ «էլեկտրոնը նույնպես անսպառելի է, ինչպես և ատոմը, բնությունն անվերջ է...» (Լենին, Երկեր, հ. 14 էջ 349)։

Եթե էնգելսի կենդանության օրոք տիեզերքի ջերմային մահվան կողմնակիցները շարժումը կտրում էին մատերիայից և առաջ քաշում՝ մատերիան առանց շարժման կեղծ թեզը, որը տանում էր դեպի առաջնահարվածի իդեալիստական տեսակետը, ապա նոր պայմաններում, «ֆիզիկական» իդեալիստները, շարժումը կտրելով մատերիայից, առաջ էին քաշում՝ «շարժում առանց մատերիայի» թեզը, որն անմիջականորեն հանգեցնում է իդեալիզմին։ Այս երկու տեսակետների համար ընդհանուրն այն է, որ նրանցից յուրաքանչյուրը միակողմանիորեն մեկնաբանելով իր ժամանակի բնագիտության նվաճումները՝ հանգում է իդեալիզմի։

Լենինի մահից հետո բնագիտությունն ապրել է բուռն զարգացում։ Մարդկային միտքն անընդհատ թափանցում է միկրոաշխարհի օրինաչափությունների մեջ։ Բացահայտվում են նոր նյութական մասնիկներ, այսպես կոչված՝ «էլեմենտար» մասնիկներ, որոնց թիվն այժմ անցնում է 30-ից։ Հայտաբերված են այդ մասնիկների և նրանց համապատասխան դաշտերի միջև եղած կապը և փոխադարձ վերածման պրոցեսները, որոնք մեկ անգամ ևս հաստատում են արտաքին աշխարհի մատերիական միասնության դիալեկտիկա-մատերիալիստական դրույթը։

Այժմ ապացուցված է, որ ատոմները բաղկացած են պրոտոններից, նեյտրոններից և էլեկտրոններից։ Օրինական հարց է ծագում, արդյո՞ք այդ մասնիկները մատերիայի բաժանելիության վերջին սահմանն են, թե նրանք ևս ենթակա են բաժանման։ Դեռ այսօր էլ կարելի է հանդիպել որոշ բնագետների, որոնք կանգնած են այն տեսակետին, թե իբր գիտությունն արդեն բացահայտել է մատերիայի վերջին անբաժանելի մասնիկները։ Այսպես, օրինակ, գերմանական ականավոր ֆիզիկոս Վ. Հայզենբերգն առաջ է քաշում այն տեսակետը, թե իբր «էլեմենտար մասնիկներն իրենցից ներկայացնում են մատերիայի վերջին, անբաժան, մանրագույն միավորները» («Вопросы философии» № 11, 1958, էջ 66)։ Նման պնդումը զուրկ է որևէ հիմքից։ Իհարկե, գիտության զարգացման տվյալ աստիճանում «էլեմենտար» մասնիկների մասին ժամանակակից ուսմունքը դեռ չի բացահայտել վերջիններիս ներքին կառուցվածքը։ Սակայն, կասկածից վեր է, որ այդ մասնիկներն ունեն բարդ կառուցվածք և այժմ փորձեր են կատարվում այդ մասնիկները ևս տարալուծելու, նրա կազմության մեջ «միջուկ», «թաղանթ» և այլ կոմպոնենտներ հայտաբերելու համար։

Այդ նույն տեսակետը, մի քիչ այլ ձևով, պաշտպանում են որոշ փիլիսոփաներ և ֆիզիկոսներ։ Քանի որ բարձր էներգիա ունեցող մասնիկների փոխազդեցության պրոցեսում տեղի է ունենում ոչ թե «էլեմենտար» մասնիկների վերածում սովորական իմաստով, այլ այդ «էլեմենտար» մասնիկներից առաջանում են նոր մասնիկներ, որոնք մինչ այդ գոյություն չեն ունեցել տվյալ մասնիկի կազմում, նրանք եզրակացնում են, թե իբր արդեն հասել են մատերիայի բաժանման վերջին սահմանին։ Այլ կերպ ասած, նոր փաստարկումն օգտագործում են հին սխալը վերականգնելու համար։ Այս տեսակետի կողմնակիցները «էլեմենտար» մասնիկները համեմատում են լեզվի այբուբենի հետ և հայտարարում, որ ինչպես սահմանափակ թվով տառերից կարելի է կառուցել

անսահման թվով բառեր, այնպես էլ սահմանափակ թվով «էլեմենտար» մասնիկներից կարող է գոյանալ իրերի և երևույթների անսահման բազմազանությունը։ Այս տեսակետի կողմնակիցներից ոմանք չեն բացասում «էլեմենտար» մասնիկների բարդ կառուցվածքը, բայց դրանից բանի էությունը չի փոխվում։ Պնդել, որ «էլեմենտար» մասնիկները հանդիսանում են մատերիայի վերջին, անբաժանելի մասնիկներ, որոնցից կազմված է անսահման տիեզերքը, նշանակում է լռելյայն ընդունել, որ մատերիան սկիզբ ունի, նշանակում է և վախճան ունի։ Նման հարցադրումը հաշվի չի առնում նաև այն հանգամանքը, որ մեր երկրագունդը մեկն է անսահման տիեզերական մարմիններից, որոնցից յուրաքանչյուրի վրա, տիեզերքի տարբեր տեղերում, մատերիան գտնվում է իր փոխակերպման տարբեր աստիճաններում։ Այդ պատճառով էլ, մատերիայի զարգացման այդ բազմաթիվ վիճակները չի կարելի հանգեցնել մատերիայի մի վիճակին, առանց աղավաղելու մատերիայի զարգացման իրական պատկերը։

Անհրաժեշտ է նկատի ունենալ նաև այն հանգամանքը, որ մարդկային միտքը չի կարող միանգամից ճանաչել անսահման տիեզերքը։ Իմացության ամեն մի աստիճան միշտ սահմանափակված է որոշակի շրջանակներով, դրա համար էլ ոչ մի սերնդի գիտելիք, ինչքան էլ այն հարուստ ու բազմակողմանի լինի, չի կարող սպառել անսահման տիեզերքը։ Ահա թե ինչու, մեր գիտելիքներն այս կամ այն օբյեկտի կառուցվածքի և հատկությունների մասին, հարաբերական են։ Բնության իմացության տվյալ աստիճանում գիտության կողմից ուսումնասիրվող առանձին օբյեկտներ կարող են թվալ պարզ, իսկ որոշ ժամանակից հետո, իմացության զարգացման շնորհիվ, կբացահայտվի նրանց բարդ կառուցվածքը։ Եվ իրոք, անցյալ դարում ատոմը համարում էին մատերիայի վերջին, ամենափոքր, անբաժանելի մասնիկը։ Բնագետները գիտեն, որ որոշակի պայմաններում ատոմը ճառագայթում է լույս, բայց չգիտեին ո՛չ ատոմի կառուցվածքը և ո՛չ էլ լույսի ճառագայթման մեխանիզմը։ Հետագայում նրանք բացահայտեցին ինչպես ատոմի բարդ կառուցվածքը, այնպես էլ լույսի ճառագայթման մեխանիզմը։ Ճիշտ այդպես էլ, այժմ հայտնի է, որ բարձր էներգիա ունեցող մասնիկների փոխազդեցության պրոցեսում ծագում են նոր մասնիկներ, բայց առայժմ հայտնի չէ ո՛չ ընդհարվող մասնիկների կառուցվածքը և ո՛չ էլ նոր մասնիկների ծագման մեխանիզմը։ Սակայն այդ հիմք չի տալիս պնդելու, որ «էլեմենտար» մասնիկները հանդիսանում են մատերիայի բաժանման վերջին սահմանը։

Բնության բուն արտացոլումը պահանջում է, որ մեր իմացությունը գոյություն չունեցող սահմաններ չհորինի ու փաթաթի իմացության օբյեկտներին, այլ ձգտի, անընդհատ խորանալով այդ օբյեկտների էության մեջ, բացահայտել նրանց բարդ կառուցվածքը, գտնել այն հարաբերական սահմանները, որոնք իրոք գոյություն ունեն բնության մեջ։ Այլ կերպ ասած, գիտության կողմից հաստատված ամեն մի սահման պետք է լինի ոչ թե սուբյեկտիվ, այլ օբյեկտիվ, ոչ թե քարացած, այլ շարժուն։

Ժամանակակից բնագիտության զարգացման ողջ ընթացքը փայլուն կերպով հաստատում է մատերիայի անսպառելիության դիալեկտիկական տեսակետը և անմտություն է խոսել մատերիայի ինչ-որ վերջին, անբաժանելի մասնիկների մասին։ Մատերիայի անսպառելիությունը սերտորեն կապված է նրա անսահման բաժանելիության հետ, իսկ անսահմանությունն իրենից ներկայացնում է հավերժ շարունակվող պրոցես, որի ընդհատումը կնշանակի անսահ-



մանության վախճան, այսինքն՝ անսահմանության վերածումը վերջավոր և սահմանափակ մեծության, որն անմտություն է։ Կարելի է չկասկածել, որ գիտության բուռն զարգացումը մոտ ապագայում կբացահայտի «էլեմենտար» մասնիկների բարդ կառուցվածքը, ցույց կտա, որ այդ մասնիկներն այժմ մեզ հայտնի մյուս նյութական մասնիկների նման, մատերիայի անսահման բաժանման հանգուցագծի «հանգույցներից» մեկն են և ոչ թե այդ հանգուցագծի վախճանը, ինչպես պնդում են մետաֆիզիկական մտածելակերպ ունեցող որոշ բնագետներ և փիլիսոփաներ։

Մատերիալիստական դիալեկտիկան գտնում է, որ պարզի և բարդի, մասի և ամբողջ փոխհարաբերությունը, լինելով ընդհանուր՝ բնության բոլոր բնագավառների համար, փոխում է իր դրսևորման ձևերն ըստ կոնկրետ պայմանների ու հանգամանքների։ Ինչպես իրական աշխարհում գոյություն ունեցող որակապես տարբեր բնագավառներ չի կարելի հանգեցնել մեկը մյուսին, այնպես էլ վերջիններում դրսևորվող մասի և ամբողջի, պարզի և բարդի փոխհարաբերությունները չի կարելի նույնացնել։ Դրա համար էլ պարզի և բարդի փոխհարաբերության հարցը ամեն անգամ պետք է դնել կոնկրետ, ելնելով տվյալ բնագավառի սպեցիֆիկ առանձնահատկություններից։ Այժմ մեզ հայտնի «էլեմենտար» մասնիկների կառուցվածքի հարցը այս տեսանկյունով դնելիս, պարզ է դառնում, որ մասի և ամբողջի դիալեկտիկան այստեղ կատարելապես այլ ձևով է դրսևորվում, քան մյուս բնագավառներում։ Այսպես, օրինակ, նուկլոնները մեծ էներգիա ունեցող մասնիկներով ռմբակոծելիս կարելի է ստանալ նոր մասնիկներ՝ պի-մեզոններ։ Չնայած այդ մասնիկների մեջ մինչև այդ գոյություն չունեին պատրաստի պի-մեզոններ, բայց վերջիններս, մեծ էներգիա ունեցող պրոտոններով կամ նեյտրոններով ռմբակոծելիս սկսում են ճառագայթել պի-մեզոններ, այսինքն՝ դառնում են նոր մասնիկների աղբյուր։ Այդ պրոցեսը կարելի է կրկնել բազմաթիվ անգամ, որը կհանգեցնի հսկայական թվով մեզոնների առաջացման։ Այդպես են ոչ միայն նուկլոնները, այլև մեզոնները, էլեկտրոնները և մյուս մասնիկները։

Նուկլոնից մեզոն ճառագայթելու համար անհրաժեշտ է հաղորդել 140 միլիոն էլեկտրոնվոլտ էներգիա, որը հավասար է մեզոնի սեփական էներգիային։ Իսկ այս դեպքում կարող է օրինական հարց առաջանալ, թե ի՞նչ տեղի կունենա նուկլոնի հետ, եթե նրան հաղորդած էներգիան բավարար չլինի մեզոնի անջատման համար։ Ամենայն հավանականությամբ, այդ ժամանակ տեղի կունենա նուկլոնի ինչ-որ չափով տրոհում։ Այդ երկու, որոշ իմաստով արդեն ձևավորված, մասնիկները, որոնք դեռևս չեն հասել բաժանման աստիճանին, համաձայն անորոշությունների առնչությունների, գտնվում են իրարից որոշ վերջավոր հեռավորության վրա։ Նման պրոցեսները քվանտային մեխանիկայում կոչվում են վիրտուալ։ Այդպիսի պրոցեսների շնորհիվ, որոնք հավանաբար տեղի են ունենում «էլեմենտար» մասնիկներում ինքնաբերաբար, նուկլոնները շրջապատված են վիրտուալ պի-մեզոններով։ Այդպիսի վիրտուալ պի-մեզոնի մասին կարելի է ասել, որ նա գոյություն ունի և, միաժամանակ, գոյություն չունի։ Գոյություն ունի այն իմաստով, որ նա որոշ չափով արդեն ձևավորվել է վիրտուալ բաժանման շնորհիվ. միաժամանակ գոյություն չունի, որովհետև այնքան ուժեղ է կապված նուկլոնի հետ, որ չի կարող իրեն դրսևորել որպես ինքնուրույն մասնիկ։ Այդպիսի վիճակում գտնվող նուկլոնի մասին կարելի է ասել, որ նա միաժամանակ և՛ պարզ է, և՛ բարդ։ Պարզ, քանի որ նուկ-

լոնը մեզոնից բաժանող սահմանն այնքան անորոշ է, որ հնարավոր չէ այն դիտել որպես բաղադրյալ կամ բարդ, բարդ և բաղադրյալ, քանի որ նուկլոնի ինքնաբերաբար վիրտուալ բաժանումը հնարավորություն է տալիս համապատասխան էներգիայի առկայության դեպքում մեզոնը բաժանել նուկլոնից։ Այլ կերպ ասած, տվյալ դեպքում պարզի և բարդի, մասի և ամբողջի հակադրությունները, որոշ իմաստով, դառնում են նույնական։ Այստեղից որոշակիորեն երևում է, որ նուկլոնի և մեզոնի փոխազդեցությունը, որպես մասի և ամբողջի փոխազդեցություն, ունի բոլորովին այլ բնույթ, որ չի հանդիպում մեզ ծանոթ ուրիշ բնագավառներում։

«Էլեմենտար» մասնիկների վերաբերյալ եղած այժմյան տվյալները բերում են այն համոզման, որ այդ մասնիկներն ունեն շատ բարդ կառուցվածք։ Նրանց կարելի է համեմատել այն կոմբինատի հետ, որի տարբեր ձեռնարկությունների ու ցեխերը միևնույն ելանյութի տարբեր քանակներից պատրաստում են որակապես տարբեր իրեր։ «Էլեմենտար» մասնիկները համապատասխան չափի էներգիա ստանալով, ըստ երևույթին իրենց «ատմոսֆերայի» տարբեր մասերում այն վերածում են որակապես տարբեր մասնիկների։ Ենթադրում են, որ էլեկտրոնը շրջապատված է հատուկ ատմոսֆերայով, որի տարբեր մասերում կարող են ծագել տարբեր տեսակի մասնիկներ։ Այսպես, օրինակ՝ կենտրոնից $10^{-11}$ սմ. հեռավորության վրա կարող է ծագել զույգ-էլեկտրոն-պոզիտրոն, $10^{-14}$ սմ հեռավորության վրա՝ մեզոններ, իսկ $10^{-15}$ սմ հեռավորության վրա՝ նուկլոններ։ Էլեկտրոնի արդեն բացահայտված բազմաթիվ հատկությունների՝ լիցքի, մասսայի, սպինի և այլնի հետ միասին, նրա ատմոսֆերայի այդ զարմանալի և բարդ կառուցվածքը որոշակիորեն խոսում է էլեկտրոնի անսպառելիության մասին։

***

Այսպիսով, արդի բնագիտության նվաճումները ոչ միայն կրկին հաստատում են մատերիայի անսպառելիության դիալեկտիկա-մատերիալիստական դրույթը, այլև, ավելի որոշակի են դնում մատերիայի և շարժման միասնության հարցը։ Եթե մինչև հարաբերականության տեսության ստեղծումը մատերիայի երկու այնպիսի անբաժանելի հատկություններ, ինչպիսիք են մասսան ու էներգիան, դիտվում էին իրարից կտրված, ապա գիտության այդ նոր ճյուղը ցույց տվեց, որ մասսան և էներգիան փոխադարձաբար կապված են իրար հետ, այնպես որ չի կարող լինել էներգիայից զուրկ մասսա և մասսայից զուրկ էներգիա։ Այդ կարևոր սկզբունքային դրույթն արտացոլված է $E=mc^2$ բանաձևի մեջ, որտեղից երևում է, որ մասսայի փոփոխությունն ուղեկցվում է էներգիայի համապատասխան փոփոխությամբ և հակառակը։ Այդ է պատճառը, որ միևնույն մարմինը շարժման և հանգստի վիճակում ունենում է տարբեր մասսաներ։ Մասսայի և էներգիայի փոխադարձ կապն արտահայտող բանաձևում էներգիայի պահպանման և փոխակերպման օրենքը ըստ էության միացվել է մասսայի կամ կշռի պահպանման օրենքի հետ։ Այդ երկու օրենքները հանդիսանում են ոչ միայն ժամանակակից բնագիտության ընդհանուր օրենքները, այլև մատերիալիստական փիլիսոփայության անսասան հիմքերը, որոնք փայլուն կերպով հաստատում են մատերիայի հավիտենականության սկզբունքները։



Մասսայի և էներգիայի փոխադարձ կապի բացահայտումը հնարավորություն է տալիս փորձնական ճանապարհով ցույց տալ, թե միջուկային պրոցեսների ժամանակ ինչպես են իրար հետ կապված մատերիայի այդ երկու անխզելի հատկությունները։ Միջուկային և ջերմամիջուկային ռեակցիաները մատերիայի և շարժման միասնության անսասան սկզբունքի վառ ապացույցն են։ Սակայն գիտության այդ հայտնագործությունները բուրժուական որոշ բնագետներ ու փիլիսոփաներ փորձում են օգտագործել իդեալիզմը և տերտերականությունը «հիմնավորելու» համար։ Նրանք աշխատում են ապացուցել, թե իբր, միջուկային և ջերմամիջուկային պրոցեսների ժամանակ մատերիան վեր է ածվում էներգիայի, այսինքն՝ մատերիան չքանում է, իսկ էներգիան մընում է։

Իրականում այդ բոլոր պրոցեսների ժամանակ անխախտ կերպով գործում են ինչպես մասսայի, այնպես էլ էներգիայի պահպանման և փոխակերպման հիմնական օրենքները։ Տեղի է ունենում ոչ թե մատերիայի վերածում էներգիայի, այլ՝ որակապես տարբեր տեսակի մասնիկների փոխադարձ վերածման պրոցեսներ, որոնք կատարվում են բնության ընդհանուր օրենքների համաձայն։ Հասկանալի է, որ, ինչպես այդ, այնպես էլ նրանց փոխազդեցության հետևանքով ծագած նոր մասնիկները գոյություն ունեն օբյեկտիվորեն՝ մարդու կամքից ու գիտակցությունից անկախ։ Նրանք հանդիսանում են միևնույն մատերիայի տարբեր դրսևորումները և նրանցից յուրաքանչյուրն իրենից ներկայացնում է որոշակի մասսայի և նրան համապատասխանող էներգիայի օրգանական միասնությունը, այնպես որ մասսան և էներգիան միևնույն մատերիայի երկու անբաժանելի հատկություններն են, որոնցից մեկը չի կարող գոյություն ունենալ առանց մյուսի։

Ժամանակակից բնագիտության զարգացումը կատարվում է երկու իրար հակադիր և միասնական ուղիներով։ Մի կողմից տեղի է ունենում գիտության տարբեր ճյուղերի խոր դիֆերենցիացիա, իսկ մյուս կողմից՝ գիտության առանձին ճյուղերի շոշափակետերում ծագում են նոր, միջանկյալ գիտություններ, որոնք իրար միացնելով գիտության ամենաբազմազան ճյուղերը՝ տանում են դեպի գիտության միասնական շենքի ստեղծում։ Այդպիսի պայմաններում առաջնակարգ է դառնում շարժման ձևերի և գիտությունների կլասիֆիկացիայի հարցը, որը կարելի է ճիշտ լուծել միայն մարքսիստական փիլիսոփայության օգնությամբ։

Ներկա պայմաններում նոր ձևով է դրվում նաև շարժման ձևերի փոխհարաբերության հարցը։ Շարժման առանձին ձևերի ուսումնասիրության բնագավառում ձեռք բերված խոշոր հաջողությունները հնարավորություն են ստեղծում դրանք օգտագործել շարժման ավելի բարդ ձևերի մեջ թափանցելու համար։ Այսպես, օրինակ, առանց ֆիզիկայի և քիմիայի նվաճումների օգտագործման, ժամանակակից բիոլոգիան չի կարող հաջողությամբ զարգանալ։ Բիոլոգիական պրոցեսների ֆիզիկո-քիմիական կողմերի բացահայտումը լայն հնարավորություններ է ստեղծում թափանցելու շարժման այդ սպեցիֆիկ ձևի էության մեջ, չնայած շարժման բիոլոգիական ձևը երբեք չի կարելի հանգեցնել ֆիզիկո-քիմիական պրոցեսների։ Կարելի է թվարկել ուրիշ բազմաթիվ պրոբլեմներ ևս, որոնք առաջ են քաշվում ժամանակակից բնագիտության տարբեր ճյուղերի կողմից։ Սակայն նշված պրոբլեմները միանգամայն բավարար են հասկանալու համար այն հսկայական դերը, որն ունի մարքսիստական

փիլիսոփայությունը ժամանակակից բնագիտության զարգացման գործում, որպես ընդհանուր մեթոդոլոգիա և գիտական աշխարհայացք։

Բնագիտության տարբեր ճյուղերի կողմից առաջ քաշվող փիլիսոփայական պրոբլեմների շուրջն անընդհատ պայքար է տեղի ունեցել և այսօր էլ հարատևում է այն երկու հակադիր փիլիսոփայական ուղղությունների՝ մատերիալիզմի և իդեալիզմի միջև։ Ժամանակակից բուրժուական իդեալիստական փիլիսոփայական ուղղություններն աշխատում են գիտության նվաճումներն օգտագործել իդեալիզմն ու տերտերականությունը «հիմնավորելու» և աշխատավոր մասսաների գիտակցությունը թունավորելու համար։ Իդեալիզմը գիտության թշնամին է, նրա կողմից առաջ քաշվող կեղծ փիլիսոփայական պրոբլեմները խանգարում են բնագիտության առաջընթացին, իսկ դիալեկտիկական մատերիալիզմին գիտակ չլինելը, շատ հաճախ կապիտալիստական երկրներում, բնագետներին դարձնում է իդեալիզմի զոհը։ Ահա թե ինչու, այսօր ավելի քան հրատապ խնդիր է դարձել բնագետների և մարքսիստ փիլիսոփաների միության ստեղծումը, որի անհրաժեշտության մասին դեռ քառասուն տարի առաջ գրել է մեծ Լենինը։

Այն ժամանակ, երբ Լենինն առաջ քաշեց այդ նշանավոր միտքը, ռևոլյուցիան նոր էր հաղթանակել մեր երկրում, մարքսիստ փիլիսոփաներին կարելի էր մատների վրա հաշվել, իսկ բնագետները հիմնականում իրենց կրթությունն ու դաստիարակությունն ստացել էին կապիտալիզմի տիրապետության պայմաններում։ Իսկ այժմ աշխարհի բնակչության մեկ երրորդը անվերադարձորեն կանգնել է սոցիալիզմի ճանապարհի վրա, մեր երկիրը ստեղծել է իր սեփական բնագետների մեծ ու հզոր բանակը, որը գլխավորում է համաշխարհային գիտության շատ բնագավառներ, ստեղծվել է մարքսիստ փիլիսոփաների մի ամբողջ սերունդ, որն ամուր դաշնակցած սոցիալիզմի լագերի և կապիտալիստական երկրների առաջավոր բնագետների ու մարքսիստ փիլիսոփաների հետ, հետևողական և անհաշտ պայքար է մղում իդեալիզմի դրսևորման բոլոր ձևերի դեմ գիտության տարբեր բնագավառներում։ Լենինի կողմից մշակված գիտության պարտիականության անմահ սկզբունքները, որպես փարոս, լուսավորում են այդ պայքարի ուղին։

---

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԵՐԿԵՐԻ ՀԱՅԵՐԵՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Վ. Ի. Լենինի Երկերն անգնահատելի իդեական հարստություն են, գիտելիքների անսպառ գանձարան։

Դեռ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայից շատ առաջ Վ. Ի. Լենինի մի շարք երկեր թարգմանվել են հայ ռևոլյուցիոն մարքսիստների կողմից։ Առաջնորդի աշխատությունների հայերեն առաջին թարգմանիչներն են եղել հայ ժողովրդի պանծալի զավակներ, ականավոր բոլշևիկներ Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Վ. Տերյանը, Ալ. Մյասնիկյանը և ուրիշներ։

Հայտնի է, որ դեռևս անցյալ դարի 90-ական թվականներին Լենինի առանձին հոդվածներ թարգմանվել և տպագրվել են հայ մարքսիստական պարբերականներում, իսկ 1903 թվականին ռուսերեն հրատարակված «Գյուղական չքավորությունը» բրոշյուրը առաջին անգամ հայերեն թարգմանվել և տպագրվել է Ժնևում, 1904 թվականին, և փոխադրվել Անդրկովկաս։ Մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատումը Վ. Ի. Լենինի երկերից 46 անուն թարգմանվել և տարածվել է հայ աշխատավորության շրջանում։ Իսկ 1920 թվականին՝ Հայաստանում Սովետական իշխանության հաղթանակից հետո Նրա 15 աշխատություններ հայերեն տպագրվել են 20 հազար օրինակ ընդհանուր տիրաժով։

1921—1961 թվականների ընթացքում հայերեն հրատարակվել են Վ. Ի. Լենինի 262 անուն աշխատություններ, որոնց ընդհանուր տիրաժը կազմում է 1 միլիոն 682 հազար օրինակ։

Հայ աշխատավորներն իրենց տրամադրության տակ ունեն Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության հիմնադրի Երկերի չորրորդ հրատարակության 37 հատորները՝ 205 հազար օրինակով, իսկ առանձին աշխատություններ հայերեն լույս են տեսել բազմաթիվ անգամ մեծ տիրաժներով։

Օրինակ. Երիտասարդական միության խնդիրների մասին 4 անգամ 40 հազ. տիրաժով

Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն
    ստադիա . . . . . . 5 անգամ 41 » »
1905 թվի ռևոլյուցիայի մասին . . . 4 » 27 » »
Մեծ նախաձեռնություն . . . . . 4 » 35 » »
«Ձախության» մանկական հիվանդությունը կո-
    մունիզմի մեջ . . . . . 4 » 26 » »

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Պարենհարկի մասին | 4 | » | 16 | » | » |
| Պետություն և ռևոլյուցիա | 6 | » | 45 | » | » |
| Պրոլետարական ռևոլյուցիան և ռենեգատ Կաուցկին | 4 | » | 26 | » | » |
| Ի՞նչ անել | 4 | » | 30 | » | » |
| Սովետական իշխանության հերթական խնդիրները | 4 | » | 26 | » | » |
| Քննադատական դիտողություններ ազգային հարցի մասին | 3 | » | 24 | » | » |
| Սոցիալիզմը և կրոնը | 3 | » | 22 | » | » |

Միայն վերջին երկու տարում (1960—61 թվականներին) հայերեն հրատարակվել են «Ադրբեջանի, Վրաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին», «Պրոֆմիությունների դերի ու խնդիրների մասին նոր տնտեսական քաղաքականության պայմաններում», «Պրոլետարական ռևոլյուցիայի ռազմական ծրագիրը», «Ընդդեմ ռևիզիոնիզմի հանուն մարքսիզմի պաշտպանության», «Սոցիալիզմը և պատերազմը», «Նոր տնտեսական քաղաքականությունը և քաղլուսավորների խնդիրները», «Մարքսիզմի երեք աղբյուրներն ու երեք բաղկացուցիչ մասերը», «Կոոպերացիայի մասին» աշխատությունները՝ 75 հազար ընդհանուր տիրաժով: Այս տարի հայերեն հրատարակվելու են Վ. Ի. Լենինի Երկերի 38 և 39 հատորները և եռհատորյակի առաջին հատորը:

Վ. Ի. Լենինի մասին՝ 1960—1961 թթ. հայերեն լեզվով հրատարակվել են 14 անուն պատմվածքներ և հիշողություններ՝ 99 հազար ընդհանուր տիրաժով, ինչպես, օրինակ՝ «Աշխատավորների նամակները Վ. Ի. Լենինին 1917—1924 թթ.» ժողովածուն, Մ. Գորկու «Վ. Ի. Լենին» հիշողությունները, Ի. Լալայանցի «1893—1900 թվականների ընթացքում Վ. Ի. Լենինի հետ ունեցած հանդիպումների մասին», Ա. Լունաչարսկու «Պատմվածքներ Լենինի մասին», Ա. Կոլոնտայի «Հուշեր Իլյիչի մասին», Ալ. Մյասնիկյանի «Իմ հանդիպումները ընկեր Լենինի հետ», Ա. Մռավյանի «Ընկեր Լենինը աուդիտորիայից—Լենինի մոտ», Շ. Մանուչարյանցի «Աշխատանքը Վլադիմիր Իլյիչի գրադարանում», Ցոտիևայի «Լենինի կյանքից» հիշողությունները: Առանձին հրատարակվել են Վ. Ի. Լենինի ընդարձակ և համառոտ կենսագրությունները: Այդ նույն ժամանակաշրջանում Վ. Ի. Լենինի աշխատությունների մասին հայերեն լեզվով հրատարակվել են 13 անուն գիրք 26 500 օրինակ ընդհանուր տիրաժով:

Հայ աշխատավորները՝ բանվորն ու կոլտնտեսականը, պարտիական, սովետական աշխատողն ու գիտնականը Վ. Ի. Լենինի երկերը կարդում են ինչպես տանը, այնպես էլ ռեսպուբլիկայի 2600 գրադարաններում:

Վ. ԴԱՎԹՅԱՆ

# ՊՐԱՎԴԱՅԻ 50 ՏԱՐԻՆ

## ԱՐԵՎԱԾԱԳԻՑ ԱՌԱՋ

Գ. ՀԱՅՐՅԱՆ

Մոսկվայի Բելոռուսական կայարանից մի փոքր այն կողմ սկսվում է կանաչազարդ ու լայնահուն Լենինգրադյան պողոտան: Մեծ գետի մեջ թափվող վտակների նման աջ ու ահյակ կողմերից գալիս ու հատվում են այստեղ բազմաթիվ փողոցներ: Նրանցից մեկը կրում է «Պրավդա» նվիրական անունը: Հենց այդ փողոցի վրա էլ գտնվում է «Պրավդա» թերթի խմբագրությունը՝ իր տպարանով:




Սովետական առաջին տասնամյակներում կառուցված այս շենքը չի գտնվում Մոսկվայի անմիջական կենտրոնում: Բայց նա մի խական կենտրոն է մեր երկրի ու աշխարհի զանազան կողմերում ապրող միլիոնավոր մարդկանց համար:

Այստեղ վաղ առավոտվանից մինչ ուշ գիշեր չի դադարում աշխատանքային եռուզեռը: Անդադար աղմկում են հեռագրական ու հեռախոսային ապարատները: Թերթի հատուկ և սեփական թղթակիցները զանազան կետերից շտապում են հաղորդել իրենց տեսածն ու լսածը, կյանքի բազմապիսի երևույթների մեջ ընտրելով բնորոշն ու հետաքրքիրը: Խմբագրության բաժիններում այդ նյութերը կարգի են բերվում, համապատասխան շտկումների ենթարկվում, հղկվում և ուղարկվում տպարան:

Եվ այսպես, պատրաստվում, ապա լույս է տեսնում «Պրավդայի» հերթական համարը: Նրան սպասում են միլիոնավոր ընթերցողներ, սպասում են այնպես, ինչպես մայրը հեռուներից տուն դարձող զավակին, բույսը՝ արևի շողին:

«Պրավդան» լույս է տեսնում արևածագից առաջ, լցնում մարդկանց սրտերն իր կենարար ջերմությամբ ու լուսավորում նրանց առաջընթացի ճանապարհը:

«Պրավդան» աշխարհի ամենաազդեցիկ ու ամենահեղինակավոր թերթն է: Նա աշխատավորների սրտակից ընկերն է և իմաստուն խորհրդատուն: Այժմ բոլորի կողմից ջերմորեն սիրված այդ թերթը հիսուն տարեկան է:

Հիսուն տարին մարդկության բազմադարյան պատմության համար, անշուշտ, երկար ժամանակ չէ: Բայց մենք գիտենք, որ ժամանակները տարբեր են լինում իրենց նշանակությամբ: Հիրավի, ինչե՜ր միայն չտեսավ աշխարհն այս վերջին հիսնամյակում: Դա մի ժամանակամիջոց էր, երբ, բանաստեղծի խոսքերով ասած, թափվեցին թագերն հնօրյա, և գահերը եղան կործան, երբ հին աշխարհի փլատակների վրա մենք կառուցեցինք մեր նոր աշխարհը և փառքը նրա հասցրինք տիեզերական հեռուները...

***

«Պրավդայի» պատմությունը սերտորեն կապված է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի՝ գործունեության հետ։ Ահա թե ինչու խոսել «Պրավդայի» մասին, այդ նախ և առաջ նշանակում է պատմել, թե ինչպիսի մեծագործություններ է կատարել մեր պարտիան անցած հիսնամյակում։

«Պրավդայի» երևան գալը պատահական չէր։ Նրա ծնունդը նախապատրաստված էր բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարի օբյեկտիվ ընթացքով։ Մի պահ ետ նայենք և վերհիշենք անցյալը։

...Հայտնի է, որ ռուսական առաջին ռևոլյուցիայի պարտությանը հաջորդեցին ռեակցիայի դաժան տարիները։ Ցարական կառավարությունը արյունոտ դատաստան տեսնելով ռևոլյուցիայի մասնակիցների հետ, կարծում էր, թե ամեն ինչ վերջացավ, և կյանքը վերստին իր նախկին ընթացքի մեջ մտավ։ Ձո՜ւր հույսեր։

Մեր ժամանակի մտածողներից մեկը նկատել է, որ մարդուն կարելի է տանջել, կարելի է սպանել, բայց հաղթել նրան անկարելի է։ Ցարական իշխանությունը զենքի ուժով ճնշեց ռևոլյուցիան, անմեղ զոհերի արյունով ներկվեցին փողոցները, հերոսների մի մասը բանտ, մյուսը՝ աքսոր ուղարկվեց։ Սակայն մասսաների ազատաբաղձ հոգին մնաց անընկճելի ու անմահ։ Կրակն ավելի խորն էր անթեղված և պատրաստ էր բոցավառվելու նոր ուժով, երբ գար ժամանակը։

Եվ ժամանակն արագորեն մոտենում էր։

Այդ բանը լավ տեսնում և հասկանում էր բոլշևիկների պարտիան, որն անցնելով ռեակցիայի տարիների դաժան փորձություններով, Պրագայի կոնֆերանսի նախօրյակին համարձակորեն հայտարարում էր. «Անվնաս են մնացել ոչ միայն ռուսաստանյան ս.-դ.-ի դրոշը, նրա ծրագիրը, նրա ռևոլյուցիոն պատգամները, անվնաս է մնացել նրա կազմակերպությունը, որը կարող էր խախտել ու թուլացնել, բայց չէր կարող հիմնովին կործանել և ոչ մի հալածանք» (ՍՄԿՊ-ն բանաձևերում, առաջին մաս, էջ 330)։ Այո, մեր պարտիան ոչ միայն չէր կործանվել հալածանքից, այլև վռնդելով իր շարքերից մենշևիկներին, դարձել էր առավել միաձույլ ու անպարտելի։

Ռևոլյուցիոն պայքարի նոր վերելքի շրջանը նոր խնդիրներ էր դնում պարտիայի առաջ։ Հարկավոր էր ամեն կերպ ամրապնդել պարտիայի կապը մասսաների հետ, բարելավել վերջիններիս ռևոլյուցիոն դաստիարակության ուղղությամբ տարվող աշխատանքը։ Այդ խնդիրների լուծման կարևորագույն լծակներից էին լեգալ մամուլը և պառլամենտական ամբիոնը։

Հատկապես Լենայի նշանավոր դեպքերից հետո կենսական պահանջ էր դարձել բանվորական օրաթերթի հրատարակման հարցը։ Պատահական չէր, որ այդպիսի թերթ ստեղծելու վերաբերյալ պարտիայի կոչը լայն արձագանք գտավ աշխատավորական ամենալայն խավերի շրջանում։ Եվ ահա 1912 թվականի մայիսի 5-ին լույս տեսավ «Պրավդա» թերթի առաջին համարը։

Վ. Ի. Լենինը նույն թվականի հուլիսին գրած «Կիսամյա աշխատանքի արդյունքները» նշանավոր հոդվածում ասում էր. «Բանվորական օրաթերթ հիմնելով, Պետերբուրգի բանվորները, խոշոր, առանց չափազանցության կարելի է ասել, պատմական գործ կատարեցին» (հ. 18, էջ 227)։

«Պրավդան» նոր տիպի թերթ էր, որի գործունեությունը տոգորված էր լենինյան գաղափարներով։ Այդ թերթին ակտիվորեն աշխատակցում էին պար-



տիայի առաջնորդ և ուսուցիչ Վ. Ի. Լենինը, նրա զինակիցներն ու աշակերտները, գրողներ Մաքսիմ Գորկին, Դեմյան Բեդնին և ուրիշներ։ Պարտիայի ականավոր գործիչների և հրապարակախոսների ելույթների կողքին թերթը լայն տեղ էր հատկացնում բանվորական թղթակիցներին։

Ինչի՞ մասին էր գրում «Պրավդան»։

Պետք է ասել, որ բավականաչափ լայն էր թերթի հետաքրքրությունների շրջանակը, բայց գլխավոր թեման, որը երբեք չէր իջնում նրա էջերից՝ բանվոր դասակարգի կյանքն էր։ Ցարական միապետության ամենատարբեր անկյուններից ստացվող նյութերում խոսվում էր աշխատավոր մասսաների ծանր վիճակի, շահագործող դասակարգերի կամայականությունների մասին։ «Պրավդան» իր այդ նյութերի մեջ կոնկրետ փաստերով մերկացնելով տիրող կարգերի հակաժողովրդական էությունը, կոչ էր անում բոլոր աշխատավորներին համախմբվել մարքսիզմի անպարտելի դրոշի ներքո և հաղթական պայքար մղել այդ կարգերի տապալման համար։

«Պրավդան» սիստեմատիկաբար տեղեկություններ էր հաղորդում օր-օրի վրա աճող գործադուլային շարժման վերաբերյալ։ Բավական է ասել, որ երկու տարվա ընթացքում թերթին հաջողվեց տպագրել մոտ 30 հազար բանվորական թղթակցություններ, որոնցից 10 հազարը գործադուլների մասին։

Թերթի տեսադաշտից դուրս չէր մնում և գյուղական կյանքը։ Վ. Ի. Լենինի՝ այդ թեմայով գրած մի շարք փայլուն հոդվածներում, աշխատավորների գրած փաստալից նամակներում ու թղթակցություններում սպառիչ պարզությամբ ցույց էր տրվում գյուղացիների անելանելի վիճակը,— մերկացվում կալվածատերերի ու կուլակների գործադրած շահագործման վայրագ ձևերը։

Օրավուր աճում էին «Պրավդայի» դերն ու հեղինակությունը մասսաների մեջ։ Եվ այդ հանգիստ չէր տալիս ցարական իշխանություններին։ Թերթի աշխատանքը ձախողելու համար նրանք դիմում էին ամեն տեսակ մեքենայությունների, բռնագրավում էին նրա տիրաժը, արգելում հրապարակումը։ Սակայն բանվորներին հաջողվում էր պահպանել իրենց սիրելի օրգանը, այն լույս ընծայելով այլ անուններով։

«Պրավդան» ընդհատակում աշխատող բոլշևիկյան պարտիայի լեգալ օրգանն էր, որն իր էջերից անվրեպ հարվածներ էր տեղում ցարիզմի վրա, մերկացնում, անարգանքի սյունին էր գամում մենշևիկներին և բանվորական շարժման մեջ բուրժուազիայի ամեն գույնի գործակալներին։ «Պրավդան» այնքան ազդեցիկ էր ու հեղինակավոր, որ բոլշևիկներին անվանում էին պրավդիստներ։

Իմպերիալիստական պատերազմի նախօրյակին ցարական ոստիկանությունն արգելեց «Պրավդայի» հրատարակումը։ Թերթը վերսկսեց իր աշխատանքը փետրվարյան ռևոլյուցիայից հետո միայն։ Սակայն այս անգամ էլ հեշտ կյանք չէր վիճակվել «Պրավդային»։ Ժամանակավոր կառավարությանն էլ հանգիստ չէր տալիս բոլշևիկյան թերթի հեղինակությունը։ Եվ դա հասկանալի էր։ Չէ որ Վ. Ի. Լենինը անձամբ էր ղեկավարում այդ թերթը, ուր տպագրվում էին նրա ծրագրային հոդվածները։

Երկրում սովետական կարգեր հաստատվելուց հետո «Պրավդայի» համար սկսվեց գործունեության նոր, առավել բեղմնավոր շրջան։ Այդ շրջանում էլ ավելի մեծացավ թերթի ազդեցության ոլորտը։ Չտեսնված չափով բարձրացավ նրա հեղինակությունը։

Ինչպես հոկտեմբերից առաջ, այնպես էլ նրանից հետո Վ. Ի. Լենինը ակտիվորեն աշխատակցում էր «Պրավդային», նրա էջերում զետեղելով նոր

կյանքի կառուցման կենսական խնդիրներին նվիրված իր բազմաթիվ հոդվածներն ու ճառերը։

«Պրավդային» մենք հանդիպում ենք ամեն տեղ.— նա մասնակցում է կոմունիստական առաջին շաբաթօրյակին, աներկյուղ նետվում քաղաքացիական կռվի հրդեհների մեջ, փառաբանում սովետական մարդկանց առաջին հաջողությունները մարտի դաշտում և խաղաղ շինարարության ասպարեզում, սգում մեծ Լենինի մահը ու կրկին շարունակում իր երթը պարտիայի ցույց տված ճանապարհով։

Անգնահատելի դեր է կատարել «Պրավդան» մեր կյանքի զարգացման հաջորդ էտապներում,— մասնավորապես երկրի ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման, աշխատավորների կուլտուրական մակարդակի համակողմանի բարձրացման ասպարեզում պարտիայի քաղաքականության անշեղ իրականացման համար մղված պայքարում։

«Պրավդան» բացառիկ եռանդ էր դրսևորում Հայրենական Մեծ պատերազմի տարիներին։ Նա և՛ թիկունքում էր, և՛ ռազմաճակատում. հասնում էր երկրի ամենահեռավոր անկյունները, մտնում գրոհի պատրաստվող զինվորի խրամատը, ամենուրեք գոտեպնդում մարդկանց, մղում դեպի հաղթանակ։

Մեծ են «Պրավդայի» ծառայությունները հետպատերազմյան շրջանում։ Այսօր նա ամբողջ եռանդով իր ազդեցիկ ու հեղինակավոր խոսքի միջոցով մասնակցում է նաև նոր խնդիրների իրականացմանը, որոնք դրված են կոմունիստական հասարակարգ կառուցող սովետական ժողովրդի առջև։

«Պրավդայի» պատմությունն անխզելիորեն կապված է մեր պարտիական մամուլի լենինյան փառապանծ տրադիցիաների հետ։ «Պրավդան» իրավացիորեն համարվում է թերթերի թերթը, իսկ նրա լույսընծայման օրը՝ մայիսի 5-ը, դարձել է Սովետական մամուլի օրը։ Սովետական մամուլը ստեղծվել է մեր պարտիայի կամքով և հանդիսանում է նրա հարազատ զավակը՝ կրելով իր մեջ նրա ամենալավագույն հատկությունները։

Մեր մամուլը սովետական ժողովրդի կենսական շահերի համար, կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում հանդես է բերում բարձր գաղափարայնություն, սկզբունքայնություն, ճշմարտացիություն և անհաշտություն թշնամական գաղափարախոսության ու նրա բոլոր դրսևորումների հանդեպ։ Այսպիսի հատկություններով, անշուշտ, չի կարող օժտված լինել բուրժուական մամուլը։ Եվ դա հասկանալի է։ Բուրժուական թերթերն ու ամսագրերը, արտահայտելով իրենց տերերի կամքն ու ցանկությունը, փորձում են ամեն կերպ սրբագործել կապիտալիզմը, համարելով այն «ամենաարդար» հասարակարգն աշխարհում։

Սովետական մամուլն իր գոյության առաջին իսկ օրից անողոքաբար մերկացրել ու մերկացնում է բուրժուական ծախու գրչակների սուտն ու կեղծիքը և ժողովրդական լայն մասսաներին ասում ճշմարտությունը։ Եվ մասսաները սեփական փորձով համոզվում են, որ շահագործողական հասարակության մեջ արդարության, հավասարության ու ազատության մասին խոսելն անմտություն է։ Ի՞նչ հավասարություն կարող է լինել ստրուկի և տիրոջ միջև, երբ առաջինն աշխատում է օրնիբուն, նյութական բարիքներ արտադրում, բայց ինքը մնում է կիսաքաղց և ընչազուրկ, իսկ երկրորդը՝ յուրացնում է նրա ստեղծածը, հարստանում, ապրում վայելքների մեջ։ Կարո՞ղ են արդյոք հավասար լինել Ռոկֆելլերը, որի հարստությունն այժմ հասնում է մինչև 70 միլիարդ դոլարի,— և նրա ձեռնարկություններից մեկում աշխատող բանվորը, որը սեփական քրտինքով օրական հազիվ 10 դոլար է վաստակում, իհարկե, ոչ։



Սովետական մամուլի ուժն աշխատավորական լայն մասսաների հետ նրա ունեցած սերտ կապի մեջ է։ Մեր թերթերի և ամսագրերի աշխատանքին ամենաակտիվ մասնակցություն են ցույց տալիս բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգենցիայի ներկայացուցիչները։ Ուրիշ խոսքով մեր մամուլն ստեղծվում է ոչ թե մի խումբ հաստիքային աշխատողների, այլ ամենալայն մասսաների անմիջական մասնակցությամբ։ Այդ իմաստով սովետական մամուլն իր գոյության առաջին իսկ օրից ժողովրդական ամբիոնի դեր է կատարում։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը բացառիկ ուշադրություն են դարձնում մամուլի զարգացմանը, նրա աշխատանքի մեթոդների ու ձևերի կատարելագործմանը։ ՍՍՌՄ-ում տարեցտարի ավելանում է թերթերի ու ամսագրերի թիվը, բազմապատկվում նրանց տիրաժը։ Կգա ժամանակ,— ասում էր Վ. Ի. Լենինը սրանից կես դար առաջ, «...երբ ամբողջ Ռուսաստանը կծածկվի բանվորական կազմակերպությունների և բանվորական թերթերի ցանցով» (հ. 18, էջ 379)։

Մեծ առաջնորդի երազանքն այսօր իրականություն է դարձել։ Բավական է ասել, որ միայն վերջին հինգ տարում երկրում լույս տեսնող թերթերի միանվագ տիրաժն ավելացել է 20 միլիոն, ամսագրերինը՝ 417 միլիոն օրինակով։ Գրքի հրատարակման քանակով մեր Հայրենիքը գրավում է աշխարհում առաջին տեղը։

Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության անշեղ կիրառման շնորհիվ մեծ ուշադրություն է դարձվում մամուլի զարգացմանը նաև ազգային ռեսպուբլիկաներում։ Մենք հպարտությամբ կարող ենք նշել, որ այսօր մեր ռեսպուբլիկայում լույս տեսնող բոլոր թերթերն ու ամսագրերը, առանց բացառության, ստեղծվել են սովետական տարիներին։ Ընդ որում մայրենի լեզվով թերթեր են հրատարակվում ոչ միայն Երևանում՝ այլև ռեսպուբլիկայի մյուս քաղաքներում, շրջանային կենտրոններում և մի շարք կոլտնտեսություններում։ ՀԿՊ Կենտկոմի օրգան «Սովետական Հայաստան» թերթն ամեն օր լույս է տեսնում մոտ 120 հազար օրինակ տիրաժով։ Այդ ավելի շատ է, քան արտասահմանում հրատարակվող բոլոր հայատառ թերթերի տիրաժը միասին վերցրած։ Եթե թղթի արդյունաբերությունն աշխատեր այնպես, ինչպես մեր արդյունաբերության առաջավոր ճյուղերը, կարելի էր կրկնապատկել ոչ միայն «Սովետական Հայաստան», այլև «Ավանգարդ», «Պիոներ կանչ» և մի շարք այլ թերթերի տիրաժները։

Սրանք պարտիայի կամքով մեր երկրում իրականացված կուլտուրական ռևոլյուցիայի պտուղներն են, որոնք միաժամանակ ցույց են տալիս, թե զարգացման ինչպիսի բարձր մակարդակի է հասել հայ ժողովուրդը սովետական տարիներին։

Մենք գոհունակությամբ պետք է նշենք, որ վերջին տարիներին, հատկապես Ստալինի անձի պաշտամունքի պսակազերծումից հետո, ոչ միայն քանակական, այլև որակական լուրջ փոփոխություններ են կատարվել մեր մամուլում։ Գաղտնիք չէ, որ անձի պաշտամունքի շրջանում մեր թերթերն ու ամսագրերը որոշակիորեն աղքատացել էին թե ձևով և թե բովանդակությամբ։

Ստալինը առաջին դեմքն էր նաև ժուռնալիստիկայի մարզում։ Նա համարվում էր ոչ միայն «Բրձոլայի», այլև... «Պրավդայի» հիմնադիրը։ Այդ դեռ ոչինչ, տարօրինակն այն է, որ բոլորը պարտավոր էին իրենց ոճը համարեցնել, այսպես կոչված՝ ստալին-

յան ոճին։ Իրականում դա նշանակում էր՝ զրկել մարդկանց ստեղծագործական անհատականությունից և նրանց ստիպել մտածել ու գրել մի մարդու պես։ Ահա թե ինչու մեր մամուլի էջերում ամուր բույն էր դրել տրաֆարետը, որից մի փոքր անգամ հեռանալը դիտվում էր որպես ճակատագրական սխալ։ Այս բոլորից հետո պատահական չէր, որ մեր թերթերից շատերը տարբերվում էին իրարից միայն վերնագրերով և... խմբագրերի ստորագրությամբ։

Անհատի պաշտամունքի պսակազերծումը հնարավորություն տվեց մեր մամուլի աշխատողներին վճռական պայքար հայտարարելու այդ վնասակար երևույթների դեմ։ Այժմ մենք կարող ենք ասել, որ մամուլում լենինյան տրադիցիաների վերականգնման ուղղությամբ հսկայական աշխատանք է կատարվել ոչ միայն «Պրավդայում», այլև մամուլի մյուս օրգաններում։ Շատ բնորոշ է նաև «Իզվեստիա» թերթի օրինակը։ Կար ժամանակ, որ այդ թերթը, առանց չափազանցության, երկրի անհետաքրքիր ու անգույն թերթերից մեկն էր, իսկ այժմ ընթերցողը սպասում է նրան սրտի տրոփյունով և կարդում այն մեծ հաճույքով։

Զգալիորեն փոխվել են նաև մեր ռեսպուբլիկայի թերթերն ու ամսագրերը, դարձել նկատելիորեն հետաքրքիր ու նպատակասլաց։ Սակայն, մեր կարծիքով, մամուլի աշխատանքը դեռ ավելի պիտի բարելավել ու կատարելագործել։ Եվ դա հասկանալի է։ Այժմ, երբ մեր երկիրը թևակոխել է կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, է՛լ ավելի է բարձրանում տպագիր խոսքի, առանձնապես պարբերական մամուլի նշանակությունը։

Պարտիան բարձր է գնահատում մամուլի աշխատողներին, համարելով նրանց իր հավատարիմ օգնականները կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։ Մամուլը մեր երկրում դարձել է ժողովրդի հոգևոր կուլտուրայի անբաժան մասը, իսկ սովետական ժուռնալիստիկան՝ պարտիական-հասարակական գործունեության կարևորագույն բնագավառը։

ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումներում, պարտիայի նոր Ծրագրի մեջ, ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցումներում և ելույթներում նոր ուժով ընդգծված է մամուլի կարևոր դերը մեր Հայրենիքի առջև ծառացած մեծ խնդիրների կատարման, մասսաներին կոմունիստական ոգով դաստիարակելու գործում։

«Պրավդայի» գործունեությունը, ինչպես անցած հիսուն տարիների ընթացքում, այնպես էլ այսօր, օրինակ է ծառայում սովետական ամբողջ մամուլի համար։ «Պրավդան» ամեն օր իր էջերում նյութեր է տպագրում յոթնամյա պլանի կատարման ընթացքի, մեր երկրի ու ամբողջ աշխարհի կյանքում կատարվող կարևոր իրադարձությունների վերաբերյալ։ Սակայն նա իր գործունեությունը չի սահմանափակում ինֆորմացիոն բնույթ կրող հաղորդումներով, կամ կյանքի փաստերն ու երևույթները արձանագրելով։

«Պրավդայի» և նրա հետ միասին ամբողջ սովետական մամուլի բնորոշ կողմերից մեկն էլ այն է, որ նա ակտիվորեն միջամտում է կյանքին, ներգործում նրա ընթացքի վրա։ Այդ նա անում է ոչ միայն այն ժամանակ, երբ քննադատության կրակի տակ է առնում մեր աշխատանքներում տեղ գտնող թերությունները, այլև, երբ ընդհանրացնում է առաջավորների փորձը։

«Պրավդան» ժանրային բազմազանության հրաշալի օրինակ է տալիս։ Բաց արեք թերթի հերթական համարները և պաշտոնական հաղորդումների կողքին դուք կտեսնեք Ի. Էրենբուրգի, Բ. Պոլևոյի բարձր մակարդակով գրված հրապարակախոսական հոդվածները, Դ. Զասլավսկու և Ս. Նարինյանի սրամիտ ֆելիետոնները, Ուկրաինական ՍՍՌ-ի սեփական թղթակից Ա. Չերնիչենկոյի օրվա հրատապ թեմաներով գրված թղթակցությունները, Վ. Մաևսկու միջազգային տեսությունները և այլն, և այլն։ Վերջին շրջանում «Պրավդան» մեծ տեղ է հատկացնում «Մեր օրերի հերոսների» աշխատանքային սխրագործությունների վերարտադրմանը։ Այս թեմայով գրված բարձրորակ ակնարկներով հանդես են գալիս երկրի լավագույն գրողներն ու ժուռնալիստները։ Բոլորովին վերջերս այդ ակնարկների մի զգալի մասը վերահրատարակվեց առանձին գրքով։

«Պրավդայի» էջերում իրենց նոր ստեղծագործություններից հատվածներ են տպագրում Մ. Շոլոխովն ու Ա. Տվարդովսկին, ազգային գրականությունների ականավոր ներկայացուցիչները։ Հայ գրողներից պարբերաբար հանդես են գալիս Ն. Զարյանն ու Հր. Քոչարը, Ս. Խանզադյանն ու Գ. Սևունցը, Ս. Կապուտիկյանն ու Հ. Սահյանը, Ա. Գրաշին, Գ. Էմինը և ուրիշներ։

«Պրավդայի» օրինակը ոգևորության անսպառ աղբյուր է սոցիալիստական երկրների մամուլի, ինչպես նաև աշխարհում լույս տեսնող դեմոկրատական թերթերի համար։ Այդ թերթերից շատերը «Պրավդայի» կոլեկտիվ թղթակիցներն են, հաճախ էջեր են փոխանակում նրա հետ և այլն։

ՍՄԿՊ օրգանի էջերում հանդես գալը մեծ պատիվ են համարում եղբայրական պարտիաների ղեկավարները։ Նրանք «Պրավդայի» էջերում պատմում են իրենց աշխատանքային, միջազգային կյանքին վերաբերող ակտուալ հարցերի մասին։ Թերթին պարբերաբար աշխատակցում են՝ Մ. Թորեզը, Վ. Գոմուլկան, Պ. Տոլյատին և ուրիշներ։

«Պրավդան» լենինյան պարտիականության դիրքերից անհաշտ պայքար է մղում բուրժուական գաղափարախոսության դեմ, հետևողականորեն մերկացնում է ռևիզիոնիզմը, դոգմատիզմն ու սեկտանտությունը։ Թերթն իր ամենօրյա գործունեությամբ նպաստում է սոցիալիստական երկրների ժողովուրդների կոմունիստական ու բանվորական պարտիաների եղբայրական կապերի ամրապնդման գործին։ «Պրավդան» ամեն օր, համարից համար ջախջախիչ հարվածներ է հասցնում բոլոր նրանց, ովքեր ուզում են ժողովուրդների խաղաղ կյանքը նորից դնել վտանգի տակ, ովքեր բացահայտ թե թաքնված ձգտում են բոցավառել աշխարհավեր պատերազմի հրդեհը։

Եվ այսպես, չկա մեր երկրի աշխատավորների և ամբողջ առաջադեմ մարդկության կյանքին վերաբերող մի հարց, որը չհետաքրքրի «Պրավդային», չգտնի նրա զբաղմունքի ու մտահոգության առարկան։ «Պրավդան» ամուր կերպով մտել է միլիոնների կենցաղի մեջ և դարձել նրանց հոգևոր սննդի անսպառ աղբյուրը։ Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, նոր կյանքի գարնան այդ առաջին ծիծեռնակը հիսուն տարի շարունակ երկինք է բարձրանում արևածագից առաջ և մեր կյանքը լցնում երգով ու խնդությամբ։

---

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՆԱՄԱԿՆԵՐԸ «ՊՐԱՎԴԱՅԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ

Մ. ՀԱԿՈԲՅԱՆ

Ռևոլյուցիայի մեծ հանճար Վ. Ի. Լենինը «Պրավդայի» մշտական աշխա-
տակիցն ու գաղափարական ղեկավար-խմբագիրն էր։ Նա թերթը դարձրել էր
ռևոլյուցիոն շարժումը ղեկավարելու լավագույն միջոց։ Լենինը «Պրավդային»
գրում էր համարյա ամեն օր, հանդես էր գալիս ռևոլյուցիոն նոր վերելքի հետ
կապված բոլոր մեծ ու փոքր թվացող հարցերի առթիվ։

Լենինյան հոդվածները ուղեցույց աստղ էին «Պրավդայի» համար։ Բայց
Լենինը «Պրավդային» ղեկավարում և ուղղություն էր տալիս ոչ միայն իր հոդ-
վածներով և խմբագրության աշխատակիցների հետ անմիջական կենդանի
կապի միջոցով, այլև նամակներով։ 1912—1914 թվականներին Լենինը մշտա-
կան նամակագրություն ուներ Ռուսաստանի բոլշևիկյան կազմակերպություն-
ների, ռևոլյուցիոն գործիչների, լրագրերի ու օրգանների հետ։ Լենինի նամակ-
ների շարքում առանձնահատուկ տեղ են գրավում «Պրավդայի» խմբագրու-
թյանը հասցեագրվածները։

Այդ նամակները տոգորված են մեծագույն հոգատարությամբ՝ թերթի ճիշտ
գրվածքի, գաղափարական մակարդակի նկատմամբ։ Նրանցում պարզությամբ
ու որոշակիությամբ ձևակերպված են բոլշևիկյան մամուլի հիմնական սկզբ-
բունքները, պրոլետարական թերթին ներկայացվող պարտիական պահանջնե-
րը։ Այդ նամակներում ղեկավար ցուցումներ կան բոլշևիկյան մամուլի սկզբ-
բունքայնության, պարտիականության, մասսայականության մասին։ Լենինն
իր նամակներում գործնական խորհուրդներ է տալիս, նշում թերթի նվաճում-
ները, շոշափում հեղինակային ակտիվի հետ տարվող աշխատանքի հարցերը,
հոդվածները մշակելու, թերթը լույս ընծայելու, տարածելու, ձևավորելու, նրա
համար տեխնիկական և նյութական բազա ստեղծելու հարցերը։

***

Լենինը «Պրավդայից» նախ և առաջ պահանջում էր մինչև վերջ մերկաց-
նել «պարտիան քայքայող» լիկվիդատորներին։ Պայքարել լիկվիդատորության
դեմ, նշում էր Լենինը, նշանակում է պայքարել պարտիականության համար։
Թւստի անհրաժեշտ է ճիշտ գիծ վարել, չկոծկել լիկվիդատորների և բոլշևիկ-
ների միջև եղած հակասությունները, չշրջանցել «հիվանդոտ հարցերը»։

«Սոցիալիստական օրգանը,— սովորեցնում է Լենինը 1912 թվականի հու-
լիսի 24-ին գրած նամակում,— պետք է բանավեճ մղի. մեր ժամանակը հու-
սահատ տարընթացության ժամանակ է և առանց բանավեճի կառավարվել չի
կարելի (Երկեր, հատ. 35, էջ 25)։ «Ուղղությունը հարկավոր է ցայտուն ար-
տահայտել,— գրում է նա մի այլ նամակում։— Հարկավոր է ավելի բանավի-
ճող լինել, հարկավոր է, եթե կուզեք, շատ տաքարյունություն, չի կարելի շըր-
ջանցել «հիվանդոտ» հարցերը։ Օրինակ, թեկուզ այդ նույն լիկվիդատորու-
թյունը... Ձեր որոշումը խույս տալ լիկվիդատոր բառից (ինչպես դուք եք գրում)
մեզ թվում է խորապես սխալական ու ուղղակի անիրագործելի, եթե չեք ու-
զում մի կողմ քաշվել ամենակենդանի վեճերից և գիրքը կիսով չափ լիկվի-
դատորներին հանձնել... (Լենին, Երկեր, III հրատ., հ. 16, էջ 698, ռուսերեն)։

Խուսափելու, սուր անկյունները բթացնելու փոխարեն Լենինն առաջարկում
էր մարտնչել, պայքարել, հարձակվել. առաջադեմ դեմոկրատիայի օրգանը
պետք է լինի մարտական։ Բանավիճելու, «հիվանդոտ հարցերը» քննարկելու,
հակառակորդի դեմ կրքոտ պայքար մղելու օրինակ էր տալիս ինքը Լենինը՝
«Պրավդային» ուղարկելով լիկվիդատորներին մերկացնող հոդվածներ։ Առան-
ձին դեպքերում Վլադիմիր Իլյիչը խմբագրությունից պահանջում էր լիկվիդա-
տորների դեմ ուղղված իր հոդվածում կատարել սոսկ աննշան, մինիմալ գրա-
քննական փոփոխություններ, իսկ հակառակ դեպքում հոդվածը վերադարձ-
նել։

1912 թվականի հուլիսի վերջին Լենինը «Պրավդային» է ուղարկել «Ընտ-
րական պլատֆորմի մասին» հոդվածը։ Ահա թե իր նամակներից մեկում ինչ է
գրում Լենինը խմբագրությանը. «Հոդվածը փոփոխելու վերաբերյալ ես պետք
է հատուկ պայմաններ դնեմ (սովորաբար ես այդպիսիք չեմ դնում, ինչպես
Դուք գիտեք, լիովին հույս դնելով ընկերական կոլեգիալ, այլ ոչ թե պատրվա-
կամոլական հարաբերությունների վրա)։ Այստեղ ինձ համար այդ հատուկ
պայմաններն անհրաժեշտ են, քանի որ հարցը հսկայական կարևորություն և
արմատական սկզբունքայնություն ունեցող հարց է» (Երկեր, հատ. 35, էջ 28)։
Ապա Լենինը շարադրում է իր «հատուկ պայմանները»։ Դրանցից երևում է,
որ Լենինը կտրականապես դեմ է հոդվածում որևէ նշանակալից փոփոխու-
թյուն կատարելուն։

Բայց «Պրավդայի» առանձին աշխատողներ համառում էին։ Նրանք շարու-
նակում էին խուսափել լիկվիդատորների դեմ սուր պայքար մղելուց։ Լենինը
շարունակում էր համբերատարությամբ բացատրել, սովորեցնել նրանց։ «Եթե
հոդվածը «անհրաժեշտ է այսպես թե այնպես տպագրել»..., ապա ինչպե՞ս
հասկանալ Վիտիմսկու (Մ. Ս. Օլմինսկու— Մ. Հ.) «վնասում է ցասկոտ տոնը»։
Այդ ո՞ր պահից է, որ ցասկոտ տոնը այն բանի դեմ, ինչ վատ է, վնասակար է,
սխալ է (չէ՞ որ խմբագրությունը «սկզբունքորեն» համաձայն է),—վնասում է
ամենօրյա թերթին։ Ընդհակառակը, կոլեգաներ, ասված վկա, ընդհակա-
ռակը։ Առանց «ցասման» գրել վնասակարի մասին, նշանակում է ձանձրալի գրել»
(Նույն տեղը, էջ 32)։

Այն ժամանակ, երբ կադետական «Ռեչ» թերթը բացահայտ հարձակում
գործեց «Պրավդայի» և «Զվեզդայի» վրա, Լենինն առաջարկեց ուժգնորեն սեղ-
մել «Ռեչ»-ին, հանդես գալ նրա դեմ, քանի որ «լռելը հանցագործություն
կլինի»։

Շարունակ հետևելով «Պրավդայի» աշխատանքին՝ Լենինը ժամանակին
ուղղում էր նրա թույլ տված սխալները, վճռական բողոք հայտնում այն բանի

դեմ, որ խմբագրությունը որոշ հարցերի առթիվ չի խորհրդակցում իր հետ, խախտում է իր՝ որպես թերթի աշխատակցի իրավունքները։ Նա «Պրավդայի» աշխատողներից պահանջում էր անխախտ պահել կոլեգիալության սկզբունքը։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ուղղակի միջամտությունը, Լենինի համառ պահանջները, նրա կոնկրետ ղեկավարությունն իրենց արդյունքները տվին, խմբագրության աշխատանքներում որոշակի տեղաշարժ կատարվեց։ Այն վերակառուցվեց, սկսեց կայուն գիծ վարել հակառակորդների դեմ։ Դա չվրիպեց Լենինի ուշադրությունից։ Իր նամակներում նշելով այդ, նա շնորհավորում, ողջունում է խմբագրության նվաճումները, հետագա հաջողություններ ցանկանում։

Իր մի շարք նամակներում Լենինը անդրադարձել է «Պրավդայի» առանձին նյութերին, գնահատել դրանք, բոլշևիկյան մամուլի համար սկզբունքային նշանակություն ունեցող ցուցումներ տվել, առանձին փաստերի հիման վրա խոշոր ընդհանրացումներ կատարել։

«Պրավդայի» 1912 թվականի սեպտեմբերի 8-ի համարում տպագրվել է Մ. Ս. Օլմինսկու «Կուլտուրական մարդիկ և անմաքուր խիղճ» վերնագրով հոդվածը։ Այդ «հրաշալի հաջող» հոդվածի համար անմիջապես հեղինակին շնորհավորելով՝ Լենինը ընդգծում է, որ «չափազանց տեղին է վերցված թեման և մշակված է համառոտ, բայց հիանալիորեն պարզ»։ Նա ցուցում է տալիս խմբագրությանը, որ ընդհանրապես լավ կլինի ժամանակ առ ժամանակ հիշել, քաղվածքներ բերել և «Պրավդայի» էջերում մեկնաբանել Շչեդրինին և «հին» նարոդնիկական դեմոկրատիայի մյուս գրողներին։ «Պրավդայի» ընթերցողների համար — 25000-ի համար կլիներ տեղին, հետաքրքրական, և բանվորական դեմոկրատիայի այժմյան հարցերի լուսաբանումը կստացվեր մի այլ կողմից, մի այլ ձայնով (Նույն տեղ, էջ 43)։

«Պրավդային» ուղղված շատ նամակներում Վ. Ի. Լենինը չորրորդ Պետական դումայի ընտրությունների կապակցությամբ անդրադարձել է թերթի խնդիրներին և տվյալ էտապից բխող ցուցումներ, խորհուրդներ տվել, քննարկել մի շարք կարևոր հարցեր, մատնանշել, որ անհրաժեշտ է գտնել կարևոր դեպքերը լուսաբանելու ձևեր ու մեթոդներ, ընթանալ իրադարձությունների առջևից, թերթը դարձնել հետաքրքրական։ Նա խմբագրության աշխատողներին հիշեցնում է, «որ թերթն այնպիսի բան չէ, որ ընթերցողը կարդում է, գրողը գրոտում։ Թերթը ինքը պետք է փնտրի, ժամանակին գտնի և իր ժամանակին զետեղի հարկավոր նյութը։ Թերթը պետք է որոնի և գտնի իրեն հարկավոր կապերը»։ Իսկ այնուհետև «...եթե դուք լռում եք, դուք ետ եք մնում։ Իսկ այն թերթը, որը ետ է մնում, կործանված է: Թերթը պետք է բոլորի առջևից գնա... Միապաղաղությունը և ուշացումը անհամատեղելի են լրագրային գործի հետ» (Նույն տեղ, էջ 26—27)։

Լենինը մեծ նշանակություն էր տալիս այն բանին, որ «Պրավդան» ժամանակին և լավ ձևով նշի կարևոր իրադարձությունները, օրացուցային նշանավոր տարեթվերը։ 1912 թվականի նոյեմբերի 26-ին գրած նամակում նա նշում է, որ ծայրահեղ վշտով է նա նկատել «Պրավդայի» կիրակնօրյա համարի երկու վրիպումները։ Դրանցից մեկը Բազելի կոնգրեսի մասին հոդված չտպագրելն է, իսկ մյուսն այդ կոնգրեսին ուղղված ողջույնը չզետեղելը։ Մարքսի մահվան 30 տարին լրանալու առթիվ Վ. Ի. Լենինը այդ տարեթվից դեռ շատ առաջ խմբագրությանը հիշեցնում է այդ մասին և նույնիսկ հոբելյանական



համարի պլան է առաջարկում՝ կոնկրետ նշելով, թե ինչ պետք է հրապարակել, ինչ նյութեր տեղավորել, թերթը ինչ ծավալով լույս ընծայել, ինչ գնով վաճառել։

Ցարական գրաքննության դաժան պայմաններում լեգալ թերթ լույս ընծայելու տեսակետից կարևոր են Լենինի մի շարք նամակներում բանվորական լեգալ թերթի անհրաժեշտ տոնը պահպանելու մասին արված դիտողությունները։ Ռեպրեսիաներից խուսափելու և թերթի գոյությունը չվտանգելու նպատակով հարկավոր էր մեղմել թերթի տոնը, երբեմն բթացնել սուր անկյունները, գրել եզոպոսյան լեզվով։ Հայտնի է, որ «Պրավդայի» աշխատանքը խափանելու, նրա համարները հաճախակի բռնագրավելու, նրան տուգանելու և ի վերջո այն փակելու համար ցարական կառավարությունը ոչ մի միջոցի առաջ կանգ չէր առնում։ «Պրավդա տրուդա»-ին գրած մի նամակի հավելվածում Լենինը զգուշացնում է. «Ինձ թվում է, որ դուք հսկայական սխալ եք անում, անգիտակցաբար լող տալով հոսանքի հետ և չփոխելով թերթի տոնը։ Ամեն ինչ այն է մատնանշում, որ հարկավոր է փոխել խրոնիկային մասի և՛ տոնը, և՛ բովանդակությունը: Պետք է հասնել լեգալության, գրաքննչության։ Կարելի է և պետք է հասնել դրան։ Այլապես դուք իզուր կկործանեք այն գործը, որին ձեռնամուխ եք եղել։ Լրջորեն կշռադատեցեք այդ» (Նույն տեղ, էջ 105)։

Լենինը չէր բավարարվում թերթի լեգալությունը պահպանելու, ռեպրեսիաներից խուսափելու մասին խորհուրդներ տալով։ Նա այդ ուղղությամբ պրակտիկ քայլեր է անում, ինքն օրինակ ցույց տալիս, թե ինչպես պետք է հոդվածներ գրել, որ ցարական գրաքննությունը անկարող լինի արգելել դրանք, իսկ բանվորները հասկանան տողամեջ ասվածները։

«Պրավդային» ուղղված նամակներում Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն է դարձրել թերթը կարող ուժով ամրապնդելու, նրա շուրջը հեղինակային լավագույն ուժեր համախմբելու հարցերին։ Լենինը պահանջում էր անողոք լինել անկարող աշխատողների նկատմամբ, խմբագրությունն ազատել այն մարդկանցից, ովքեր «ենթակա են դուրս նետման»։ Բոլշևիկյան թերթը,— սովորեցնում էր Լենինը,— պետք է ունենա արտախմբագրական լայն ակտիվ, ուշադիր լինի թղթակիցների նկատմամբ, ուշի ուշով ունկնդրի նրանց, պատասխան տա նրանց հուզող հարցերին։ «Հարկավոր է լայնորեն և խորությամբ մտնել մասսաների մեջ»— ահա այն գլխավոր խնդիրներից մեկը, որ դնում էր Լենինը «Պրավդայի» կոլեկտիվի առջև։ Լենինը ինքը ակտիվ մասնակցություն էր ունենում «Պրավդայի» շուրջը լայն ակտիվ համախմբելու, կարող ուժերին նրա աշխատանքներում ներգրավելու գործին։

Լենինի շատ նամակներ տոգորված են հեղինակային ակտիվի նկատմամբ մշտական հոգատարություն ցույց տալու մտքերով։ Նա խմբագրությունից պահանջում էր ուշադիր վերաբերվել հեղինակների նկատմամբ, ժամանակին պատասխանել նրանց նամակներին, ըստ արժանվույն գնահատել լավագույն աշխատակիցներին, խորհուրդ էր տալիս անհրաժեշտության դեպքում հեղինակներին կանխավճար տալ, երբեք չուշացնել հոնորարները։ Առանձին դեպքերում նա խմբագրությունից պահանջում էր անպայման գրել այս կամ այն հոդվածի ստացման մասին, իսկ եթե այն մերժվում է, «առանց հապաղելու վերադարձնել»։

Հեղինակային ակտիվի հետ ունենալիք վերաբերմունքի տեսակետից կարևոր նշանակություն ունի Վ. Ի. Լենինի 1913 թվականի մայիսի վերջին գրած

նամակը, ուր նա խոսում է «Պրավդայի» երկու աշխատակցի մասին: Պահանջելով աշխատակցի նկատմամբ զգայուն վերաբերմունք ցույց տալ, Լենինը ելնում էր այն բանից, թե տվյալ անձնավորությունն ինչ առավելություններ ունի բանվորական շարժման համար, տվյալ ժամանակաշրջանում ինչպիսի գործ է կատարում:

1912—1914 թվականներին «Պրավդային» գրած նամակներում Վլադիմիր Իլյիչը մեծ տեղ է հատկացրել, իր արտահայտությամբ ասած՝ «զուտ լրագրական», թերթը գործիմաց վարելու հարցերին: Մի ամբողջ շարք նամակներում նա զարգացնում է թերթերը տեխնիկապես ձևավորելու, լույս ընծայելու, ընթերցողների մեջ տարածելու, նրանց համակրանքը նվաճելու հարցերը: Ինչպես երևում է այդ նամակներից, Լենինի համար բոլորովին էլ միևնույնը չէր, թե ինչ տիրաժով է լույս տեսնում բոլշևիկյան լրագիրը, ինչ պարբերականություն ունի այն, ինչ թղթի վրա է տպագրվում, ինչ տառերով շարվում:

Լենինը շարունակ հոգ էր տանում թերթի տիրաժի ավելացման մասին: Նա տարբեր ժամանակներում խնդիր էր դնում թերթի տիրաժը հասցնել 50—60, 100 հազարի: Լենինն ամենայն ուշադրությամբ հետևում էր թերթի տեխնիկական ձևավորմանը, սրբագրությանը և այդ գործում տեսնում էր քաղաքականություն, գաղափարայնություն: Նրա խորհուրդն էր՝ թերթը ձևավորել պարզ ու գրագետ, տպագրել խնամքով ու առանց վրիպակների: Նրա նպատակն այն էր, որ բանվորն իր ցանկացած հոդվածը կարդա առանց ավելորդ լարվածության:

Ահա այսպիսի բացառիկ ուշադրությամբ էր ռևոլյուցիայի հանճարը հետևում, ուղղություն տալիս ու գլխավորում «Պրավդայի» գործունեությունը: Նրա նամակները մի հիանալի օրինակ են այն բանի, թե ինչպես պետք է իրականացնել պարտիական ղեկավարությունը մամուլի նկատմամբ: Նրանցում կարմիր թելի պես անցնում է լրագրական գործը ռևոլյուցիոն ժամանակաշրջանին համապատասխան կազմակերպելու, բանվորական մամուլն այդ ժամանակաշրջանի պահանջներով վարելու գաղափարը: Դրանք մի կենդանի ապացույց են այն հսկայական նշանակության, որ տալիս է Լենինը թերթին, մամուլին:

Կենսագործելով պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ցուցումները, ղեկավարվելով նրան գլխավորող Վ. Ի. Լենինի զարգացրած սկզբունքներով, «Պրավդան» հիանալի հաջողությամբ կատարեց իր պատմական դերը, դարձավ մասսաների թերթը: Ի դեմս «Պրավդայի» ռուսական պրոլետարիատը տեսնում էր իր շահերի համար մարտնչողին:

Այսօր, երբ մեր երկիրը գոհունակությամբ նշում է «Պրավդայի» հիսնամյակը — մեր հայացքի առջև բարձրանում է մեծ Լենինի՝ «Պրավդայի» և բոլշևիկյան մամուլի այդ անփոխարինելի ղեկավարի վառ կերպարը:

---

# «ՊՐԱՎԴԱՆ» ԵՎ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՀԱՅ ՄԱՄՈՒԼԸ

Հ. ՑԵԼԵՓՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

«Պրավդան» հսկայական դեր է կատարել տեղական բոլշևիկյան մամուլի կազմակերպման ու զարգացման գործում՝ ղեկավարելով և ուղղություն տալով նրա ողջ գործունեությանը: Այս հոդվածով ընթերցողներին կներկայացնենք 1917—1920 թթ. բոլշևիկյան հայ պարբերական մամուլի պատմության մի քանի էջերը՝ կապված «Պրավդայի» գործունեության որոշ կողմերի հետ:

«Պրավդայի» միջոցով մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն սերտ կապ էր պահպանում տեղական բոլշևիկյան կազմակերպությունների և մամուլի հետ: 1917 թվականի հոկտեմբերի վերջերին—նոյեմբերի սկզբներին երկրում լույս էր տեսնում ավելի քան 80 բոլշևիկյան պարբերական՝ շաբաթական 3,5 միլիոն տիրաժով: Ինչպես հաղորդում էր «Պրավդան», 1917 թվականի ապրիլին պարտիայի Կենտկոմին առընթեր խմբագրական խորհուրդը, «Պրավդա» թերթը, «Զվեզդա» շաբաթաթերթը և «Պրիբոյ» հրատարակչությունը ստեղծեցին մամուլի բյուրո, որի խնդիրն էր նյութեր մատակարարել մայրաքաղաքի և տեղական բոլշևիկյան մամուլին[1]: Մամուլի բյուրոն թերթերին երկու օրը մեկ առաքում էր հոդվածներ ընթացիկ մոմենտի մասին, տեղեկություններ պարտիական ու բանվորական կյանքի վերաբերյալ, արտասահմանյան բանվորական շարժման ու քաղաքական իրադարձությունների տեսություններ և այլ կարգի նյութեր: Բոլշևիկյան հայերեն թերթերը ևս օգտագործել են մամուլի բյուրոյից ստացվող նյութերը, ինչպես և մի շարք արտատպություններ կատարել «Պրավդա», «Սոցիալ դեմոկրատ» (Մոսկվա) և բոլշևիկյան այլ պարբերականներից: Այդպիսի արտատպություններ անում էին Ռուսաստանում լույս տեսնող բոլոր բոլշևիկյան թերթերը: Այս երևույթը ո՛չ թե պատահական բնույթ էր կրում, այլ արվում էր կանխամտածված կերպով: Դեռևս 1917 թվականի մարտին «Պարտիական գրականությունը» վերնագրով հոդվածում «Պրավդայի» խմբագրությունը հայտնում էր. «Պարտիական թերթերում տպագրված հոդվածները կարող են ազատ կերպով արտատպվել այլ պարտիական թերթերում: Դա կկրճատի գրական աշխատանքը, լավ հոդվածներին ավելի լայն ճանապարհ կտա ամբողջ Ռուսաստանում և ավելի միասնություն կմտցնի պրոլետարական մասսաների հայացքների ու տրամադրությունների մեջ»[2]:

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները զգալի աշխատանք էին ծավալել մարքսիստական գրականության և բոլշևիկյան թերթերի տարած-

---

1 Տե՛ս «Պրավդա», 1917 թ., № 33:

2 «Պրավդա», 1917 թ., № 6:

ման ուղղությամբ։ Այդ նպատակով պարտիայի Կենտկոմի առաջարկով Թիֆլիսի Կոմիտեին կից ստեղծվել էր էքսպեդիցիոն հանձնաժողով։ 1917 թվականի ապրիլին Պետրոգրադի բանվորները Կովկասյան ռազմաճակատ ուղարկեցին 400000 օրինակ «Պրավդա»։ Չնայած տեղական հակառևոլյուցիոն ուժերի հարուցած խոչընդոտներին, «Պրավդան» հասնում էր աշխատավորական մասսաներին, ոգեշնչում ու կազմակերպում նրանց, պայքարի հանում՝ հանուն պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակի։

«Պրավդան» էլ, իր հերթին, նպաստում էր տեղական բոլշևիկյան մամուլի տարածմանն ու մասսայականացմանը, նրա հեղինակության բարձրացմանը։ Նրա էջերում հաճախակի տեղ էին գտնում հայտարարություններ բոլշևիկյան թերթերի, ամսագրերի, հրատարակությունների վերաբերյալ և հաղորդումներ նոր լույս տեսնող բոլշևիկյան պարբերականների մասին։ Երբ Թիֆլիսի բոլշևիկները հրատարակեցին «Բանվոր» թերթը, «Ռաբոչի ի Սոլդատը» (1917 թ. հուլիսին, Ժամանակավոր կառավարության կողմից փակվելուց հետո, «Պրավդան» լույս էր տեսնում այս անունով) այդ մասին հաղորդեց իր ընթերցողներին. «Թիֆլիս: Սկսեց լույս տեսնել հայերեն լեզվով մի մեծ թերթ՝ «Բանվորի կռիվը»—«Борьба рабочего»—օրգան ՌՍԴ(բ)Պ Թիֆլիսի կոմիտեի» [3]։ Ինչպես 1912—1914, այնպես էլ 1917—1920 թվականներին «Պրավդան» զգալի ուշադրություն է դարձրել նաև Անդրկովկասի հասարակական կյանքի և ռևոլյուցիոն շարժումների լուսաբանությանը։ 1917—1920 թթ. մեր պարտիայի Կենտրոնական օրգանում լույս տեսավ այդ կարգի ավելի քան 60 թղթակցություն։ Անդրկովկասում հրատարակվող ռուսերեն, վրացերեն և հայերեն բոլշևիկյան թերթերը սիստեմատիկաբար տպագրում էին հաղորդումներ ինչպես «Պրավդայի», այնպես էլ Պետրոգրադում և Մոսկվայում հրատարակվող մյուս բոլշևիկյան պարբերականների մասին։ Բոլշևիկյան հայերեն թերթերը հաճախակի անդրադարձել են «Պրավդայի» հիմնադրման պատմությանը։

Նկարագրելով 1912 թվականին, Լենայի հայտնի դեպքերից հետո Ռուսաստանում ծայր առած բանվորական շարժման հուժկու վերելքը, բոլշևիկյան «Պայքար» թերթը նշում էր, որ այդ վերելքի ծնունդն էր նաև «Պրավդան»։ «Պետրոգրադի բանվորական շարժումը,— գրում էր թերթը,— մի շաբաթվա ընթացքում ստեղծեց «Правда» օրաթերթը, որը հսկայական գործ է կատարել 1912—1914 տարիներին»։ Նույն թվականներին,—շարունակում էր թերթը,— «Պրավդայի» խմբագրությունը փաստորեն դարձել էր բանվորական ռևոլյուցիոն շարժման ղեկավար կենտրոնը. «այնտեղի՛ց էր ղեկավարվում շարժումը, այնտե՛ղ էր հավաքվում Պետրոգրադի սոցիալ-դեմոկրատական կազմակերպության կոմիտեն, մի խոսքով՝ խմբագրատունը բանվորական-հեղափոխական շարժման գլխավոր շտաբն էր...» [4]։

«Պրավդայի» գործունեության այդ շրջանին հանգամանորեն անդրադարձել է նաև «Բանվորի կռիվը»։ Հենց առաջին երկու համարներում թերթը տպագրեց ընդարձակ մի հոդված, որի զգալի մասը նվիրված է «Պրավդայի» ստեղծման պատմությանը, նրա գործունեության հիմնական կողմերի վերլուծությանը։ «Բանվորի կռիվը» հատկապես շեշտում էր այն վիթխարի օժանդակությունն

3 «Ռաբոչի ի Սոլդատ», 1917 թ., № 3։

4 «Պայքար», Թիֆլիս, 1917 թ., № 17։ 1917 թ. հունիսի 10-ին «Պայքար»-ը անցավ մենշևիկների ձեռքը։ 100-րդ համարից հետո «Պայքար»-ը ամբողջովին ուներ մենշևիկյան ուղղություն և հետևողական պայքար էր մղում բոլշևիկյան կազմակերպությունների ու թերթերի դեմ։



ու օգնությունը, որ ցույց էին տալիս բանվորներն իրենց սիրած թերթին։ «Բանվորական շարժման բարձրացած ալիքը,— գրում էր նա,— իր միջից ծնեց «Правда»-ն։ Բանվորները այդ թերթը դարձրին իրենց սեփականությունը։ Բանվորների փողերով էր թերթը ապրում, նրա՛նք էին թերթը տարածողները, նրա աշխատակիցները, նրա պաշտոնական խմբագիրները, որոնք թերթի համար բանտ էին նստում։ Եվ ոչ մի պրովոկացիա չկարողացավ «Правда»-ի բանվորական գույնը փոխել, չկարողացավ բանվորների ստեղծած գործը քանդել» [5]։

1917 թվականի փետրվարյան ռևոլյուցիայից հետո «Պրավդան» վերածնվեց դարձյալ բանվորական միջոցներով։ Մարտի 5-ին, կիրակի օրը, լույս տեսավ նոր «Պրավդայի» անդրանիկ համարը։ Բանվորներն ու զինվորները խմբերով իրենց նվիրատվություններն էին ուղարկում «Պրավդային», նյութական և բարոյական անգնահատելի օգնություն ցույց տալով նրան։ Այդպես էր լույս տեսնում ոչ միայն «Պրավդան», այլև ամբողջ բոլշևիկյան մամուլը։ «Ռևոլյուցիան և մամուլը» խորագրով հոդվածում, ընդգծելով բոլշևիկյան մամուլի առջև ծառացած ֆինանսական դժվարությունները, «Պրավդան» գրում էր, որ կապիտալիզմի օրոք կապիտալներն ու տեխնիկան գտնվում են բուրժուազիայի ձեռքին, և նա, ինչպես ամեն մի ապրանքային արտադրություն, գործի է դնում նաև «հոգևոր կերակուրի»— լրագրերի արտադրությունը [6]։ Բոլշևիկյան հայ մամուլը ևս շեշտում էր այդ հանգամանքը։ Ընթերցողներին ուղղված բաց նամակում «Բանվորի կռիվը» գրում էր. «Մեր խմբագրությունները, իհարկե, չեն մտնի այնպիսի պարոններ, որոնք հարյուրներ ու հազարներ թողնեին, ինչպես անում են ուրիշ խմբագրություններում։ Մենք այնքան միջոց չունենք, որ թուղթը վագոններով գնենք, ինչպես անում են այլ թերթեր։ Մենք հնարավորություն չունենք մեր թերթերը տպել տեխնիկորեն լավ կազմակերպված տպարաններում... Բուրժուական թերթերը սնվում են հայտարարություններից ստացած արդյունքներով, իսկ մեր պրոլետարական մամուլը զուրկ է եկամտի այդ աղբյուրներից։ Մեր մամուլի գոյության միակ աղբյուրը բարեկամ և ընկեր ընթերցողների օժանդակությունն է ու նպաստը» [7]։

Այս ամենը գործնական կիրառումն էր Վ. Ի. Լենինի այն ղեկավար ցուցումի, թե բանվորական մամուլ ստեղծելիս և հրատարակելիս «պետք է հաշվի նստել ո՛չ թե հարուստ «բարեկամների» կապիտալների հետ, այլ միայն բուն իսկ բանվորների ինքնագործունեության հետ» [8]։

***

«Պրավդան» բազմիցս ընդգծել է այն ճշմարտությունը, թե բանվորական թերթը, բոլշևիկյան մամուլը աներևակայելի են առանց բանվորների, զինվորների և չքավոր գյուղացիների աշխատակցության։ Յուրաքանչյուր համարում

5 «Բանվորի կռիվը», ՌՍԴ(բ)Պ Անդրկովկասի Երկրային և Թիֆլիսի կոմիտեների օրգան, Թիֆլիս, 1917 թ., № 2։

6 Տե՛ս «Պրավդա», 1917 թ., № 32։

7 «Բանվորի կռիվը», 1918 թ., № 61։

8 Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 20, էջ 698։ Վ. Ի. Լենինի «Բանվորական մամուլի արդյունքների շուրջը» հոդվածը, որից բերված են այս տողերը, լույս է տեսել «Տրուդովայա Պրավդայի» 1914 թ. №№ 30 և 31-ում։

տպագրելով նրանցից ստացված թղթակցությունները, նամակները, ժողովների
արձանագրություններն ու որոշումները, «Պրավդան» մշակել էր այդ թղթակից-
ների հետ աշխատելու հատուկ ոճ, որը մեծապես ուսանելի էր մյուս բոլշևիկ-
յան թերթերի համար։ Այդ ոճը պարտիական մամուլի աշխատանքում արմա-
տավորել էր պրոլետարիատի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը։ Վերհիշելով Իլյիչի
աշխատանքը բոլշևիկյան մամուլում, Վ. Ա. Կարպինսկին հետագայում գրել է,
որ նա «առանձին ուշադրությամբ ու սիրով էր ուղղում բանվորների հոդված-
ներն ու թղթակցությունները, աշխատում էր պահպանել բանվոր-թղթակիցնե-
րի լեզվի ու ոճի անհատական բոլոր առանձնահատկությունները, որսում էր
արժեքավոր ամեն ինչ, թեկուզ հինգտողանի մի թղթակցության համար... Նա
բարձր էր գնահատում թերթերին ուղարկվող գյուղացիական նամակները»[9]։
Այս սկզբունքներով էր աշխատում Ռուսաստանի ողջ բոլշևիկյան մամու-
լը։ Լենինյան այդ ոճն էին որդեգրել նաև բոլշևիկյան հայերեն թերթերը։ «Պայ-
քար»-ը անհրաժեշտ էր համարում «Պրավդայի» օրինակով «առաջ քաշել ըն-
կերում սովորական բանվոր աշխատակիցներ, իսկ հետագայում մշակել
նույնիսկ հրապարակախոսներ, բանաստեղծներ, գրողներ և խմբագիրներ»[10]։

Բոլշևիկյան թերթերի խմբագրությունները խորհուրդ էին տալիս բանվոր-
ներին ու գյուղացիներին՝ չքաշվել «սեփական գրչի թերություններից», այն
բանից, որ իրենք չեն կարողանում գրել անթերի ու «մշակված ոճով». «Ընկե՛ր
բանվորներ, «Բանվորի խոսքը» ձե՛րն է, և ժամանակին դո՛ւք էլ պիտի դառ-
նաք նրա գրողն ու խմբագրողը... Վեր առեք գրիչն ու թուղթը և ձեր ցավերի ու
նպատակների մասին գրեցեք։ Ինչքան էլ սխալներ լինեն, մի՛ քաշվեք, ղըր-
կեցեք խմբագրությանը, որը կուղղի և կտպի, մինչև որ դուք կսովորեք գրել»[11]։
Նույնպիսի խորհուրդների ենք հանդիպում նաև «Պահակ», «Բանվոր», «Կոմու-
նիստ», «Կարմիր աստղ», «Լոռվա գյուղացիության ձայնը» և մյուս հայերեն
բոլշևիկյան պարբերականներում։ Թղթակցելով իր թերթին,— գրում էր Նոր-
Նախիջևանում լույս տեսնող «Բանվորը»,— «ամեն մի բանվոր հնարավորու-
թյուն կունենա զարգացնելու յուր գրիչը։ Ուրեմն,— կոչ էր անում թերթը,—
գրեցե՛ք որքան կարելի է շատ ձեր կյանքի մասին, առանց ճնշվելու, առանց
ամաչելու սեփական գրչի թերություններից, քաջ գիտակցելով, որ դուք պար-
տավոր եք տիրանալ և գրչին, ինչպես տիրապետում եք մուրճին...»[12]։ Ընդ-
գծելով, որ «բախտավոր է այն կոմունիստական թերթը, որը ծայրից մինչև
վերջ լցված կլինի բանվորական գրչի արտադրություններով», «Կոմունիստ»-ը
խնդիր էր դնում. «Պետք է բանվորին դարձնել իր կոմունիստական թերթի մըր-
տական նյութը, աշխատակիցը, ապա նաև տերն ու տնօրենը»[13]։

***

Ուշագրավ և նշանակալից է այն պայքարը, որ մղել է բոլշևիկյան հայ մա-
մուլը ի պաշտպանություն «Պրավդայի»։

---

9 «Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին», Երևան, 1955 թ., էջ 73 և 86։

10 «Պայքար», 1917 թ., № 1։

11 «Բանվորի խոսք», ՌՍԴ(բ)Պ Բաքվի կոմիտեի օրգան, Բաքու, 1918 թ., № 4։

12 «Բանվոր», Նոր-Նախիջևան, 1921 թ., № 1։

13 «Կոմունիստ», Ադրբեջանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմի և Բաքվի կոմիտեի օրգան, Բաքու, 1920 թ., № 73։



1917 թվականի հուլիսյան դեպքերից հետո «Սոցիալ-դեմոկրատ» և «Բան-
վորի կռիվը» բոլշևիկյան հայերեն թերթերը իրենց բողոքի ձայնը բարձրացրին
ընդդեմ այն անլուր բռնությունների ու հալածանքների, որոնց ենթարկվում
էին մեր պարտիական կազմակերպություններն ու մամուլը։ «Կռիվ հակահեղա-
փոխության դեմ» հոդվածում[14] Ա. Միկոյանը գրում էր. «Հեռագիրը հաղորդեց,
որ «սոցիալիստ» մինիստր Կերենսկու հրամանով փակվել են ՌՍԴԲ (բոլշևիկ-
ների) Կուսակցության Կենտրոնական Կոմիտեի օրգանները՝ «Правда» և
«Солдатская Правда» թերթերը... «Սոցիալիստ» մինիստրի ձեռքով փակված
են ա՛յն թերթերը, որոնք կռվում են սոցիալիզմի և դեմոկրատիզմի համար...
Եվ այդ այն ժամանակ, երբ գոյություն ունեն և ազատ տարածվում են բուր-
ժուական ու կալվածատիրական հակահեղափոխական, սևհարյուրակային
թերթերը...

Հանուն հեղափոխության և սոցիալիզմի (այո՛, չզարմանա՛ք, հանուն հե-
ղափոխության և սոցիալիզմի) Կերենսկին փակում է հեղափոխական և սոցիա-
լիստական թերթերը և հովանավորում հակահեղափոխական մոնարխիստական
թերթերը»։ Մերկացնելով ժամանակավոր կառավարության հակառևոլյուցիոն
էությունը, բուրժուազիայի ձեռնարկած «նախազգուշական» միջոցառումները,
որոնցից արյան հոտ էր գալիս, հրապարակախոսական այրող կրքով գրված իր
հոդվածը Ա. Միկոյանը վերջացնում էր մարտական կոչով. «Դուք հակահեղա-
փոխականներ եք դարձել, պ. պ. «սոցիալիստ» մինիստրներ՝ թաքնված հեղա-
փոխականների դիմակի տակ։

Կռի՛վ բոլոր հակահեղափոխականների դեմ։ Կռի՛վ «սոցիալիստ» մինիս-
տըրների հակահեղափոխական կառավարության դեմ»։

1917 թվականի հուլիսին ՌՍԴ(բ)Պ Թիֆլիսի Կոմիտեն ստացավ ՌՍԴ(բ)Պ
Կենտրոնական Կոմիտեի նամակը, որն անմիջապես տպագրվեց «Բանվորի կը-
ռիվը» թերթում։ «Հարգելի ընկերնե՛ր,— ասված էր նամակում,— Կովկաս ե-
կող մի ընկերոջ միջոցով ուզում ենք ձեզ հաղորդել Պետերբուրգի վերջին դեպ-
քերի մասին ընդհանրապես և մեր կուսակցության մասին մասնավորապես»։
Այնուհետև, նկարագրելով ու վերլուծելով հուլիսյան դեպքերը, հայտնելով
«Պրավդայի» արգելման մասին, նամակը հաղորդում էր այն կամքն ու վճռա-
կանությունը, որով համակված էին բոլշևիկները. «Այժմ դրությունն այսպես է։
Ժամանակավորապես մենք առանց լրագրի ենք մնացել։ Հույս ունենք այս մի
քանի օրը հրատարակելու։ Պետերբուրգում տրամադրությունը աշխույժ է։ Ըն-
կերները չեն կորցրել գլուխները։ Կազմակերպությունը չի քայքայվել»[15]։ Տպա-
գրելով այս նամակը, «Բանվորի կռիվը» ո՛չ միայն Անդրկովկասի աշխատա-
վորական մասսաներին հաղորդում էր ճշմարտությունը Պետրոգրադի իրա-
դարձությունների մասին, այլև խորտակիչ հարված էր հասցնում բուրժուական
գործիչների ու լրագրերի այն ստահոդ ագիտացիային, որի նպատակն էր հու-
սալքում և քայքայում առաջ բերել ռևոլյուցիայի շարքերում։

1917 թվականի օգոստոսի 24-ին արգելվեց «Պրոլետարի» թերթը, որը
փոխարինելու էր եկել դրանից առաջ փակված «Ռաբոչի ի Սոլդատին»։ «Երրորդ
անգամ» անստորագիր հոդվածում «Բանվորի կռիվը», անդրադառնալով ժա-
մանակավոր կառավարության այդ նոր հակառևոլյուցիոն քայլին, գրում էր.

---

14 «Սոցիալ-դեմոկրատ» ՌՍԴ(բ)Պ Բաքվի կոմիտեի օրգան, Բաքու, 1917 թ., № 12։

15 «Բանվորի կռիվը», 1917 թ., № 11։

«Արդեն երրորդ անգամ փակվեց մեր կուսակցության Կենտրոնական Կոմիտեի օրգանը: «Հեղափոխական» կառավարությունը թույլ չտվեց, որ նա գոնե 10 օր գոյությունը պահպաներ: Եվ կուսակցությանն ավելի մեծ հարված տալու համար արգելք է դրված կուսակցության տպարանի վրա»: Սակայն, եզրակացնում էր թերթը, որքան էլ մոլեգնի ռեակցիան, նա անզոր է ռևոլյուցիայի բարձրացող հուժկու փոթորկի հանդեպ. պրոլետարիատը չի՛ վիջի իր դիրքերը, բոլշևիկների պարտիան կբազմապատկի իր կռիվն ու պայքարի թափը: Երրորդ անգամ փակեցին մեր պարտիայի մարտական տրիբունան, շարունակում էր թերթը և խոր հավատով ավելացնում. «Հոգ չէ՛, կունենանք չորրո՛րդը... Դեռ մեծ ճակատամարտեր կան մեր առաջ, հաղթություններ կան:

Վտանգված է հեղափոխությունը, և դարձյալ պրոլետարիատը նետվում է ասպարեզ: Նա կփրկե հեղափոխությունը...

Երրորդ անգա՞մ փակվեց մեր օրգանը:

Կեցցե՛ Կենտրոնական Կոմիտեի չորրորդ օրգանը»[16]:

Եվ իրոք, երբ բոլշևիկ ժուռնալիստը գրում էր այս մարտական տողերը, Պետրոգրադի բանվորներն ու զինվորներն արդեն ստացել և կարդում էին պարտիայի նոր, թվով չորրորդ Կենտրոնական օրգանը՝ «Ռաբոչի» թերթը:

Օգտագործելով «Պրավդայի» պաշտպանության համար իրենց մղած պայքարի փորձը, բոլշևիկյան հայերեն թերթերը մերկացնում էին ժամանակավոր կառավարության դրածո Անդրկովկասյան Կոմիսարիատի և ապա Սեյմի այն հակառևոլյուցիոն գործողությունները, որոնց նպատակն էր հալածել ու ջախջախել տեղի բոլշևիկյան կազմակերպությունները և նրանց տպագիր օրգանները: «Բանվորի կռիվը», «Բանվոր», «Կարմիր դրոշակ» թերթերը արդարացի զայրույթ ու բողոք էին հայտնում բոլշևիկյան մամուլի դեմ սկսված խաչակրաց արշավանքի առթիվ: Բերելով մամուլի բոլշևիկյան օրգանները փակելու, տպարանները բռնագրավելու, աշխատակիցներին ու թղթակիցներին հալածելու փաստեր, վերոհիշյալ թերթերն ընդգծում էին, որ Անդրկովկասի հակառևոլյուցիոն ուժերը բռնել են նույն ստոր ու հակաժողովրդական ճանապարհը, որով ընթանում էին նրանց տխրահռչակ նախորդները «Պրավդայի» դեմ կատարած ոճրագործությունների ժամանակ: 1917 թվականի նոյեմբերի 30-ին, նախօրոք լուր տարածելով, թե բոլշևիկները պատրաստվում են ապստամբություն բարձրացնել «օրինական» իշխանությունների դեմ, մենշևիկյան, էսեռական ու դաշնակցական զինված խմբերը դուրս եկան Թիֆլիսի փողոցները, շրջապատեցին զինանոցը: Նրանք կառավարության հրամանով ներխուժեցին ՌՍԴ(բ)Պ Անդրկովկասյան Երկրային կոմիտեի օրգաններ «Կովկազսկի ռաբոչի», «Բանվորի կռիվը» և «Բրձոլա» թերթի խմբագրությունները, բռնագրավեցին ու ցրեցին հերթական համարների շարվածքը: Կոմիսարիատը սպառնալից կարգադրությամբ պահանջեց տպարաններից չտպագրել ոչ մի բոլշևիկյան թերթ: Նշելով այս «բնորոշ հանգամանքը», «Բանվորը» եզրակացնում էր, որ «Կոմիսարիատը և տեղական իշխանության մյուս պաշտոնական ներկայացուցիչները արշավանք են սկսել մեր կուսակցության դեմ և օգտվում են այնպիսի միջոցներով, որպիսիք մի ժամանակ Կերենսկու կառավարությունն էր գործադրում Պետրոգրադի մեր ընկերների վերաբերմամբ»[17]:

16 «Բանվորի կռիվը», 1917 թ., № 22:

17 «Բանվոր», ՌՍԴ(բ)Պ Անդրկովկասի Երկրային և Թիֆլիսի կոմիտեների օրգան, Թիֆլիս, 1918 թ., № 2:



***

Անդրկովկասում լույս տեսնող բոլշևիկյան հայերեն թերթերի պայքարը հանուն մամուլի իսկական ազատության նոր ուժով դրսևորվեց հատկապես այն բանից հետո, երբ հրապարակվեց Սովետական կառավարության դեկրետը մամուլի մասին: «Պրավդայի» էջերում լույս տեսան Վ. Ի. Լենինի մի շարք հոդվածները, ինչպես նաև բազմաթիվ այլ նյութեր, որոնց մեջ պարզաբանված է մամուլի ազատության մարքսիստական ըմբռնումը: Հիմնավորելով Սովետական կառավարության կողմից մամուլի վերաբերյալ դեկրետ ընդունելու անհրաժեշտությունը, «Պրավդան» ընդգծում էր այն վիթխարի նշանակությունը, որ ուներ լենինյան այդ դեկրետը ռևոլյուցիայի բախտի համար: Եվ բոլորովին էլ պատահական չէր այն վայնասունը, որ բարձրացրել էր կապիտալիստական աշխարհը Սովետական իշխանության այդ ռևոլյուցիոն միջոցառման առթիվ: Անդրկովկասի բուրժուական մամուլը ևս, սկսած դաշնակցական «Հորիզոն»-ից մինչև իրեն «սոցիալիստ» հորջորջող մենշևիկյան «Պայքար»-ը, սկսեց փաստե նիզակներ ճոճել Սովետական իշխանության դեմ, որը «հանդգնել էր» փակել Ռուսաստանում լույս տեսնող հակառևոլյուցիոն թերթերը: Բոլշևիկյան հայ մամուլը իր պարտքը համարեց հակահարված տալ այդ հարձակումներին:

Աշխատավորներին խաբելու և մոլորության մեջ գցելու համար բուրժուական մամուլը բացել էր զրպարտության ճահճի բոլոր ծորակները. բուրժուական գրչակները բանն այնպես էին ներկայացնում, թե իբր Ռուսաստանում հալածանքի են ենթարկվում ո՛չ միայն բուրժուական, այլև, ոչ ավելի, ոչ պակաս... սոցիալիստական, նույնիսկ բոլշևիկյան թերթերը: Մամուլի մասին դեկրետը հրապարակվելուց անմիջապես հետո «Պայքարը» զրպարտում էր, թե Լենինի գլխավորած կառավարությունը «սկսեց հենց առաջին օրից խախտել ազատություններից ամենամեծը— խոսքի ազատությունը, դադարեցրեց մամուլի օրգաններից շատերը, գրաքննության և հալածանքի ենթարկեց ոչ թե միայն բուրժուական, այլև դեմոկրատական և սոցիալիստական թերթերը»[18]: Այնուհետև, իբրև իր ասածը հաստատող «զորավոր փաստարկ», «Պայքարի» խմբագրությունը բերում է «Նովայա ժիզն» թերթը՝ նրան կպցնելով «բոլշևիկական-սոցիալիստական» պիտակը և մկրտելով «ազնիվ և անաչառ» տիտղոսով: «Պրավդայում» տպագրված մի ինֆորմացիայից տեղեկանում ենք, որ տպարանի բանվորները հրաժարվել են տպագրել «Նովայա ժիզն» թերթը, որովհետև այն «քաղաքականապես ուղղված է Սովետական իշխանության և բանվորա-գյուղացիական ռևոլյուցիայի նվաճումների դեմ»[19]: Ահա թե ո՛ւմ էր պաշտպանության տակ առել «ազատ խոսքի քաջակորով ասպետը»: Զայնակցելով վերջինիս, էսեռների Բաքվի կազմակերպության օրգան «Աշխատանքի դրոշակ»-ը լուտանք էր թափում, թե «բոլշևիկյան Ռուսաստանում» «խոսքի ազատությունը, մամուլի ազատությունը դարձել են բռնցքի և սվինի ազատություն, սոցիալիստական թերթերը փակվում են անխնա, իսկ նրանց ղեկավարները բանտարկվում...»[20]:

Բուրժուական մամուլի այս կարգի հարձակումների դեմ բոլշևիկյան հա-

18 «Պայքար», 1917 թ., № 166:

19 Տե՛ս «Պրավդա», 1918 թ., № 11:

20 «Աշխատանքի դրոշակ», Բաքու, 1918 թ., № 15:

յերեն թերթերը պայքարում էին՝ կիրառելով հրապարակախոսական տարբեր եղանակներ. տպագրում էին մամուլի տեսություններ, առաջնորդողներ, աշխատավորներից ստացված նամակներ, արտատպություններ էին կատարում «Պրավդայից» և բոլշևիկյան մյուս թերթերից: Նշելով, որ բուրժուական հակառևոլյուցիոն թերթերը փակելու առիթով Սովետական իշխանության դեմ աղմուկ-աղաղակ են բարձրացրել «ոչ միայն բուրժուական ու սևհարյուրակային խմբակցությունները, այլև իրենց հեղափոխական համարող կուսակցություններն ու առանձին անհատներ», «Բանվորի կռիվը» իր ընթերցողներին ճիշտ կողմնորոշելու նպատակով «Պրավդայից» արտատպեց «Ո՞րն է մեր հասկացած ազատությունը» խորագրով հոդվածը»[21]: Անպայմա՛ն պետք է հալածել այն թերթերը,— իր կողմից ավելացնում էր խմբագրությունը,— «որոնք թունավորում են ազգաբնակության միտքը այլևայլ պրովոկացիոն լուրերով»:

Մամուլի մասին դեկրետի առթիվ հակառևոլյուցիայի հարձակումները բոլշևիկյան թերթերը դիտում էին որպես Սովետական իշխանության և սոցիալիստական ռևոլյուցիայի դեմ սկսված ընդհանուր արշավանքի բաղկացուցիչ մասերից մեկը: Ահա թե ինչու, այդ դեկրետի պրոպագանդումը բոլշևիկյան հայ մամուլի էջերում վերածվել-դարձել էր Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի, բոլշևիկյան պարտիայի և Սովետական իշխանության պաշտպանություն՝ ընդդեմ նախ և առաջ անդրկովկասյան ռեակցիոն ուժերի: «Բանվորական և գյուղացիական հեղափոխության այս երեք շաբաթը,— դաշնակցական «Հորիզոնի» դեմ ուղղված մամուլի տեսություններից մեկում գրում էր «Բանվորի կռիվը»,— արհեստավ հայհոյիչ և բամբասասեր սոցիալ-դաշնակցական տիրացուներին «աշխատանքի» առատ նյութեր է տվել»: «Դժվար է առանց զզվանքի կարդալ այն բոլորը,— շարունակում էր թերթը,— ինչ որ գրըվում է «Հորիզոնի» ջրալի առաջնորդողներում և զանազան հիստերիկական հոդվածներում. ամենաստոր տեսակի սուտեր, զրպարտություններ, վախեցած պառավի վայնասուններ և հայհոյանք, «ազնիվ» տեսակի դաշնակցական հայհոյանք— ահա այդ գրությունների բովանդակությունը»[22]:

Բոլշևիկյան հայ մամուլը պատռում էր Սովետական իշխանության, Կոմունիստական պարտիայի և նրա տպագիր օրգանների, մասնավորապես «Պրավդայի» վերաբերյալ բուրժուական թերթերի հյուսած կեղծիքների ու զրպարտության սև քողը, Անդրկովկասի աշխատավորներին հասցնելով ամբողջ ճշմարտությունը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի մասին: Իր այդ պայքարով բոլշևիկյան մամուլը մերկացնում էր երկրամասի բուրժուանացիոնալիստական պարտիաների հակառևոլյուցիոն էությունը՝ նրանց ազդեցությունից վերջնականապես ազատագրելով և սոցիալիստական ռևոլյուցիայի դրոշի շուրջը համախմբելով աշխատավորության մոլորված տարրերին:

Բաքվում լույս տեսնող «Բագինեց» բուրժուական թերթը 1920 թվականի առաջին օրերին քափ-քրտինք մտած՝ լուրեր էր տարածում, թե իբր Սովետական իշխանությունը, դրությունից ելք չգտնելով, իր կառավարության մեջ է հրավիրում մենշևիկներին, պատրաստվելով հաշտություն առաջարկել Կոլչակին ու Դենիկինին: «Պահակ» բոլշևիկյան հայերեն թերթը այդ առթիվ հանդես եկավ հատուկ հոդվածով[23], ցույց տալով, որ այդ ամենը ոչ մի կապ չունի ճըշ-

21 «Բանվորի կռիվը», 1917 թ., № 46:

22 «Բանվորի կռիվը», 1917 թ., № 44:

23 Տե՛ս «Պահակ», ՌԿ(բ)Պ Կովկասյան երկրային կոմիտեի օրգան, Թիֆլիս, 1920 թ., № 6:



մարտության հետ և Անդրկովկասի ռեակցիոն մամուլի հերթական զրպարտանքն է, մամուլ, որը ողողված է «անամոթության աստիճանի հասնող ստախոսությամբ, պրովոկացիոն լուրերով ու դեմագոգիական հոդվածներով»: «Պահակը» ուշադրություն էր հրավիրում հատկապես այն բանի վրա, որ «Բագինեցը» «առանց կարմրելու» հավատացնում էր, թե իբր այդ լուրերը քաղված են «Պրավդայից»: ««Багинец»-ի լրբությունը այն աստիճանի է հասնում,— բացատրում էր թերթը,— որ այդ լուրի գլխին գրում է, թե «Правда»-ն է այդպես հաղորդում: Տասնյակ տարիներ դենիկինների և կոլչակների դեմ օրհասական պայքար մղող և իր նպատակին միշտ անշեղ ու հավատարիմ մնացած Ռուսաստանի Կոմունիստական կուսակցության այդ սրբազան օրգանը (ընդգծումը իմն է.— Հ. Ց.), որ դեռ մի քանի շաբաթ սրանից առաջ գրում էր, թե խորհրդային իշխանությունը Դենիկինի մահվան հետ միայն կարող է հաշտվել— հանկարծ այդպիսի տեղեկություն է հաղորդում? Արդյոք կապիտալի թագավորության ջերմեռանդ երկրպագուների ջղաձգական գալարումներ ու հուսահատական ճիչեր չե՞ն սրանք»:

Հետևելով «Պրավդայի» օրինակին, բոլշևիկյան հայ մամուլն ընդգծում էր բուրժուական մամուլի պայքարի մեթոդների սնանկությունը: «Ճշմարտությունը մեր հակառակորդների համար միշտ էլ վատ զենք է եղել մեր դեմ,— ընդհանրացնում էր «Բանվորի կռիվը»,— իսկ զրպարտությունը, սուտը, պրովոկացիան— ամենալավ զենքը: Եվ այդ զենքերը օր-օրի վրա մեր դեմ գործադրում են բոլորը՝ և՛ բուրժուական վարձկան գրչակները, և՛ «սոցիալիստական»... հրապարակախոսները»[24]: «Պայքարի բուրժուական մեթոդը սուտն է ու զրպարտությունը»[25],— շեշտում էր Բաքվի Կոմունայի օրգան «Տեղեկատուն»: «Սուտը, կեղծիքը և զրպարտությունները թափվում են դեղին մամուլի սյունակներից բանվորա-գյուղացիական իշխանության հասցեին»[26],— «Պրավդայի» դեմ ուղղված վերոհիշյալ հերյուրանքի առիթով գրում էր «Պահակը»:

Ինչպես «Պրավդան», այնպես էլ բոլշևիկյան մյուս բոլոր թերթերը բազմաթիվ օրինակներ են տալիս այն բանի, որ բոլշևիկյան գրավոր խոսքը հիմնըվում էր իրական փաստերի կոնկրետ վերլուծության վրա, ուներ սկզբունքային, հետևողական, ժողովրդի շահերի անշահախնդիր պաշտպանության սուր տենդենց. այս առանձնահատկությունը բոլշևիկյան մամուլին տալիս էր ճըշմարտացիության մեծ ուժ, աշխատավորներին մոբիլիզացնելու լայն հնարավորություններ: Հակադրելով բուրժուական և բոլշևիկյան թերթերի պայքարի միջոցները, Բաքվի «Տեղեկատուն» եզրակացնում էր. «Մենք մեր ասածներն ապացուցելու համար երբեք պայքարի բուրժուական մեթոդին չենք դիմի, որովհետև պրոլետարիատն իր մեթոդն ունի— ճշմարտությունը հայտարարելու սովորությունը»[27]:

«Պրավդայի» հասցեին թխելով հազար ու մի սուտ, զրպարտելով ու հերյուրելով, Անդրկովկասի բուրժուական մամուլը, իր այդ հարձակումները նաև տեղի բոլշևիկյան թերթերի դեմ ուղղելու նպատակով, հաճախ նշում էր, որ

24 «Բանվորի կռիվը», 1918 թ., № 63:

25 «Տեղեկատու», 1918 թ., № 75:

26 «Պահակ», 1920 թ., № 6:

27 «Տեղեկատու», 1918 թ., № 75:

այդ թերթերը «Պրավդայի» հետևորդներն են։ Որ նրանք «Պրավդայի» հետե-
վորդներն էին, սա, իհարկե, անտարակուսելի ճշմարտություն է։ Բայց բուր-
ժուական թերթերը, անելով այս համեմատությունը, ցանկանում էին հասնել
իրենց համար ձեռնտու արդյունքի՝ վարկաբեկելով «Պրավդան», աշխատավո-
րության աչքում գցել նաև նրա հետևորդ թերթերի հեղինակությունը։ Երջորեն
անհանգստանալով Անդրկովկասի կոմիսարիատի դեմ բոլշևիկների և բոլշևիկ-
յան թերթերի մղած անողոք պայքարից և ահից կուչ գալով նրանց այն եզրա-
կացության հանդեպ, թե Անդրկովկասի աշխատավորների միակ փրկությունը
բուրժուազիայի տիրապետությունը տապալելու և ռևոլյուցիոն ճանապարհով
Սովետական իշխանություն հաստատելու մեջ է, մենշևիկյան «Պայքարը»
գրում էր. «Թերթեցե՛ք մեծամասնականների (բոլշևիկների.—Հ. Ց.) կենտրո-
նական օրգանը, և դուք յուրաքանչյուր համարում կկարդաք նույնը»[28]։ Անդր-
կովկասի բոլշևիկյան թերթերը,— պնդում էր Բաքվի «Գործ» ամսագիրը,—
գրում-ասում են նույնը, «ինչ որ ասել է և ասում է տխրահռչակ «Правда»
ռուս թերթը, միայն ավելի անշնորհք կերպով շարադրված»[29]։ «Պրավ-
դայի» և Անդրկովկասի բոլշևիկյան թերթերի համադրումից հակառակ եզրա-
կացության էին հանգում բոլշևիկ հրապարակախոսները։ Խոսելով բոլշևիկյան
հայ մամուլի մասին, «Բանվորի կռիվը» շեշտում էր, որ այդ մամուլը ընթա-
նում է և պետք է ընթանա Ռուսաստանում լույս տեսնող այն թերթերի ուղիով,
որոնք «նվիրված են բանվորության և չքավոր գյուղացիության շահերին, լու-
սավորում են այն ճանապարհը, որ տանում է դեպի Մեծ Ազատություն։ Այդ
թերթերն են՝ «Правда», «Социал-Демократ»[30]։ Բերելով ՌՍԴ(բ)Պ Անդր-
կովկասի Երկրային կոմիտեի կենտրոնական օրգան «Կովկազսկայա Պրավ-
դա» թերթի օրինակը, «Կարմիր Օրերը» այն միտքն էր հայտնում, թե Անդր-
կովկասի բոլշևիկյան մամուլը, «անշեղ և հետևողականորեն գնալով համա-
ռուսական և համաեվրոպական պրոլետարիատի հեղափոխական շարժման
ղեկավար «Правда»-ի ուղիով՝ Անդրկովկասյան պրոլետարիատին կառաջնոր-
դի դեպի կոմունիզմի հաղթանակը»[31]։

Հենց այդ միակ ճշմարիտ, պատմությա՛մբ փորձված ուղին էր ընտրել
բոլշևիկյան հայ մամուլը։ Եվ այդ էր նրա բոլոր հաջողությունների գրավա-
կանը սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար մղած պայքարում։

28 «Պայքար», 1918 թ., № 5։

29 «Գործ», Բաքու, 1917 թ., № 5—6, էջ 218։

30 «Բանվորի կռիվը», 1917 թ., № 3։ «Սոցիալ-դեմոկրատ»—բոլշևիկների Մոսկվայի կո-
միտեի օրգանն էր։

31 «Կարմիր օրեր», Թիֆլիս, 1918 թ., № 13։



# ԱԶԳԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻՑ ԿՈՄՈՒՆԻԶՄԻՆ ԱՆՑՄԱՆ ՇՐՋԱՆՈՒՄ

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ

Ազգերի կազմավորման պրոցեսը պատմական երկարատև զարգացման
արդյունք է, ընդ որում յուրաքանչյուր ազգ ունի այս կամ այն առանձնահատ-
կությունը, գտնվում է զարգացման համեմատաբար ցածր կամ բարձր մակար-
դակի վրա։ Այդ տարբերությունները բացատրվում են հասարակական-տըն-
տեսական զարգացման առանձնահատկություններով, մասնավորապես ար-
տադրողական ուժերի և սոցիալական հարաբերությունների զարգացման աս-
տիճանով։ Այս հանգամանքը զգալի տարբերություններ է առաջացրել ազգե-
րի վիճակի ու նրանց կոնսոլիդացման աստիճանի միջև և, աշխարհում հիմ-
նականում գերիշխող կապիտալիստական կարգերի պայմաններում, հասցրել
է այն բանին, որ մի ազգը իրեն է ենթարկել մյուսին, ճնշել և զարգացման ցա-
ծըր աստիճանի վրա է պահել նրան։ Կապիտալիստական հասարակարգը, չնա-
յած իր վերջին ստադիայում հանգեցնում է ազգերի որոշ մերձեցման, սակայն
պահպանում է զարգացման տարբերությունները և, ավելին՝ սրբագործում
զարգացած մեծ ազգերի կողմից ետ մնացածների ենթարկումն իրենց ու նրանց
անխնա շահագործումը։

Պատմական զարգացման այս օրինաչափության հայտնագործմամբ
մարքսիզմ-լենինիզմի կլասիկները հանգեցին այն ճիշտ եզրակացության, որ
ազգերի հավասար ու ազատ զարգացման համար նախ և առաջ անհրաժեշտ է
ոչնչացնել մասնավոր սեփականատիրական կարգերը և մարդու շահագործու-
մը մարդու կողմից, այսինքն՝ հաստատել կոմունիստական կարգեր ամբողջ
աշխարհում։ Այդպիսի կարգերը, վերացնելով մասնավոր սեփականությունն
ու թշնամական դասակարգերը, հող կստեղծեն ազգերի միջև սոցիալ-տնտե-
սական տարբերությունների հաղթահարման ու նրանց հավասարապես բարձր
աստիճանի զարգացման համար, արմատախիլ կանեն դասակարգային հակա-
սությունների պատճառով ազգերի միջև առաջացած խտրականությունը և
թշնամանքը։

Ազգերի զարգացման ու նրանց հարաբերությունների համար նոր հիմքեր
ստեղծեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, որի հաղթանա-
կի շնորհիվ նոր սոցիալիստական կյանքի կառուցումն ընդգրկեց մեր երկրի
տերիտորիայի վրա բնակվող ավելի քան հարյուր ազգեր ու ազգություններ։
Դրանք գտնվում էին զարգացման ամենատարբեր աստիճանների վրա։ Մի մա-
սը հասել էր արդունաբերական կապիտալիզմի շրջանին (Եվրոպական մասու-

Անդրկովկասում), մյուսը՝ կիսաֆեոդալական վիճակում էր (Միջին Ասիա), երրորդը ցեղային վիճակից նոր էր դուրս գալիս (Սիբիր, Հյուսիս)։ Սովետական կարգերի հաստատման շնորհիվ զարգացման տարբեր աստիճանների վրա գտնվող ազգերն ու ազգությունները ստացան քաղաքական իրավահավասարություն, ստեղծվեցին դրանց ազգային պետական միավորումները մեկ ընդհանուր Սովետական ռեսպուբլիկաների միության սահմաններում (միութենական ռեսպուբլիկա, ավտոնոմ ռեսպուբլիկա, մարզ, օկրուգ)։ Սոցիալիզմի կառուցման շնորհիվ հաղթահարվեցին նրանց տնտեսական սուր տարբերությունները, ընդ որում՝ ետ մնացողները ավելի արագ տեմպերով զարգանալով, հիմնականում հասան առաջավորներին։ Դրա շնորհիվ բուռն թափով զարգացան նաև ազգային մյուս տարրերը (լեզուն, կուլտուրան)։ Ստեղծվեց ազգերի ոչ միայն իրավական, այլև փաստական հավասարություն։

Սոցիալիզմի ժամանակ ազգերի զարգացման կարևորագույն մոմենտներից մեկը նրանց ներքին դասակարգային կազմի փոփոխությունն է։ Շահագործող դասակարգերի ու նրանց մնացորդների լիակատար վերացման շնորհիվ ազգերը սոցիալիզմի պայմաններում սոցիալապես միատարր են դարձել, նրանք այժմ կազմված են միայն աշխատավորական դասակարգերից ու խավերից և այլևս չեն բզկտվում ներքին դասակարգային հակասություններից։ Տնտեսական ու քաղաքական զարգացման աստիճանների հավասարեցումը, կյանքի միանման պայմանները հանգեցրին մեր երկրի բոլոր ազգերի հոգևոր կերպարի՝ քաղաքական, գիտական, բարոյական հայացքների ու ըմբռնումների միասնականացման։ Հոգևոր կերպարի հիմնական միասնական տարրեր դարձան գիտական-մատերիալիստական աշխարհըմբռնումը, մարքս-լենինյան գաղափարախոսությունը, կոմունիստական բարոյականության նորմերը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը։ Այս ամենի շնորհիվ ազգերի նախկին թշնամության ու անվստահության, ազգային խտրականության ու մի ազգի կողմից մյուսին ճնշելու փոխարեն մեր երկրում հաստատվել է նրանց սերտ բարեկամությունը և քաղաքական, տնտեսական ու կուլտուրական կապերի աննախընթաց աշխուժացումը։ Մեր երկրում իրականություն է դարձել ազգերի նոր սոցիալական աստիճանը՝ նրանք դարձել են սոցիալիստական ազգեր։

Այսպիսի սոցիալիստական ազգերից մեկն է հայ ազգը, որը ոչ հեռու անցյալում իր տնտեսական ու քաղաքական զարգացմամբ ետ էր մնացել առաջավոր ազգերից։

Իսկ այժմ գոյություն ունի հայկական ազգային պետականություն ՍՍՌՄ կազմում՝ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան իր Կոնստիտուցիայով, օրենքներով, մայրաքաղաքով, գերբով, դրոշով ու հիմնով, իշխանության իր բարձրագույն օրգաններով, որոնց ղեկավարները հայ բանվորների ու գյուղացիների զավակներն են։ Սովետական Հայաստանը, ինչպես և Միության մյուս բոլոր ազգային ռեսպուբլիկաները, բարձր զարգացած արդյունաբերության երկիր է։ Բավական է նշել, որ բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրմամբ Սովետական Հայաստանը գերազանցում է շատ ու շատ զարգացած կապիտալիստական երկրների, այդ թվում Ճապոնիայի ու Ֆրանսիայի մակարդակը։ Սովետական Հայաստանում ստեղծված է ժամանակակից քիմիական, սարքաշինական, էլեկտրամեքենաշինական, ճշգրիտ ապարատների ու սարքերի արդյունաբերություն, զարգացած գյուղատնտեսություն, սննդի ու թեթև արդյունաբերություն, որոնց արտադր-



րանքն արտահանվում է աշխարհի 47 երկրներ։ Հայ կուլտուրայի ու գիտության նվաճումները հանրահայտ են ամբողջ աշխարհում և, որ ավելի նշանակալի է, վիթխարի չափով աճել է ժողովրդի ամբողջ զանգվածի կուլտուրական մակարդակը։ Բնակչության մեջ բարձրագույն կրթություն ունեցողների և գիտական աշխատողների թվով Սովետական Հայաստանը գրավում է աշխարհում առաջին տեղերից մեկը։ Նույնպիսի վիճակի են հասել նաև Սովետական Միության մյուս ազգերը։

Ազգային հարցի լուծման ու ազգերի զարգացման գործում ձեռք բերված մեծագույն նվաճումները ցույց են տալիս, որ այս, ինչպես և հասարակական կյանքի մյուս բոլոր բնագավառներում, մեր երկրում հասունացել է ավելի բարձր աստիճանի՝ կոմունիզմին անցնելու ժամանակը։ Ո՞րն է այդ անցման հիմնական ուղղությունը մասնավորապես ազգային զարգացման բնագավառում։ Այդ հարցին պատասխանում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագիրը, որն իրավամբ արդեն կոչվում է «մեր դարաշրջանի Կոմունիստական մանիֆեստ»։ «ՍՍՌՄ-ում կոմունիզմի հաղթանակի շնորհիվ տեղի կունենա ազգերի է՛լ ավելի մերձեցում, կաճի նրանց տնտեսական ու գաղափարական ընդհանրությունը, կզարգանան նրանց հոգևոր կերպարի կոմունիստական ընդհանուր գծերը։ Սակայն ազգային տարբերությունների, հատկապես լեզվական տարբերությունների ջնջվելը, զգալիորեն ավելի տևական պրոցես է, քան դասակարգային սահմանագծերի ջնջվելը» (ՍՄԿՊ Ծրագիր, էջ 136)։

Այսպիսով, Ծրագիրը որոշակիորեն ընդգծում է ազգերի զարգացման երկու հիմնական ուղղություն. մի կողմից՝ նրանց միջև ստեղծված հասարակական ընդհանրությունների հետագա զարգացում, մյուս կողմից՝ ազգերի հիմնական բնական-պատմական առանձնահատկությունների, հատկապես լեզուների ու ազգային կուլտուրաների հետագա ծաղկում ու մերձեցում։ Այսպիսով, Ծրագիրը ելնում է մարքսիզմ-լենինիզմի այն հիմնական դրույթից, որ, չնայած փոխադարձ մերձեցման ու միասնական տնտեսական-քաղաքական կյանքին, ազգերն ու ազգային լեզուները կպահպանվեն դեռևս երկար ժամանակ, համաշխարհային մասշտաբով կոմունիզմի հաղթանակից հետո էլ։

Ամենից առաջ խնդիր է դրվում շարունակել բոլոր սովետական ազգերի ու ազգությունների էկոնոմիկայի ու կուլտուրայի համակողմանի զարգացումը, ապահովելով նրանց սերտ համախմբումն ու մերձեցումը, լիովին օգտագործել ու կատարելագործել մեր երկրի ազգային պետականության ձևերը։ Թեև պետականությունն ազգային հատկանիշ չէ, սակայն նրա առկայությունը ազգային համախմբման և զարգացման հիմնական պայմաններից մեկն է։ Դրա համար էլ հենց այդ ձևերը մեզ հնարավորություն են տվել ապահովելու անցյալում տնտեսապես ու կուլտուրապես հետամնաց ազգերի ու ազգությունների քաղաքական, տնտեսական ու հոգևոր զարգացումը, արագացնել նրանց ազգային համախմբման պրոցեսը, հասնել ավելի զարգացած ազգերի մակարդակին։

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում ազգերի հետագա զարգացման հիման վրա ըստ երևույթին տեղի կունենան ազգային պետականության ձևերի որոշ կատարելագործումներ. առանձին ազգությունների կոնսոլիդացիայի ուժեղացման ու ազգային խմբերի որոշ բնական տեղաշարժերի հիման վրա կարող են ստեղծվել ազգային նոր վարչական միավորումներ՝

ռեսպուբլիկաներ, մարզեր։ Այստեղ պետք է նկատի ունենալ նաև այժմ նոր
բնակեցված շրջանների (Խոպանի երկրամասը Ղազախստանում, Բրատսկի
արդյունաբերական շրջանը Սիբիրում և այլն) տնտեսական արագ զարգացու-
մը, որի հետևանքով փոխվում է նրանց բնակչության ազգային կազմը՝ դրանք
դառնում են բազմազգ շրջաններ։ Այս պրոցեսը հիմք է տալիս վարչական նոր
միավորումների ստեղծման, որի օրինակներից մեկն արդեն իսկ ստեղծված
Խոպանի երկրամասն է։ Մյուս կողմից, կշարունակվի ազգային պետական
միավորումների վարչական, օրենսդրական, տնտեսական իրավունքների ընդ-
լայնման վերջին տարիներս սկսված պրոցեսը։ Ընդ որում ՍՍՌՄ շրջանակնե-
րում միութենական ռեսպուբլիկաների միջև գոյություն ունեցող սահմանները
ավելի են կորցնելու իրենց երբեմնի նշանակությունը, քանի որ բոլոր ազգերն
իրավահավասար են, հավասար են նաև նրանց տնտեսական ու կուլտուրական
պահանջմունքների բավարարման եղանակներն ու աստիճանը։

Երկրորդ կարևորագույն խնդիրը տնտեսական ասպարեզում սովետական
ռեսպուբլիկաների տնտեսության հետագա համակողմանի զարգացումն է։ Կո-
մունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը նշանակում է ոչ միայն
արտադրության վիթխարի աճ և աշխատանքի արտադրողականության խիստ
բարձրացում, այլև Սովետական Միության ամբողջ տերիտորիայում արտա-
դրության ավելի ռացիոնալ տեղաբաշխում, բնական հարստությունների ու ամբողջ
լանաչափ շահագործում, ինչպես և առանձին ռեսպուբլիկաների ու ամբողջ
Միության տնտեսական շահերի ճիշտ զուգակցում՝ բնական ռեսուրսների և
արտադրական ստեղծված ու նոր ձևավորվող տրադիցիաների հիման վրա։
Այսպես, օրինակ, Սովետական Հայաստանում առաջիկա քսան տարում առա-
վել մեծ տեմպերով պետք է զարգանան նուրբ և ճշգրիտ մեքենաշինությունը,
սարքաշինությունը, էլեկտրամեքենաշինությունը, քիմիական արդյունաբերու-
թյունը։ Դրա հիմքը տերիտորիայի բազմատեսակ հարստությունների և հա-
մապատասխան արտադրական ու գիտական կադրերի առկայությունն է։ Սո-
վետական Հայաստանը արդյունաբերության բնագավառում բուռն, չտեսնված
վերելք կապրի, իսկ բարձր զարգացած գյուղատնտեսությունը օժանդակ դեր
կկատարի։

Ազգային ռեսպուբլիկաների և տնտեսական շրջանների այդպիսի մաս-
նագիտացման հիմքը նրանց փոխադարձ կապերի, փոխադարձ մատակարա-
րումների հետագա ընդլայնումն է, որի հիման վրա արդեն որոշ հարցերում
(ոռոգում, էլեկտրաէներգիայի օգտագործում և այլն) հանդես են գալիս միջ-
ռեսպուբլիկական տնտեսական օրգաններ։ Այսպես, օրինակ, արդեն ստեղծվել
է «Անդրկովկասի տնտեսական շրջանի կոորդինացման ու պլանավորման
խորհուրդը»։

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում անհրաժեշտ կլինի ա-
ռանձնահատուկ ուշադրություն նվիրել երկրի այն շրջաններին, որոնք ավելի
արագ զարգացման կարիք ունեն։ Դրանով իսկ կոմունիզմի շինարարության
պրոցեսում աճող բարիքներն ավելի արդարացիորեն կբաշխվեն Միության բո-
լոր ազգերի ու ազգությունների միջև և ավելի լիակատար կդառնա նրանց
փաստական հավասարությունը, ավելի ճիշտ հաշվի կառնվեն նրանց յուրա-



հատկությունները։ Ինչպես ճիշտ նկատել է Ն. Ս. Խրուշչովը, որքան ավելի մեծ
է յուրաքանչյուր ռեսպուբլիկայի ավանդը կոմունիզմի կառուցման ընդհանուր
գործում, այնքան ավելի լայն ու բազմակողմանի է սովետական ազգերի փո-
խադարձ կապը։ Տնտեսության աննախընթաց զարգացումը մեր երկրում կը-
հանգեցնի զգալի առաջընթացի կոմունիստական հասարակության հիմնական
նպատակի՝ ամբողջ հասարակության օրավուր աճող պահանջմունքների առա-
վել լայն բավարարման իրականացման ասպարեզում։

Կապիտալիզմը բերում է հասարակության մի մասի կենսամակարդակի
բարձրացում ի հաշիվ մյուս մասի զրկման։ Այսպիսի բաշխման հետևանքով
որոշ բուրժուական պետություններում՝ ի հաշիվ ինչ-որ միջին թվաբանական
չեղյալ կենսամակարդակի, ստեղծվում է ամբողջ հասարակության բարձր
կենսամակարդակի պատրանք։

Դեպի կոմունիզմ ընթացող ազգերն աշխարհում ամենաբարձր կենսա-
մակարդակի հասած ազգերը կդառնան, ընդ որում այդ կենսամակարդակը հա-
վասարապես բարձր կլինի հասարակության բոլոր անդամների համար։ Այդ
բարձր կենսամակարդակը կարտահայտվի և՛ նյութական պահանջմունքների
լայն բավարարման, և՛ աշխարհում ամենակարճ աշխատօրվա, և՛ մտավոր
ու ֆիզիկական, քաղաքի ու գյուղի միջև սահմանների մերձեցման, և՛ հար-
մարավետ կենցաղային պայմանների ու հոգևոր պահանջմունքների լայն բա-
վարարման հնարավորությունների ստեղծման մեջ։ Այսպիսով, դեպի կոմու-
նիզմ ընթացող ազգերն ու ազգությունները կլինեն աշխարհում ամենալավ
ապրող, ամենաառողջ ու հոգևոր բարձր զարգացման հասած ազգերը։

Ազգերի զարգացման բնագավառում առաջնահերթ խնդիրներից մեկն էլ
ՍՍՌՄ ժողովուրդների սոցիալիստական կուլտուրայի հետագա բազմակողմա-
նի ծաղկման ապահովումն է։ Ընդ որում այն պետք է ավելի բազմակողմանի
օգտագործի ազգային ձևերը, ավելի ու ավելի հարստացնելով նրանց միասնա-
կան սոցիալիստական բովանդակությունը։

Իր պատմական, լեզվական ու հոգեբանական առանձնահատկություննե-
րի միջոցով դրսևորելով հասարակական կյանքը, ամեն մի ազգ հանդես է բե-
րում մարդկային կուլտուրայի այս կամ այն ձևերի յուրահատուկ մշակում։
Սոցիալիզմի ժամանակ այդ ձևերը, բնականորեն արտահայտում են միասնա-
կան հասարակական-սոցիալական բովանդակություն։ Դրա հետ միասին ազ-
գերի քաղաքական ու տնտեսական կյանքի սերտաճումը ազդում է նաև կուլ-
տուրայի ազգային ձևերի վրա, որոնք կատարելագործվում են, մերձենում
միմյանց և փոխազդում իրար վրա։ Այսպիսի բարերար փոխազդեցության շը-
նորհիվ զարգանում է բոլոր սովետական ազգերի ընդհանուր ինտերնացիոնալ
կուլտուրան, իսկ յուրաքանչյուր ազգի կուլտուրա հարստանում է նոր ձևերով,
ինտերնացիոնալ բնույթի նոր ստեղծագործություններով։

Սոցիալիզմի կառուցման ժամանակ սկսված այս պրոցեսը բնորոշ է մեր
երկրի բոլոր ազգերի ու ազգությունների կուլտուրայի համար։ Ազգային ձևե-
րի բազայի վրա մշակված ճարտարապետության, երաժշտության, գրականու-
թյան, նկարչության, կինոարվեստի նոր ձևերը, չկորցնելով իրենց ինքնա-
տիպությունը, յուրաքանչյուր ազգի կուլտուրան ավելի են մերձեցնում մյուս
ազգերի կուլտուրային, այս կամ այն ազգային ձևը այնպիսի ինտերնացիո-
նալ համամարդկային ձև են դարձնում, որն ընդունելի ու ըմբռնելի է մյուս
ազգերի համար։ Մյուս կողմից՝ ազգային կուլտուրան սոցիալիզմի ծավալած

լայն հաղորդակցության և կուլտուրական փոխանակության շնորհիվ դուրս
է գալիս ռեսպուբլիկաների շրջանակներից և դառնում ընդհանուր կուլտուրայի
մասը։ Ռևոլյուցիայից առաջ հայկական հնադարյան մշակույթը Հայաստանի
սահմաններից դուրս հայտնի էր սոսկ անհատներին։ Իսկ այժմ, հատկապես
վերջին տարիներին, հայ գրականության ներկայացուցիչների՝ Թումանյանի,
Իսահակյանի, Շիրվանզադեի, Րաֆֆու, Դեմիրճյանի, Անանյանի և ուրիշների
ստեղծագործությունները բազմիցս հրատարակվել ու վերահրատարակվել են
ռուսերեն, ուկրաիներեն և այլ լեզուներով. Կոմիտասի, Սպենդիարյանի, Չու-
խաջյանի, Հարությունյանի, Բաբաջանյանի երաժշտությունը հնչում է Մոսկ-
վայի, Լենինգրադի և շատ այլ քաղաքների բեմահարթակներից, հաղորդվում
է ռադիոյով. Պարոնյանի, Շիրվանզադեի, Սունդուկյանի, Բորյանի պիեսները
բեմադրվում են մյուս ազգերի թատրոններում։ Ազգային արվեստի ավելի ու
ավելի մեծ թվով գործիչներ են դուրս գալիս միութենական ասպարեզ ու դառ-
նում միասնական ինտերնացիոնալ արվեստի գործիչներ։ Միայն հայկական
արվեստի տասը ներկայացուցիչներ արժանացել են Սովետական Միության
ժողովրդական արտիստի բարձր կոչման, հայ կոմպոզիտոր Արամ Խաչատուր-
յանը և նկարիչ Մարտիրոս Սարյանն արժանացել են միութենական բարձրա-
գույն պարգևի՝ Լենինյան մրցանակի։ Մյուս կողմից հայ ազգի կուլտուրական
կյանքի մեջ օրգանապես ներթափանցել է ռուսական, ուկրաինական, վրացա-
կան, ադրբեջանական և մյուս ազգերի կուլտուրան։ Տրադիցիա են դարձել Հա-
յաստանի, Վրաստանի, և Ադրբեջանի թատերական ու երաժշտական կոլեկ-
տիվների ամենամյա փոխադարձ այցերը։ Առանց բացառության նույնպիսի
տվյալներ կարելի է բերել Միության բոլոր ազգերի կյանքից։

Ահա այս երևույթներն են, որ զարգանալու են սոցիալիզմից կոմունիզ-
մին անցնելու ընթացքում և հիմք են հանդիսանալու յուրաքանչյուր ազգի ա-
ռաջադիմական տրադիցիաները պաշտպանելու և դրանք սովետական բոլոր
մարդկանց սեփականությունը դարձնելու համար։ Մի կողմից՝ յուրաքանչյուր
ազգի կուլտուրական գանձարանն ավելի ու ավելի կհարստանա ինտերնացիո-
նալ բնույթի ստեղծագործություններով, մյուս կողմից՝ հենց դրա հիման վրա
ավելի կզարգանա սովետական բոլոր ազգերի ընդհանուր ինտերնացիոնալ
կուլտուրան։

Սոցիալիզմի կառուցման ընթացքում ժամանակակից գիտությունը, որ-
պես ազգային կուլտուրայի ձև, հանդես եկավ Միության բոլոր ազգերի ու
ազգությունների կյանքում։ Գիտության ազգային կադրերի աննախընթաց ա-
ճի շնորհիվ բոլոր ազգային ռեսպուբլիկաներում ստեղծվել են գիտության
բազմաթիվ օջախներ, այդ թվում նաև գիտությունների ակադեմիաներ, ո-
րոնցից ամեն մեկն առաջատար է այս կամ այն բնագավառում։ Այսպես, վեր-
ջին տարիներին Սովետական Հայաստանում հատկապես բարձր արդյունք-
ների են հասել այնպիսի ճյուղեր, ինչպես՝ աստրոֆիզիկան, բարձրագույն մա-
թեմատիկան, քիմիան, տեսական մեխանիկան, բժշկությունը, Սովետական
Վրաստանում՝ մաթեմատիկան, կիբեռնետիկան, բժշկությունը, մեխանիկան,
Սովետական Ադրբեջանում՝ երկրաբանությունը, քիմիան, Ղազախստանում՝
երկրաբանությունը և այլն։ Դրա հետ միասին գիտությունը բնավ չի սահմա-
նափակվում ազգային շրջանակներում և միավորվում է որպես սովետական
ընդհանուր գիտություն։

Միութենական գիտական հիմնարկներում գնալով ընդլայնվում է տարբեր



ազգերի գիտնականների մասնակցությունը։ ՍՍՌՄ գիտությունների ակադե-
միայի իսկական անդամներ են՝ ականավոր գիտնականներ աստրոֆիզիկոս
Համբարձումյանը, բիոքիմիկոս Սիսակյանը, քիմիկոս Կնունյանցը, ֆիզիկոս
Ալիխանյանը, վրացի գիտնականներ մաթեմատիկոսներ Մուսխելիշվիլին և
Վեքուան, կենսաբան Բերիտաշվիլին, ադրբեջանցի գիտնական քիմիկոս Թոփ-
չիևը։ Ավելի քան տասնյակ սովետահայ գիտնականներ ՍՍՌՄ Գիտություննե-
րի ակադեմիայի թղթակից անդամներ են։ Սոցիալիզմից կոմունիզմին անց-
նելու շրջանում գիտությունը գնալով ավելի մեծ տեղ է գրավում մեր երկրի
բոլոր ազգերի ու ազգությունների կուլտուրայի մեջ, ընդ որում այդ պրոցեսը,
անկասկած, ուղեկցվում է գիտության նորանոր ճյուղերի զարգացմամբ։ Այս-
պիսով, սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շնորհիվ ազգային կուլտուրայի
սոցիալիստական բովանդակության զարգացման հետ մեկտեղ ավելի բազմա-
զան՝ են դառնալու նրա ձևերը և, մյուս կողմից՝ ավելի բուռն է զարգանալու
սովետական ազգերի ընդհանուր ինտերնացիոնալ կուլտուրան։

Ազգային հատկանիշների մեջ առանձնահատուկ տեղ է գրավում լեզուն։
Այդ իսկ առումով նրա պահպանումն ու զարգացումը ազգերի զարգացման
կարևորագույն մոմենտներից մեկն է։ Դրա համար էլ Կոմունիստական պար-
տիայի Նոր Ծրագիրը նշում է, որ մեր երկրում ազգերի զարգացման
հիմնական խնդիրներից մեկն է հետագայում էլ ապահովել ՍՍՌՄ ազգերի
լեզուների ազ.ատ զարգացումը։ Ծրագրում որոշակիորեն ասված է. «ՍՍՌՄ
յուրաքանչյուր քաղաքացու համար ապահովել լիակատար ազատություն խո-
սելու, իր երեխաներին դաստիարակելու և ուսման տալու ցանկացած լեզվով,
թույլ չտալով ոչ մի արտոնություն, սահմանափակում կամ հարկադրանք այս
կամ այն լեզվի գործածության հարցում»։

Սոցիալիզմի կառուցումը հանգեցրել է մեր երկրի ազգերի ու ազգու-
թյունների լեզուների չտեսնված զարգացման։ Ո՛չ ուզբեկական, ո՛չ ադրբե-
ջանական, ո՛չ տաջիկական, ո՛չ կիրգիզական, ո՛չ էլ հայոց լեզուն անցյալում
երբեք զարգացման այնքան բարձր աստիճանի չեն հասել, այնքան հարուստ
չեն եղել, ինչպես այժմ։ Եվ ոչ միայն այդ։ Նրանք այժմ դարձել են պետական,
տնտեսական, իրավական, կուլտուրական ամենալայն հարաբերությունների
արտահայտման միջոց։ Երբեք անցյալում հայոց կամ մյուս լեզուներով այն-
քան գիրք, ամսագիր ու թերթ չի հրատարակվել, այնքան մարդ կրթություն
չի ստացել, որքան այժմ։ Երբեք անցյալում նրանք այնքան ազատ, անկաշ-
կանդ ու լայն չեն հնչել, այնքան զարգացած ու հատակ չեն եղել։ Այժմ հայոց
և մյուս ազգերի լեզուներն ավելի հարուստ են, քան երբևէ, որովհետև նրանց
մեջ մտել են կամ հին բառապաշարի վրա մշակվել են բազմահազար գիտա-
կան, տեխնիկական ու քաղաքական տերմիններ։ Եվ զարգացման այդ պրո-
ցեսը շարունակվում է բուռն կերպով։

Միաժամանակ մեր երկրի ազգերի կյանքում բնականորեն առաջնակարգ
տեղ է գրավում ռուսաց լեզուն, որը փաստորեն դառնում է Սովետական Միու-
թյան բոլոր ժողովուրդների ազգամիջյան հաղորդակցման ու համագործակ-
ցության ընդհանուր լեզու։ Այսպիսով, ազգերի հետագա զարգացումն ընթա-
նալու է ազգային լեզուների հետագա զարգացման ու հարստացման և ռուսաց
ու այլ լեզուները կամովին յուրացնելու ճանապարհով։

Ազգերի զարգացման կարևոր խնդիրներից մեկն էլ հոգևոր կերպարի՝
աշխարհըմբռնողության, բարոյական հայացքների հետագա վերափոխման

ապահովումն է։ Անցած քառասունհինգ տարիներում մեր երկրի ազգերի մեջ հիմնականում տիրապետող է դարձել գիտական-մատերիալիստական աշխարհայացքը, աշխատանքի, սեփականության, ընտանիքի, հասարակության մյուս անդամների նկատմամբ նոր, կոմունիստական վերաբերմունքը, կյանքում իրականություն է դառնում «մարդը մարդուն ընկեր ու բարեկամ» վեհ սկզբունքը։ Սակայն այս բնագավառում դեռևս կան անցյալի զգալի մնացուկներ։ Դեռևս խոշոր թիվ են կազմում զանազան կրոնների հավատացյալները, զգալի են բարոյականության կոմունիստական նորմերի խախտումները, բյուրոկրատիզմը, կնոջ նկատմամբ ֆեոդալական-բուրժուական վերաբերմունքի մնացուկները և անցյալի այլ արատավոր սովորույթներ։ Հաճախ դրանք սքողվում են հենց ազգային սովորույթի, ազգային հոգեբանության քողի տակ։

Անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում տեղ գտած մի շարք բացասական երևույթներ, հատկապես սովետական օրինականության խախտումներն, այս կամ այն չափով սնունդ են տվել ազգային անվստահության մոմենտների վերակենդանացմանը, ազդել ազգերի ինտերնացիոնալիստական հարաբերությունների վրա և թուլացրել անցյալի մնացուկների դեմ մղվող պայքարը, որի հետևանքով նրանք հետպատերազմյան շրջանում զգալիորեն աշխուժացան։ Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում հիմնական խնդիրներից մեկը հենց ազգային քողի տակ թաքնվող այդ մնացուկների հաղթահարումն է, բոլոր ազգերի ու ազգությունների գիտակցության մեջ գիտական աշխարհըմբռնման ու կոմունիստական բարոյականության սկզբունքների անվերապահ տիրապետության հաստատումը։ Անկասկած դրա հետ միասին կզարգանան ազգային դրական սովորույթները, որոնք աստիճանաբար կձուլվեն ընդհանուր ինտերնացիոնալիստական տրադիցիաների հետ։

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում ազգերի զարգացման կարևորագույն մոմենտներից մեկը ինտերնացիոնալիստական սկզբունքների հետագա հետևողական կիրառումն է, ժողովուրդների բարեկամության ամրապնդումը և անհաշտ պայքարն ամեն տեսակի նացիոնալիզմի ու շովինիզմի դրսևորումների ու մնացուկների դեմ։

Սոցիալիզմի կառուցման ընթացքում մեր երկրում ազգային հարցը լուծվել է վերջնականապես և անվերադարձ։ Կիրառելով ազգային հարցի միակ ճիշտ՝ մարքս-լենինյան ըմբռնումը, Սովետական Միության Կոմունիստական պարտիան կարողացավ հաստատել ու ամրապնդել մեր երկրի ժողովուրդների անխախտ բարեկամությունը և ամենասերտ համագործակցությունը, որի հիմքը արտադրության միջոցների համաժողովրդական սեփականությունն ու սոցիալիստական արտադրական հարաբերություններն են։ Ժողովուրդների իրական բարեկամությունը մեր հասարակարգի զարգացման հիմնական գործոններից մեկն է և այն գնալով ավելի ու ավելի է ամրապնդվում, իր վառ արտահայտությունը գտնելով այնպիսի ինտերնացիոնալիստական գործողությունների մեջ, ինչպես բոլոր ազգերի ու ազգությունների համատեղ ջանքերը խամ ու խոպան հողերի յուրացման, Սիբիրի էներգետիկ հսկաների կառուցման և նման այլ հոյակապ գործերում։ Սոցիալիզմից կոմունիզմին անցումն ընդլայնում է կադրերի մշտական փոխանակումը ազգերի միջև, նրանց նպատակահարմար օգտագործումն ամբողջ Միության մասշտաբով։ Ազգերի ներկայացուցիչների նման փոխանակումն ավելի է ամրապնդում նրանց ինտերնացիոնալ համախմբումը, եղբայրական միասնությունը, նպաստում է նրանց հետագա մերձեցմանը։



Դրա հետ մեկտեղ մեր կյանքում դեռևս նկատվում են ազգային սահմանափակության, ազգային անցյալի իդեալականացման կամ ազգային նիհիլիզմի, շովինիզմի ու նացիոնալիզմի առանձին արտահայտություններ՝ որպես նախորդ, ոչ սոցիալիստական շրջանի գաղափարախոսության մնացուկներ։ Նման երևույթներն արտահայտվում են պատմական անցյալի գնահատման, ազգային առանձին սովորույթների պահպանման հարցերում, զգացվում են այս կամ այն ազգի ներկայացուցիչների նկատմամբ անհատ մարդկանց վերաբերմունքի մեջ։ Դրանց պահպանման պատճառներից մեկն էլ անհատի պաշտամունքի շրջանում Ստալինի կողմից ազգային հարցի և՛ թեորիայում, և՛ պրակտիկայում թույլ տրված կոպիտ սխալներն են, որոնք արտահայտվեցին Հյուսիսային Կովկասի մի շարք ազգությունների ազգային ինքնավարության վերացման, այդ ազգություններին անօրինական ճանապարհով երկրի այլ շրջանները տեղափոխելու, տարբեր ազգերի նկատմամբ այս կամ այն հարցում ոչ ճիշտ վերաբերմունք ցուցաբերելու մեջ։ Մեր պարտիայի XX համագումարից հետո նման խախտումները ո՛չ միայն ողջ խորությամբ բացահայտվեցին, այլև ուղղվեցին, և հող ստեղծվեց մեր երկրի ազգերի ընդհանրական և յուրահատուկ շահերի ճիշտ զուգակցման համար։

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանի գլխավոր մոմենտներից մեկն էլ հենց այս մնացուկների լիակատար հաղթահարման գործն է, ազգերի ինտերնացիոնալ համախմբման, նրանց եղբայրական միասնության հետագա ամրապնդումը, որովհետև, ինչպես իրավացիորեն նշվում է ՍՄԿՊ Ծրագրում, «յուրաքանչյուր սովետական ռեսպուբլիկա կարող է այսուհետև էլ ծաղկել և ամրապնդվել միայն ՍՍՌՄ եղբայրական սոցիալիստական ազգերի մեծ ընտանիքում»։

Բուրժուական որոշ գաղափարախոսներ ճգնում են բանն այնպես ներկայացնել, թե իբր ՍՍՌՄ-ում ազգերը կորցնում են իրենց ինքնուրույնությունը, իրավունքները, ենթարկվում են ասիմիլյացիայի ու ճնշման։ Մեր իրականությունը լիովին հերքում է այդ անհիմն հերյուրանքները, իսկ մեր երկրում ազգերի զարգացման արդեն իսկ արտահայտվող ուղղությունը և պարտիայի Ծրագրում առաջադրված խնդիրները մեկ անգամ ևս ապացուցում են, որ կոմունիզմը հանգեցնում է ազգերի իսկապես ազատ ու անարգել զարգացման, նրանց լեզվի ու կուլտուրայի աննախընթաց ծաղկման և, մյուս կողմից՝ ապահովում է նրանց մերձեցումը, իսկական եղբայրական միասնությունը կյանքի բոլոր բնագավառներում։

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ՊԱՐՏՔՆ Է

Ինչ ձեռնարկություն էլ մտնենք, որ կառույցն էլ գնանք, ամենուրեք ամե-
նաաչքի ընկնող տեղում տեսնում ենք պատվո տախտակները։ Լավագույններից
լավագույնները, արտադրության առաջավորները, մարդիկ, որոնց աշխատանքն
օրինակ է հանդիսանում ուրիշների համար, արժանանում են այդ բարձր պատ-
վին։ Բայց եթե ձեռնարկությունը արտադրական բարձր հաջողությունների է
հասել, եթե կոլեկտիվի կենցաղի մեջ աստիճանաբար արմատավորվում են
կոմունիստական սկզբունքները, ապա այդ գործում քիչ երախիք չունեն նաև
այն մարդիկ, որոնց աշխատանքը հնարավոր չէ հաշվի առնել ոչ ըստ քանա-
կի, ոչ էլ ըստ որակի։ Դրանք հասարակական աշխատողներն են, այն հիմնա-
լի կազմակերպիչները, որոնք բոլորին մոբիլիզացնում են աշխատանքային նո-
րանոր սխրագործություններ ու փառավոր գործեր կատարելու։

Յուրաքանչյուր կոլեկտիվի կյանքում սերտորեն, իրար կողքի հարատե-
վում են արտադրական և հասարակական կյանքը։ Երկրորդը մշտապես լրաց-
նում է առաջինին, բայց միևնույն կոլեկտիվի կյանքի այդ երկու կողմերը ծա-
ռայում են մեկ նպատակի, և նրանց իրարից բաժանել չի կարելի։ Ուստի և կո-
մունիստի գործունեությունը գնահատելիս պետք է ելնել այդ չափանիշից, նը-
րան տեսնել միաժամանակ և՛ արտադրության մեջ, և՛ հասարակական
կյանքում։

Պարտիայի անդամից պահանջվում է ո՛չ միայն ազնվորեն ու անձնվեր
աշխատել, լինել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի
օրինակ, այլև ուրիշներին տանել իր հետևից, դառնալ մասսաների ուղեցույցը։
Հասարակական աշխատանքը պարտիայի յուրաքանչյուր անդամի կանոնադրա-
կան պարտականությունն է։ Ամեն մի կոմունիստ պարտավոր է ակտիվորեն
մասնակցել երկրի քաղաքական կյանքին, հասարակական պարտքը կատարե-
լու օրինակ տալ, օգնել կոմունիստական հասարակական հարաբերությունն-
րի զարգացմանն ու ամրապնդմանը։ Հենց հասարակական աշխատանքի մեջ է,
որ երևան են գալիս կոմունիստի գործնական ու բարոյական հատկություննե-
րը, բացվում է նրա ներքնաշխարհը։

Հասարակական աշխատանքում չի կարող լինել գլխավոր և երկրորդական։
Պարտիական հանձնարարությունները հավասարապես կարևոր են, որովհետև
դրանք բոլորն էլ ծառայում են մեկ նպատակի՝ պարտիայի յուրաքանչյուր
անդամին հաղորդակից անել հասարակական աշխատանքին, կազմակերպչա-
կան ունակություններ զարգացնել նրա մեջ, բարձրացնել պարտիական կազ-
մակերպությունների մարտունակությունը։



Որպեսզի այս կարևոր աշխատանքն իր պտուղները տա, այն պետք է կա-
տարել մտածված, հաշվի առնելով յուրաքանչյուրի անհատական ընդունակու-
թյունները, մարդու անձնական հատկությունները և ցանկությունը։ Որտեղ
հասարակական աշխատանքը կատարվում է առանց այս պայմանները հաշվի
առնելու, այնտեղ այն ձևական բնույթ է կրում և կատարվում է անհոգի, առանց
եռանդի։

Յուրաքանչյուր կոլեկտիվում, ամեն մի պարտիական կազմակերպության
մեջ բոլոր կոմունիստներին հասարակական կյանքին մասնակից անելու լայն
հնարավորություններ կան։ Հարկավոր է միայն հմտորեն դասավորել ուժերը,
ճիշտ ու խելացի բաշխել հանձնարարությունները։

Վերցնենք, օրինակ, Երևանի ավտոդողերի գործարանը։ Այստեղ համար-
յա բոլոր կոմունիստները հասարակական-պարտիական հանձնարարություն ու-
նեն։ Պարտբյուրոն (քարտուղար՝ Մ. Գիժլարյան) ամեն մեկին որևէ գործ է
հանձնարարել՝ ըստ նրանց ուժերի ու հակումների։ Կոմունիստներից ոմանք
ընտրված են գործարանի պարտբյուրոյի, գործարկոմի կազմում, ղեկավարում
են ցեխային պարտիական կազմակերպությունները։ Պարտիայի անդամներից
24-ը ագիտատորներ են, իսկ 15-ը՝ պրոպագանդիստներ։ Նշանակալից գործ
է կատարում հասարակական կարգ ու կանոնը պահպանող ժողովրդական դրու-
ժինան, որի անդամներից յոթանասունը պարտիայի անդամներ են։ Պարտկազ-
մակերպության անդամներից 19-ը ադմինիստրացիայի գործունեության նկատ-
մամբ պարտիական վերահսկողությունն իրականացնող հանձնաժողովների
անդամ են, մյուսները աշխատում են պատի թերթի խմբագրական կոլեգիա-
ներում, արհմիութենական և այլ հասարակական կազմակերպություններում։

Բացի այդ, կոմունիստներից շատերը պարբերաբար ստանում են ժամա-
նակավոր զանազան հանձնարարություններ. այսպես՝ հարցեր են նախապատ-
րաստում քննարկման համար, մասնակցում ստուգատեսներին, մամուլի տա-
րածմանը և այլ հասարակական-քաղաքական կամպանիաների։ Այսպես. եփ-
ման ցեխի փականագործների բրիգադավար Ս. Քրմոյանն իր գործի վարպետն
է, նորարար։ Արտադրական լարված աշխատանքն ընկ. Քրմոյանին չի խան-
գարում ակտիվորեն մասնակցելու կոլեկտիվի հասարակական կյանքին։ Գոր-
ծարանի պարտբյուրոյի անդամի պարտականությունների հետ մեկտեղ, նա
ակտիվորեն մասնակցում է նաև մեքենայացման, ավտոմատացման ու ռացիո-
նալիզատորական հարցերի գծով ադմինիստրացիայի գործունեությանը վե-
րահսկող պարտիական հանձնաժողովի աշխատանքին։ Նույն գործարանի ան-
վանի բանվոր Մ. Կարամանուկյանը երկար ժամանակ աշխատանքի առաջա-
վոր փորձի ուսուցման հասարակական հրահանգիչ էր։ Պարտիական այդ
հանձնարարությունը նա կատարում էր մեծ բարեխղճությամբ. տեղամասի
երիտասարդ բանվորներին օգնում էր տիրապետելու առաջավոր մեթոդներին,
սիրով հաղորդում էր նրանց իր աշխատանքի հարուստ փորձը։ Ստուգելով Մ.
Կարամանուկյանի ուժերը հասարակական աշխատանքի տվյալ բնագավառում՝
պարտբյուրոն նրան ավելի լուրջ հանձնարարություն տվեց՝ մի խումբ կոմու-
նիստների հետ միասին վերահսկել թողարկվող արտադրանքի որակին։

Անցյալ տարի բավականին իջել էր թողարկվող ավտոդողերի որակը։
Գործարանի պարտբյուրոն իր ձեռնարկած կազմակերպական-տեխնիկական
միջոցառումներից բացի արտադրական բնույթի հանձնարարություններ տվեց
մի խումբ կոմունիստների։ Նրանցից ամեն մեկն ստացավ կոնկրետ առաջա-

դրանք, գործունեության կոնկրետ տեղամաս։ Արտադրանքի բարձր որակի
համար կոմունիստները պայքարի հանեցին ամբողջ կոլեկտիվը։ Արդյունքը
գոհացուցիչ եղավ, արտադրանքի որակը զգալի չափով բարձրացավ։

Պարտբյուրոն և ցեխային պարտիական կազմակերպությունները կոմու-
նիստներին հանձնարարություններ տալուց հետո շարունակ հետևում են կա-
տարման ընթացքին և գործնական օգնություն ցույց տալիս նրանց։

Չի կարելի համաձայնել պարտիական այն ղեկավարների հետ, որոնք
իրենց գործունեության ընթացքում հենվում են միայն ակտիվի վրա, հասարա-
կական հանձնարարությունները բարդում մի քանի մարդկանց ուսերին։ Այդ-
պիսի ղեկավարները սովորաբար պատճառաբանում են, թե կոմունիստները
շատ են, իսկ հանձնարարությունները՝ քիչ, ուստի և հնարավոր չէ պարտիայի
բոլոր անդամներին ընդգրկել հասարակական աշխատանքներում։ Բայց այդ-
պես դատել կարող են պարտկազմակերպությունների այն քարտուղարները,
որոնք չեն ուզում հնարավորին չափ բազմամարդ դարձնել ակտիվը։

Պարտիական կազմակերպությունների ամբողջ քաղաքական ու կազմա-
կերպչական գործունեությունը հետապնդում է մեկ հիմնական նպատակ՝ մըշ-
տապես բարելավել ձեռնարկության արտադրական ցուցանիշները, ապահովել
պետական պլանների կատարումը։ Պարտիականների ամենապատասխանատու
գործը պետք է լինի արտադրական բնույթի հանձնարարություններ կատարելը։
Մինչդեռ ամեն տեղ չէ, որ այդպես է։ Ահա, օրինակ, Երևանի ավտոպահես-
տամասերի գործարանում սիստեմատիկաբար թերակատարվում են պետական
պլանները, չի ապահովվում այնպիսի կարևոր ցուցանիշների կատարումը,
ինչպիսիք են՝ արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, աշխատանքի արտադրո-
ղականության բարձրացումը. ցածր է արտադրանքի որակը։

Իսկ ինչո՞ւ ավտոպահեստամասերի գործարանի կոլեկտիվը չի կարողա-
նում հաղթահարել ձեռնարկության ետ մնալը։ Արդյոք ա՞յն է պատճառը, որ
պարտիական կազմակերպությունը բավարար չափով չի զբաղվում արտադրու-
թյան հարցերով, հեռու է կանգնած արտադրական կյանքից։ Ամենևին ոչ։
Պարտբյուրոյի նիստերում, ժողովներում շատ հաճախ են քննարկվում ձեռ-
նարկության ցավոտ հարցերը և հաճախ շատ բովանդակալից որոշումներ են
ընդունվում։ Սակայն որոշ ղեկավարների անտարբեր վերաբերմունքի, վար-
պետների, տեղամասերի ու հերթափոխությունների պետերի՝ հանձնարարված
գործի նկատմամբ ցածր պատասխանատվության հետևանքով ոչինչ չի փոխ-
վում, իսկ պարտիական կազմակերպությունը ինչպես հարկն է չի զբաղվում
դրանով, ձեռնարկության կոլեկտիվին չի մոբիլիզացնում եղած թերությունն-
րը վերացնելու։ Այդ ամենի մասին շատ է խոսվել պարտիական կոլեկտիվում,
բայց ամեն անգամ խոսվել է ընդհանուր ձևով, առանց թերությունների պատ-
ճառների խոր վերլուծության։ Կարելի էր, օրինակ, մեկ կամ մի քանի կոմու-
նիստի հանձնարարել՝ ուսումնասիրել վատորակ արտադրանք տալու պատ-
ճառները և կոնկրետ առաջարկություններ ներկայացնել այս կամ այն տեղա-
մասի որակական ցուցանիշները բարձրացնելու միջոցների մասին։ Կամ թե՝
կոմունիստներին տեղափոխել (թեկուզ ժամանակավորապես) առանձին գը-
ծեր, տեղամասեր, ցեխեր և պարտավորեցնել՝ դուրս բերել նրանց նեղ վիճա-
կից։ Այստեղ արդյունավետ չեն աշխատում նաև ադմինիստրացիայի գործու-
նեությունը վերահսկող պարտիական հանձնաժողովները։

Ի դեպ ասենք, որ հասարակական աշխատանքն այստեղ պատշաճ ուշա-



դրության չի արժանանում։ Այսպես, դարբնոցային ցեխի ագիտատոր, ՍՄԿՊ
անդամ Գ. Կարապետյանը բարեխղճորեն չի կատարում իր պարտականությու-
նը, չի զբաղվում ինքնազարգացմամբ, ագիտացիոն աշխատանքն ի սպաս չի
դնում ձեռնարկության խնդիրների կատարմանը։ Պարզ է, որ նրա կատարած
գործը ամենևին չի նպաստի դարբնոցային ցեխի և ամբողջ ձեռնարկության
աշխատանքի բարելավմանը։ Ահա մի այլ օրինակ։ Մ. Մկրտչյանը արդեն
հինգերորդ տարին է, ինչ ընտրվում է գործարանի Կարմիր խաչի ընկերության
նախագահ, բայց նա փաստորեն տապալել է իրեն հանձնարարված գործը։
Մ. Մկրտչյանի ամբողջ գործունեությունը սահմանափակվել է միայն անդա-
մավճարներ հավաքելով։ Նա չի ապրում կոլեկտիվի կյանքով և, բնականա-
բար, նրա անտարբեր վերաբերմունքը բացասաբար է անդրադարձել իր հասա-
րակական աշխատանքի վրա։ Մինչդեռ նրան պետք է անհանգստացներ արտա-
դրական տեղամասերի հակասանիտարական վիճակը և, եթե նա իմանար, թե
այդ ինչպիսի վնաս է պատճառում արտադրությանն ու աշխատավորների ա-
ռողջությանը, թերևս, այդքան անտարբեր չվերաբերվեր իր հասարակա-
կան հանձնարարության նկատմամբ։ Իսկ պարտիական բյուրոն կոմունիստին
հանձնարարություն տալուց հետո չի օգնել նրան և չի հետաքրքրվել նրանով,
թե ինչպես է կատարվում այն։

Հասարակական աշխատանքը խոշոր նշանակություն ունի երիտասարդ
կոմունիստներին և ՍՄԿՊ անդամության թեկնածուներին ճիշտ դաստիարա-
կելու համար։ Պարտիայի շարքերը մտնելու առաջին իսկ օրերից նրանք պետք
է ընդգրկվեն կոլեկտիվի հասարակական կյանքում, կազմակերպչի, մասսա-
ների ղեկավարի փորձ ձեռք բերեն։ Անհրաժեշտ է խելացի կազմակերպել այդ
գործը, հակառակ դեպքում, աշխատանքի այս կարևոր բնագավառին ձևական,
անհոգի մոտեցման դեպքում կոմունիստի մեջ կմեռնի եռանդը, հասարակա-
կան աշխատանքի նկատմամբ կստեղծվի անտարբեր վերաբերմունք։ Շատ
հաճախ այդպես է լինում այնտեղ, որտեղ պարտիական կազմակերպություն-
ների քարտուղարները դեռևս անփորձ երիտասարդ կոմունիստներին ուժից վեր
հանձնարարություններ են տալիս։ Դժվարությունների մեջ ընկնելով՝ երիտա-
սարդ կոմունիստը կորցնում է հավատն իր ուժերի նկատմամբ և բարձիթողի է
անում հանձնարարությունը։ Անհրաժեշտ է կոմունիստների ուժերը փորձել
նախ՝ հասարակ, պարզ հանձնարարություններով և հետո միայն անցնել ավելի
բարդ ու պատասխանատու հանձնարարությունների։ Կարևոր է նաև այն հանգա-
մանքը, թե պարտիական կազմակերպությունն ինչպես է հետևում կոմունիստ-
ների հասարակական աշխատանքին և ինչպես է օգնում նրանց այդ գործում։

Թե ովքեր կարող են լինել պարտիայի անդամ, ամենայն պարզությամբ
ասված է ՍՄԿՊ Կանոնադրության մեջ։ Բայց երիտասարդ բանվորին, ինժենե-
րին, առաջավոր կոլտնտեսականին պարտիայի շարքերն ընդունելուց առաջ
անհրաժեշտ է նախապատրաստել, փորձել ու մարզել նրան հասարակական
աշխատանքի միջոցով։ Պարտիական կազմակերպության ղեկավարը պետք է
ստուգի ընդունվողի գործնական ու քաղաքական հատկությունները՝ նրան
կոնկրետ հանձնարարություններ տալով։ Հենց հասարակական աշխատանքով
է, որ կարելի է ո՛չ միայն ստուգել մարդու անձնական կարողությունները,
այլև նրա մեջ կոմունիստին անհրաժեշտ հատկություններ զարգացնել։ Երբեմն
պարտիական կազմակերպությունների քարտուղարները լուրջ նշանակություն
չեն տալիս դրան, տարվում են պարտիայի շարքերն ընդունվողի արտադրական

ցուցանիշներով, նրա օրինակելի վարքով, մոռանալով կարևորը՝ նրա մեջ մար-
տիկի, ղեկավարի ունակություններ զարգացնելու գործը։ Հաճախ ՍՄԿՊ ան-
դամ ընդունվող թեկնածուի անկետայում հասարակական աշխատանքին վե-
րաբերող հարցի դիմաց գրված է լինում՝ «ոչ մի»։

Իհարկե, ձևականորեն դա չի կարող արգելք լինել տվյալ անձին պարտիա-
յի մեջ ընդունելուն, բայց և այնպես այդ կարճ արտահայտությունը շատ բան
է ասում։ Դա ամենից առաջ ցույց է տալիս, որ տվյալ պարտիական կազմա-
կերպությունը քիչ հոգ է տանում պարտիայի շարքերի որակական կազմի մա-
սին, որ նա փաստորեն պարտթեկնածուներին չի տվել համապատասխան
հանձնարարություններ, անտեսել է կոմունիստների դաստիարակության այն-
պիսի կարևոր լծակը, ինչպիսին է հասարակական աշխատանքը։

Հայտնի են շատ դեպքեր, երբ հասարակական աշխատանքի մեծ փորձ ու
հմտություն ունեցող կոմունիստը, որն անցյալում շատ պարտիական հանձնա-
րարություններ է կատարել բարեխղճորեն, ժամանակի ընթացքում կորցնում
է իր եռանդը և դառնում պասիվ։ Հաճախ այդպես է պատահում թոշակառու-
ների, ընտանեկան հոգսերով ծանրաբեռնված կանանց հետ։

Արդեն մի քանի տարի է, ինչ տնային կառավարչություններին կից ստեղծ-
վել ու հաջողությամբ գործում են սկզբնական պարտիական կազմակերպու-
թյուններ, որոնք թոշակառուներին, պաշտոնաթող սպաներին ու տնային տըն-
տեսուհիներին հասարակական-քաղաքական կյանքի մեջ ներգրավելու, նրանց
օգնությամբ կոմունիստական համակեցության նորմաներն ամրապնդելու ուղ-
ղությամբ քիչ գործ չեն կատարել։ Տնային կառավարչությունների սկզբնական
պարտկազմակերպությունների ամբողջ գործունեությունը հիմնվում է ակտիվ
թոշակառուների և տնային տնտեսուհիների վրա։ Նրանց մի մասն ընտրված է
պարտիական բյուրոների կազմում, մյուսն աշխատում է թաղային կոմիտե-
ներում, ընկերական դատարաններում և այլուր։ Կարելի է ստեղծել բակային
ծնողական խորհուրդներ, հասարակական սանիտարական տեսչություններ,
բարեկարգման, կուլտուր-մասսայական աշխատանքի հանձնաժողովներ և այլն։

ՍՄԿՊ XXII համագումարը նշեց, որ անհրաժեշտ է ավելի զարգացնել հա-
սարակական հիմունքները պարտիական աշխատանքում։ Ամենուրեք պար-
տիական կոմիտեներին կից ստեղծվում են արտահաստիքային բաժիններ, գա-
ղափարական ու կազմակերպական-պարտիական աշխատանքի վանազան
հարցերը վարող հանձնաժողովներ։ Այս գործում պետք է ներգրավել ավելի ու
ավելի շատ պարտիականների։

Որպեսզի կոլեկտիվի հասարակական կյանքը լիարյուն լինի, անհրաժեշտ
է հետևողականորեն հսկել պարտիական հանձնարարությունների կատարմա-
նը։ Սակայն պարտիական կազմակերպությունների որոշ քարտուղարներ հա-
ճախ բավարարվում են ագիտատորներ նշանակելով, պատի թերթերի խմբկոլ-
ների կազմը նախատեսելով, պրոպագանդիստներ հաստատելով և այլն, իսկ
հետո նրանց մասին հիշում են, երբ գործը տապալվում է, կամ՝ նոր ընտրու-
թյունների նախօրյակին։

Մշտական վերահսկողության բացակայությունը, անտարբերությունը հա-
սարակական աշխատանքի նկատմամբ առաջացնում է անպատասխանատվու-
թյուն, նվազեցնում է կոմունիստների նախաձեռնությունը։ Հասարակական
աշխատանքին նոր թափ հաղորդելու համար անհրաժեշտ է ամենօրյա օգնու-
թյուն ցույց տալ հանձնարարություններ կատարող կոմունիստներին, աջակ-



ցել նրանց նախաձեռնություններին, լայնորեն տարածել նրանցից լավագույն-
ների փորձը։ Կյանքը պարտիական կազմակերպությունների առջև խնդիր է
դնում՝ նորանոր ձևեր գտնել՝ բարձրացնելու կոմունիստների պատասխանա-
տվությունը իրենց հանձնարարած հասարակական գործի նկատմամբ։ Դա
կնպաստի հասարակական աշխատանքի աշխուժացմանը, կբարձրացնի կոմու-
նիստների պատասխանատվությունը պարտիական հանձնարարությունների
կատարման նկատմամբ, պարտիայի անդամները և ամբողջ կոլեկտիվը ավելի
շատ կհետաքրքրվեն հասարակական կյանքով։

Պարտիական աշխատանքը ըստ էության հասարակական գործունեու-
թյան ոլորտ է,— ասաց Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXII համագումարին տված
Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— և դրան ակտիվ մասնակցություն ու-
նենալը ամեն մի կոմունիստի պարտքն է։ Մենք ընթանում ենք դեպի կոմու-
նիզմ, որտեղ մարդիկ իրենք առանց հատուկ ապարատի պիտի կառավարեն
հասարակության գործերը։ Սոցիալիստական պետականությունը հասարա-
կական ինքնավարության վերափոխվելու պրոցեսը պարտիական կազմակեր-
պությունների առջև մեծ ու պատասխանատու խնդիրներ է դնում կոմունիստա-
կան հասարակական ինքնավարության առավել կատարյալ ձևեր մշակելու, բո-
լոր կոմունիստներին ավելի լայնորեն հասարակական կյանքի մեջ ներգրավե-
լու, պարտիայի անդամներին լենինյան սրտաբացության ոգով դաստիարակե-
լու և մասսաների հետ կապերն ամրապնդելու ուղղությամբ։

Գ. ՆԵՐՍԻՍՅԱՆ
ՀԿՊ Երևանի Լենինյան շրջկոմի հրահանգիչ

«XXII համագումարը Կենտրոնական Կոմիտեին հանձնարարում
է այսուհետև ևս ամրապնդել պարտիայի միասնությունը, պայքարել
նրա մարքս-լենինյան աշխարհայացքի անաղարտության համար, պար-
տիայի շարքերն ուժեղացնել բանվոր դասակարգի, կոլտնտեսային
գյուղացիության, ինտելիգենցիայի առաջավոր մարդկանցով, է՛լ ավելի
բարձրացնել կոմունիստի կոչումը, որպես ժողովրդի երջանկության հա-
մար, կոմունիզմի համար ակտիվ, տոկուն ու գիտակից մարտնչողի»:

ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՆԱՁԵՎԻՑ

# ԳՈՐԾՈՒՄ ԵՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐՈՎ

Կիրովական քաղաքի արդյունաբերական, շինարարական և գիտահետազոտական խոշոր կազմակերպություններում ստեղծվել և հասարակական հիմունքներով գործում են քաղաքական լուսավորության տասնմեկ կաբինետներ։ Այդ գործը մեզ մոտ առաջինը նախաձեռնեց մեքենաշինական գործարանի սկզբնական պարտիական կազմակերպությունը, իսկ այնուհետև նման կաբինետներ կազմակերպվեցին նաև քիմիական և մսի կոմբինատներում, տրիկոտաժի և կոշիկի ֆաբրիկաներում, երկաթուղային հանգույցում, շինարարական տրեստում, գիտահետազոտական երկու ինստիտուտներում և ինքնուրույն կոնստրուկտորական բյուրոյում։

Շատ ժամանակ չէ, ինչ գործում են այդ կաբինետները, բայց արդեն դըրանք դարձել են գաղափարական աշխատանքի կարևոր օջախներ։ Մեքենաշինական գործարանի քաղաքական լուսավորության կաբինետը որոշակի փորձ է կուտակել կոլեկտիվի անդամների շրջանում քաղաքական-մասսայական աշխատանքը կազմակերպելու, ձեռնարկության առջև կանգնած գործնական խընդիրների հետ պրոպագանդան սերտորեն շաղկապելու բնագավառում։ Կաբինետի վարիչն է ինժեներ-կոնստրուկտոր Ալեքսանդր Պողոսյանը։ Բայց նա մենակ չէ. քաղլուսկաբինետին առընթեր ստեղծված են մեթոդական խորհուրդ և կոնսուլտացիոն խումբ, որոնցում ընդգրկված կոմունիստները սիրով ու եռանդով են կատարում պարտիական հանձնարարությունը։

Մեքենաշինարարների լավ կահավորված կաբինետում սահմանված է ամենօրյա հերթապահություն։ Ընթերցասեղանի վրա դրված են օրվա թերթերը, ամսագրերի վերջին համարները. կաբինետը ստանում է 47 անուն զանազան պարբերականներ, ստեղծված է փոքրիկ գրադարան։ Պատերին փակցված են ճաշակով պատրաստված ցուցափեղկեր, դիագրամներ, որոնք այցելուին պատմում են առաջիկա քսան տարում սովետական երկրի աննախընթաց վերելքի, ռեսպուբլիկայի, Կիրովական քաղաքի և հարազատ գործարանի զարգացման հեռանկարների մասին։ Ագիտատորներին և պրոպագանդիստներին, պարտիական լուսավորության ցանցի ունկնդիրներին օգնելու նպատակով ստեղծված են առանձին անկյուններ, ուր դրված են ՍՄԿՊ նոր Ծրագիրն ու Կանոնադրությունը, պարտիայի XXII համագումարի նյութերը, պարտիական լուսավորության ցանցի ուսումնական ծրագրերը, կազմակերպվող զրույցների ու զեկուցումների թեմատիկ պլանները, դրանց վերաբերող գրականությունը և ձեռնարկության կոլեկտիվի գործունեությունն արտացոլող բազմաթիվ նյութեր։

Կաբինետում գործ շատ կա։ Գործարանում կազմակերպված են երեք քաղխմբակ ու երկու տեսական սեմինար, դասախոսական խումբ, ագիտկոլեկտիվում ընդգրկված են 31 մարդ. լույս են տեսնում պատի թերթերը։ Անհրաժեշտ



է ոչ միայն հետևել նրանց գործունեությանը, այլև ագիտատորներին ու պրոպագանդիստներին ցույց տալ անհրաժեշտ տեսական ու մեթոդական օգնություն։ Այդ նպատակով կաբինետը պարբերաբար կազմակերպում է սեմինարներ ու հրահանգչական խորհրդակցություններ, կոլեկտիվ ու անհատական կոնսուլտացիաներ, կատարում ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի փորձի փոխանակում։ Մեթոդական խորհուրդը մեծ օգնություն է ցույց տալիս նաև գործարանի դասախոսական խմբին, որի մեջ ընդգրկված են ութ մասնագետներ։

Ներկայումս պարտիական լուսավորության ցանցում կոմունիստներն ու անպարտիականները ուսումնասիրում են ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը։ Մեթոդխորհուրդն օգնում է, որպեսզի պարապմունքներն անցնեն գաղափարական բարձր մակարդակով, ուսումնասիրվող հարցերը սերտորեն կապվեն գործարանի, արտադրության յուրաքանչյուր տեղամասի առջև ծառացած խնդիրների հետ։ Այսպես. ձուլման ցեխի քաղխմբակը երբ ձեռնամուխ եղավ «Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը պարտիայի և սովետական ժողովրդի գլխավոր տնտեսական խնդիրն է» թեմայի ուսումնասիրմանը, մեթոդխորհրդի որոշմամբ «Աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղիները ձուլման ցեխում» թեմայով խմբակում հանդես եկավ ինժեներ Ա. Ոսկանյանը։ Դա օգնեց ունկնդիրներին ավելի խոր յուրացնելու թեման, ավելի հստակ պատկերացնելու իրենց կոնկրետ անելիքները։ Քաղխմբակի պարապմունքն անցավ շատ աշխույժ, առաջ բերելով մտքերի լայն փոխանակություն, բուռն վիճաբանություն։

Մեքենաշինարարներն այս տարի հանդես եկան ևս մի նոր նախաձեռնությամբ. հունվարի 2-ից սկսեց լույս տեսնել գործարանային ամենօրյա պատի թերթը։ Նորը հաճախ հանդիպում է դիմադրության, արգելքների։ Այդպես պատահեց և այս անգամ։ Շատերը թյուր կարծիք հայտնեցին։

—Դատարկ բան է, փորձել անգամ չարժե։

—Ո՞վ պետք է զբաղվի ամենօրյա թերթով, ակտիվը հիմնականում ծանրաբեռնված է։

—Հաստիքով խմբագիր է հարկավոր...

Գործարանի պարտբյուրոյին օգնության հասավ քաղլուսկաբինետի մեթոդխորհուրդը, որի անդամների ուժերով լույս ընծայվեցին «Մեքենաշինարար»-ի առաջին համարները. հետագայում պարտբյուրոն թերթի հրատարակմանը մասնակից դարձրեց ակտիվիստներին՝ ստեղծվեց 21 հոգուց բաղկացած խմբագրական կոլեգիա։ Հաղթահարվեցին առաջին օրերի դժվարությունները։ Ներկայումս կանոնավոր կերպով լույս է տեսնում պատի թերթը, որի շուրջն արդեն համախմբվել է թղթակցական լայն ակտիվ, ցեխերում ստեղծվել են թղթակցական պոստեր։ Ամենօրյա թերթի էջերում լայնորեն լուսաբանվում է ձեռնարկության բազմաբովանդակ կյանքը, այն մոբիլիզացնում է կոլեկտիվի ուժերը՝ կատարելու արտադրական պլանները։

Ունենալով մեթոդական իր սեփական կենտրոնը, որևէ հարց լուծելու համար մեքենաշինական գործարանի պարտկազմակերպությունն այժմ շատ հազվադեպ է դիմում քաղկոմի ու նրա քաղլուսկաբինետի օգնությանը։ Բոլոր հարցերը հիմնականում լուծում է մեթոդական խորհուրդը, որն իր գործունեությամբ աշխուժություն ու թարմություն է մտցրել քաղաքական-դաստիարակչական աշխատանքում։

Պարտիայի Կիրովականի քաղաքային կոմիտեն անհրաժեշտ համարեց
մեքենաշինական գործարանի հասարակական հիմունքներով գործող քաղլուս-
կաբինետի աշխատանքի փորձը տարածել ու արմատավորել քաղաքի մյուս
կազմակերպություններում։ Հրավիրվեց պարտկազմակերպությունների քար-
տուղարների և պրոպագանդիստների սեմինար, որտեղ կաբինետի գործունե-
ության մասին զեկուցեց կաբինետի վարիչ՝ Ա. Պողոսյանը։ Սեմինարի մաս-
նակիցներից շատերը մինչ այդ եղել էին մեքենաշինական գործարանում, մո-
տիկից ծանոթացել կաբինետի աշխատանքին։
Որոշ ժամանակ անց, մեքենաշինարարների օրինակով քաղլուսկաբի-
նետներ ստեղծվեցին նաև քաղաքի մյուս խոշոր ձեռնարկություններում։
Անհրաժեշտ է նշել, որ մինչ այդ Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական
կոմբինատում, շինարարական տրեստում և երկաթուղու Կիրովականի հան-
գույցում գոյություն ունեին քաղլուսկաբինետներ՝ հաստիքային աշխատողնե-
րով։ Միանգամայն ճիշտ վարվեցին վերոհիշյալ պարտկազմակերպություննե-
րը, իրենց կաբինետների աշխատանքը դարձնելով անվճար, հասարակական
հիմունքներով։ Դրանից ոչ միայն գործը չտուժեց, այլև նկատելիորեն լա-
վացավ կաբինետների գործունեությունը։ Այդ բանում կարելի է համոզվել
քիմիական կոմբինատի կաբինետի օրինակով։
Պարտիական լուսավորության ցանցի 1959/60 ուսումնական տարում կոմ-
բինատում գործում էին ինը տեսական սեմինար և քաղխմբակ, որոնցում ընդ-
գրկված էին ընդամենը 240 կոմունիստ ու անկուսակցական։ Ի միջի այլոց, պրո-
պագանդիստներից երեքն առաջադրված էին քաղաքի այլ կազմակերպություն-
ներից։ Հարյուրավոր կոմունիստներ ու անկուսակցական ակտիվիստներ դուրս
էին մնացել քաղաքական ուսուցումից։
Ներկայումս պատկերը լրիվ փոխվել է։ Նախքան պարտլուսցանցի նոր ու-
սումնական տարին սկսելը, քաղլուսկաբինետի վարիչը (որն արդեն աշխատում
էր հասարակական կարգով) առաջարկություն մտցրեց պարտկոմիտե՝ ընդլայ-
նել քաղուսուցման ցանցը։ Հաշվի առնելով այդ, պարտկոմիտեն կոմբինատում
ստեղծեց 83 տեսական սեմինար ու քաղխմբակ, որոնցում ընդգրկված շուրջ
1400 կոմունիստներն ու անկուսակցականները մեծ հետաքրքրությամբ ուսում-
նասիրում են ՍՄԿՊ XXII համագումարի պատմական փաստաթղթերը։ Սեմի-
նարներ ու քաղխմբակներ են կազմակերպվել կոմբինատի բոլոր ցեխերում,
հերթափոխություններում ու աշխատանքային տեղամասերում։ Այժմ այստեղ
պրոպագանդիստական աշխատանք են կատարում միայն քիմիագործները՝
կոմբինատի տնտեսական ղեկավարները, ցեխերի ու հերթափոխությունների
պետերը, ինժեներա-տեխնիկական աշխատողները, նրանք, ովքեր ունեն տե-
սական ու քաղաքական լավ պատրաստականություն, հիանալի գիտեն արտա-
դրությունը։ Պարտկոմիտեն մեկընդմիշտ հրաժարվեց «դրսի» մարդկանցից։
Այժմ կոմբինատում բարձր հիմքերի վրա է դրված կոմունիստների, անկուսակ-
ցական ակտիվի, այդ թվում ինժեներա-տեխնիկական աշխատողների քաղա-
քական ուսուցման գործը։ Հասարակական հիմունքներով գործող քաղլուսկա-
բինետը տեսական ու մեթոդական լուրջ օգնություն է ցույց տալիս պրոպա-
գանդիստներին, ագիտատորներին, քաղաքական ինքնակրթությամբ զբաղ-
վողներին։ Այստեղ պարբերաբար անց են կացվում սեմինարներ, տեսական
կոնֆերանսներ, կազմակերպվում են դասախոսություններ, կոնսուլտացիաներ,
երեկոներ և այլն։



Բովանդակալից է դարձել քիմիական կոմբինատի քաղլուսկաբինետի գոր-
ծունեությունը, որը ղեկավարում է ցեխի պետ, կոմունիստ Հովհաննես Գա-
լըստյանը. նա աշխատում է իր պարտքի բարձր գիտակցությամբ։
Մենք համառոտակի, ընդհանուր գծերով պատմեցինք մեքենաշինական
գործարանի և քիմիական կոմբինատի քաղլուսկաբինետների գործունեության
մասին, որոնք, իրավամբ, դարձել են սկզբնական պարտիական կազմակեր-
պությունների տեսական ու մեթոդական կենտրոնները, նրանց ամուր հենա-
րանը՝ աշխատավորների կոմունիստական դաստիարակության կազմակերպ-
ման բնագավառում։ Այդպիսի օջախներ են դարձել նաև տրիկոտաժի ֆաբրի-
կայի, «Ավտոմատիկա» գիտահետազոտական ինստիտուտի, շինարարական
տրեստի, երկաթուղային հանգույցի, մսի կոմբինատի քաղլուսկաբինետները։
Հասարակական հիմունքներով քաղլուսկաբինետները, որոնք ստեղծվել են
կյանքի թելադրանքով, շատ արդյունավետ գործ են կատարում։ Դրանց կազ-
մակերպմամբ ընդլայնվել է գաղափարական աշխատանքի ոլորտը, ուժեղա-
ցել մասսաների վրա պարտկազմակերպությունների քաղաքական-դաստիա-
րակչական ներգործությունը. ներկայումս ավելի մեծ թվով կոմունիստներ են
ներգրավվել պարտիական-քաղաքական աշխատանքում։ Եվ, որ կարևորն է,
այն զգալիորեն նպաստել է պարտիական պրոպագանդան դարձնելու ավելի
կոնկրետ ու ներգործուն, բարձրացնելու աշխատավորների քաղաքական ու աշ-
խատանքային ակտիվությունը, նրանց կոմունիստական գիտակցականու-
թյունը։
ՀԿՊ Կիրովականի քաղկոմի քաղաքական լուսավորության կաբինետը,
որը կոմունիստական շինարարության ներկա խնդիրներին համապատասխան
նկատելիորեն բարելավել է իր գործունեությունը, մեծ ուշադրություն է հատ-
կացնում հասարակական հիմունքներով գործող կաբինետներին՝ ուղղություն
է տալիս նրանց աշխատանքին, ընդհանրացնում եղած ուսանելի փորձը։ Հա-
ճախակի հրավիրվում են քաղլուսկաբինետների վարիչների, մեթոդական խոր-
հուրդների անդամների սեմինար պարապմունքներ, ուր փորձի փոխանակման
նպատակով լսվում են նրանց հաղորդումները, կազմակերպվում դրանց շուր-
ջը մտքերի լայն փոխանակություն։

Ս. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ
ՀԿՊ Կիրովականի քաղկոմի
քաղլուսկաբինետի վարիչ

յանի գործը...»։ Ի՞նչ անել, ե՞տ դառնալ, ուրի՞շ ցեխ ընտրել։ Ինչո՞ւ։ Մի՞թե երկուսի հակահասարակական արարքը կարող է ստվեր գցել ցեխի ամբողջ կոլեկտիվի վրա։

Սիգարետների ցեխի պետ, կոմունիստ Նաղիկ Մարտիրոսյանին ես վաղուց եմ ճանաչում. դեռ այն ժամանակվանից, երբ նա՝ երիտասարդ, խանդավառ մի բանվորուհի, ծխախոտի գործարանի պարծանքն էր։ Քսանվեց տարի է, ինչ Նաղիկն այս գործարանում է և այդ տարիներից յուրաքանչյուրը նրա անվանը նոր փառք է ավելացրել։ Երիտասարդական խանդավառությանը փոխարինել է բազմամյա փորձառությունը, կոմերիտական տաքարյունությանը՝ կոմունիստ դաստիարակի ու ղեկավարի սառնարյունությունն ու կշռադատվածությունը։

Երբ հայտնեցի գալուս նպատակը, Մարտիրոսյանը ժպտաց իրեն հատուկ մեղմ ժպիտով ու պատասխանեց.

— Խնդրեմ, ես Ձեզ կարող եմ ծանոթացնել մեր բանվորների հետ,— ասաց ու ավելացրեց զննող հայացքն աչքերիս հառելով,— իսկ դռանը փակցված հայտարարությունը կարդացի՞ք, դա ձեր նպատակին չի՞ խանգարի։

— Բոլորովին, եթե կուզեք՝ նույնիսկ կօգնի։ Մարտիրոսյանի դեմքը պայծառացավ։

— Իրավացի եք, և դուք դրանում կհամոզվեք, եթե ներկա լինեք ընկերական դատարանի նիստին։ Երկու օր է, ինչ ցեխը վրդովված է դրանց արարքից։

Ապա ցեխի պետը պատմեց. Ժ. Մելքոնյանը և Խ. Այդնչյանը սիգարետի տուփերը հակավորող, արկղներում դասավորող բանվորներ են։ Երկու օր առաջ ցեխի բանվորներից մեկը հակավորման տեղամասով անցնելիս նկատում է, որ նրանք ծխախոտի տուփեր են խցկում պատից կախված իրենց պիջակների գրպանները։ Բանվորն այդ մասին հայտնում է ցեխի պետին, Մարտիրոսյանը գնում ստուգում է և որոշում նրանց գործը հանձնել ընկերական դատարանին։

Լսում եմ Նաղիկ Մարտիրոսյանին և նրա՝ կոմունիստ ղեկավարի ու դաստիարակի հմայքը ավելի է մեծանում աչքիս։ Թուլամորթ, իր պաշտոնի համար դողացող, ենթակաների հանդեպ ոչ մի սեր չտածող մարդը կլռեր, հանցագործությունը կծածկեր, որպեսզի ոչ ոք այդ մասին չիմանա։ Չէ՞ որ այդ կարող էր ստվեր գցել իր, և իր ղեկավարած տեղամասի վրա։ Բայց Մարտիրոսյանն իսկական ղեկավար է։ Նա գիտե իր ղեկավարած կոլեկտիվի ուժը, գիտե, որ հակահասարակական երևույթները մատի փուշ են, եթե ժամանակին չհեռացնես՝ մատը կարող է թարախակալել։

Ահա այդպիսի ուղղամտության, անաչառության համար է, որ սիգարետների ցեխի պետը վայելում է ընդհանուրի սերն ու համակրանքը։

— Ճիշտ որ խոսենք, ես էլ այդ բանում մեղք ունեմ,— մի պահ մտածելուց հետո ցածրաձայն, կարծես ինքն իր հետ խորհրդածելով շարունակեց Մարտիրոսյանը։ — Այդ երկու երիտասարդ բանվորներն իմ տեսադաշտից համարյա թե դուրս էին մնացել։ Նրանց աշխատատեղը առանձին է, մեքենայական ցեխից հեռու, քիչ եմ այնտեղ եղել։ Եկել են, երկուսով աշխատել ու զանգից հետո տուն գնացել։ Հիմա եմ զգում, որ կոլեկտիվից կտրված են եղել, ընդհանուր միջոցառումներին չեն մասնակցել, եթե ներկա էլ եղել են ցեխային ժողովներին, կազմակերպվող զրույցներին, ապա միշտ պասսիվ, լուռ նստել են։ Եվ ես անուշադրության եմ մատնել այդ երևույթը։

Ցեխի պետն իր թերացումների համար արդարացուցիչ հանգամանքներ չի փնտրում, ուրիշներին չի մեղադրում։

Սիգարետների ցեխի աշխատանքային ռիթմը լրիվ զգում ես մեքենայական բաժանմունքում, որի մուտքի մոտ եղած մեքենայի վրա աշխատում էր մի երիտասարդ։ Գլխարկը չէր ամփոփում նրա խիտ գանգուրները, որոնք թափվելով ճակատին, ավելի արտահայտիչ էին դարձնում նրա երիտասարդ լինելը։

— Որքա՞ն ծանոթ է այս երիտասարդի դեմքը, կարծես ինչ-որ տեղ տեսած լինեմ,— դիմեցի Մարտիրոսյանին։

— Երևի թերթերում նկարն եք տեսել։ Գործարանային պատվո տախտակից էլ չի իջնում։ Մեխանիկ Անդրուշ Կալպակյանն է։ Ե՛վ հիանալի աշխատող է, և՛ լավ ռացիոնալիզատոր, և՛ լավ ընկեր։ Երիտասարդ մեխանիկն ամբողջովին կլանված էր իր մեքենայով։ Ինձ թվաց, թե Անդրուշը շատ գոհ է իր մեքենայից, բայց երբ զրուցում էինք, ասաց, որ այդ մեքենաները հնացել են, շուտով կգրվեն նորերը։

***

Մինչև հերթափոխի ավարտը դեռ բավականին ժամանակ կար, և ես գործարանի ընկերական դատարանի նախագահ Մ. Հովսեփյանին խնդրեցի ծանոթացնել իրենց դատարանի գործունեության հետ։

Գործարանի ընկերական դատարանը 1961 թվականին երեք գործ է քննության առել, իսկ դրանից առաջ ավելի շատ գործեր է լսել։ Թե որքան ուժեղ է ընկերական դատարանի ներգործությունը, երևում է նաև այն բանից, որ նրա կողմից տույժ ստացածները հետագայում այլևս չեն խախտել հասարակական կարգը, աշխատանքային կարգապահությունը և այլ զանցանքներ չեն գործել։



— Մեր դատարանի նիստերում ստացվում է այնպես, որ կարծես ոչ թե մենք՝ դատարանի անդամներս ենք դատում, այլ ամբողջ կոլեկտիվը։ Հենց դա էլ հեշտացնում է մեր գործը, օգնում ճիշտ վճիռ ընդունելու,— շարունակեց Մ. Հովսեփյանը և բերեց հետևյալ օրինակը։

Միլիցիայից մեր դատարանի քննությանը հանձնվեց Լ. Օհանյանի գործը։ Օհանյանը դեմ էր այդ բանին, նա համառորեն պահանջում էր, որ իր գործը քննության առնվի դատաքննչական օրգաններում։ Մեր դատարանի նիստում Լ. Օհանյանի աշխատանքային ընկերները շատ դառը, բայց ճշմարտացի խոսքեր ասացին նրա հասցեին։ Ընկերական դատարանը բավարարվեց նրան հասարակական պարսավանքի ենթարկելով։ Այդ օրվանից անցել է բավական ժամանակ, բայց Օհանյանի կողմից հասարակական կարգի ոչ մի խախտում չի նկատվել, նա դարձել է կարգապահ, լավ աշխատող։

Պատահեց այնպես, որ գործարանի ավտովարորդ Հրաչիկ Դարբինյանը շեղվեց ճիշտ ճանապարհից։ Նա կանգնեց ընկերական դատարանի առաջ։ Չեղավ մեկը, որ գոնե մեկ բառով արդարացներ կամ թեթևացներ ավտովարորդի հանցանքը, բայց ընկերների հանդիմանությունները, նրանց հայտնած վստահությունը, որ Հրաչիկն այլևս երբեք նման բաներ չի անի, կարդարացնի կոլեկտիվի վստահությունը, մինչև հոգու խորքը ազդեցին նրա վրա։ Եվ ընկերական դատարանի նախագահը մի առանձին ջերմությամբ պատմեց Հ. Դարբինյանի ներկա լավագույն աշխատանքի, նրա կարգապահության մասին։

— Այժմ այս գործի մասին,— այնուհետև ասաց Մ. Հովսեփյանը,— ես ձեզ կարող եմ հավատացնել, որ Ժորան ու Խաչիկը կոլեկտիվի այս երկու օրվա վերաբերմունքից արդեն այնպես են ազդվել, որ առանց ընկերական դատարանի վճռի էլ երբեք այդպիսի բան չեն անի։ Բայց ընկերական դատարանը անպայման պետք է քննության առնի նրանց գործը, որովհետև անհետևողականությունը, զիջումներ անելը վատ օրինակ կարող են ծառայել։ Դե՛, ասենք, ցեխի աշխատողներն իրենք էլ չեն հանդուրժի հարցի այդպիսի «լուծում»։

***

Դահլիճը լցվեց մարդկանցով։ Ուրիշ դեպքում այս կենսախինդ բանվորներն ու բանվորուհիները, մանավանդ երիտասարդները, միասին հավաքվելով, անպայման կատակներ կանեին, կծիծաղեին, կաղմկեին, իսկ այսօր դահլիճ էին մտնում լուրջ, ինքնամփոփ, լուռ տեղավորվում նստարաններին և եթե զրուցում էին, ապա ցածրաձայն, շշուկով։ Առաջին շարքի նստարանին, գլուխները կախ նստել էին Ժ. Մելքոնյանը և Խ. Այդնչյանը։

Երբ ընկերական դատարանի անդամները սեղանի մոտ գրավեցին իրենց տեղերը, դահլիճում խոր լռություն տիրեց։ Ընկերական դատարանի նախագահ Մ. Հովսեփյանի երկու կողմերում նստեցին ատենակալները՝ տեխնիկական հսկողության բաժնի վերահսկիչ Հ. Պողոսյանը և հյուսների բրիգադայի բրիգադավար Հ. Խուդիկյանը։

Ներկա եղողներին գործի էությանը ծանոթացնելուց հետո նախագահը մեղադրյալներին առանձին-առանձին հարցրեց, թե ինչ ունեն ասելու, սակայն նրանք կանգնել էին լուռ, աչքերը գետնին հառած։

— Դուք ձեզ մեղավոր ճանաչո՞ւմ եք,— հարցրեց նախագահը։

— Այո՛,— եղավ պատասխանը։

Ապա սկսվեց հարցաքննությունը։ Հարցերը շատ չէին. «գիտե՞ք, թե ինչի համար է պայքարում ցեխը», «թերթեր ընթերցո՞ւմ եք», «ի՞նչ գրքեր եք կարդացել», «ինչո՞ւ եք խուսափում զրույցներից», «սպորտխմբակների պարապմունքներին ինչո՞ւ չեք մասնակցում», «դրսում ի՞նչ մարդկանց հետ եք մտերմություն անում»։ Մեղադրյալների պատասխանը մեծ մասամբ լինում էր լռությունը։

Այս հարցաքննությունը նման չէր այնպիսիներին, որոնց ժողովրդական դատարաններում ենթարկվում են հանցագործները։ Ե՛վ հարցերի բնույթից, և՛ դրանք առաջարկողների տոնից երևում էր, որ ընկերների գլխավոր նպատակն է զանցանք գործողներին ցույց տալ նրանց վարմունքի ակունքները, հասկացնել, թե ինչն է իրենց՝ ամբողջ կոլեկտիվին մտահոգություն պատճառում, ո՛րն է իսկական կյանքն ու ապրելակերպի ուղին։

Դատական նիստի ժամանակ պարզվեց, որ Ժ. Մելքոնյանը և Խ. Այդնչյանը կտրված են եղել գործարանի կոլեկտիվից։ Կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունները բազմաթիվ հետաքրքիր միջոցառումներ են կազմակերպում, իսկ նրանք դրանցից ոչ մեկին չեն մասնակցում՝ ո՛չ սպորտային խմբակների, ո՛չ ինքնագործ խմբերի պարապմունքներին, ո՛չ էքսկուրսիաներին կամ ներկայացումների կոլեկտիվ դիտումներին։ Գործարանի գրադարանը լավագույնը կարելի է համարել իր նմանների մեջ, սակայն նրա 500 ընթերցողների ցուցակում նրանցից ոչ մեկի անունը չկա։

Մարդուն դաստիարակելու, նրան զանցանքներից մշտապես հեռու պահելու, կոլեկտիվում միաձուլելու բուռն ցանկությունն էր զգացվում բոլոր ելույթներում։ Խոսեցին շատերը, առանձնապես մեղադրյալների աշխատանքային ընկեր-

ները։ Այդ մարդիկ մի քանի րոպե առաջ մեքենաների մոտ անխոնջ աշխատանքով բազմապատկում էին երկրի հարստությունը, իրենց աղյուսն էին դնում կոմունիզմի հոյակապ շենքին, իսկ այժմ արմատախիլ են անում իրենց նպատակին արգելակող չարիքը։

— Մենք ուզում ենք, որ դուք լավ հասկանաք ու զգաք ձեր հանցանքի ամբողջ խորությունը,— ասում է Վարդուշ Սարգսյանը.— Մի՞թե դուք չեք տեսնում, թե ինչպիսի աշխատանք է թափվում սիգարետների վրա։ Ուրեմն ինչ է, մենք պետք է ամբողջ ուժներս լարենք ավելի շատ արտադրանք տալու, սոցիալիստական պարտավորությունը կատարելու համար, իսկ դուք առնետների նման մեր աշխատանքի արդյունքը կրեք, դո՞ւրս տանեք։ Դուք հասկանո՞ւմ եք, թե ում հարստությանն եք ձեռք մեկնում։ Մեր ձեռքերը չեն դողա քվեարկելու, որ ձեզ գործարանից վտարեն, բայց մենք այդ չենք ուզում. բոլորս էլ ցանկանում ենք ձեր լավը, ուզում ենք, որ դուք միշտ մեզ հետ լինեք։

Հակիրճ էր, բայց տպավորիչ ու ազդու պահակ Հ. Հարությունյանի ելույթը։

— Ես սիգարետներ չեմ արտադրում, այլ դրանք պահպանում եմ ամեն մի վտանգից, հափշտակումներից։ Ես ձեզ եմ հարցնում, Ժորա և Խաչիկ, ի՞նչ եք կարծում, ի՞նչ կստացվեր, եթե ես՝ ձեզ նման վարվեի իմ պահպանությանը հանձնված հարստության հետ։ Իմ մտքով ոչ միայն այդպիսի բան չի անցնում, այլև եթե հարկ լինի, ասենք հրդեհ պատահի կամ մի այլ դեպք, ես պատրաստ եմ կյանքի գնով փրկել այդ հարստությունը։ Այդպես կվարվեր այստեղ հավաքվածներից յուրաքանչյուրը, ամեն մի ազնիվ սովետական մարդ։ Մի՞թե կյանքի ազնիվ ճանապարհը կարելի է փոխարինել գողությամբ։

— Նայեք ձեր ընկերներին։ Նրանք գործարան են մտնում բաց ճակատով, որպես նրա իսկական տերեր ու գործարանից տուն գնում երջանիկ, որ կատարել են իրենց պարտքը Հայրենիքի հանդեպ։ Ա՞յդ է լավ, թե՞ մի քանի տուփ ծխախոտը և ընկերների պարսավանքը,— քար լռության մեջ հնչում են կոմունիստ Պ. Պողոսյանի խոսքերը։

Ընկերները մեղադրում էին, իսկ զանցանք գործողները նստել էին լուռ, գլխիկոր։ Նրանց գունաթափ դեմքերը ցույց էին տալիս, թե որքան ծանր է նրանց համար ընկերների մեղադրանքները լսելը։

— Ի՞նչ ունեք ասելու ընկերական դատարանին,— նրանց է դիմում նախագահը։

— Սխալվել ենք, խնդրում ենք ներել, այլևս նման բան չենք անի,— ահա նրանց պատասխանը, որի անկեղծության մեջ դժվար էր տարակուսել։

Ընկերական դատարանն առանձնանում է վճիռ կայացնելու։ Խոր լռության մեջ դատարանի նախագահը հանդարտ կարդում է վճիռը. «...Ժ. Մելքոնյանին և Խ. Այդնչյանին հասարակական նկատողություն անել»։ Հավաքվածներն այդ վճիռն ընդունում են ծափահարություններով։ Այնուհետև նախագահը բացատրում է, որ ընկերական դատարանի վճիռը վերջնական է։ Սակայն մենք համոզված ենք, այնուհետև ասում է նախագահը, որ Ժորան և Խաչիկը իրենց այնպես կպահեն, որ դատարանը նրանց նկատմամբ կայացրած վճիռը կվերացնի ավելի շուտ։

Ահա այսպես դատեցին ընկերները։ Մի՞թե պակաս կարևոր գործ կատարեցին նրանք այսօր։ Իհարկե ոչ. մարդու դաստիարակության գործը մեծագույնն է կոմունիզմի կառուցման ընթացքում։

Լ. ՂԱՐԻԲՅԱՆ

# ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆԵՐՈՒՄ

## ՀՈՒՆԱՍՏԱՆԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՅՔԱՐԸ ԵՐԿՐԻ ԴԵՄՈԿՐԱՏԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Հունաստանի Կոմպարտիան միջազգային կոմունիստական շարժման մարտական ջոկատներից մեկն է։ Իր գոյության ավելի քան քառասուներեք տարիների ընթացքում բազմիցս նա հայտարարվել է օրենքից դուրս, ենթարկվել կատաղի հալածանքների։ Հազարավոր հույն կոմունիստներ տանջամահ են արվել ֆաշիստական զնդաններում և համակենտրոնացման ճամբարներում։ Սակայն այդ ամենը ո՛չ միայն չի ընկճել, այլ ավելի կոփել ու առնականացրել է Հունաստանի Կոմպարտիան։

Ֆաշիստական ընդհատակի դժվարին պայմաններում իսկ Հունաստանի Կոմպարտիան սովորել է զուգակցել անլեգալ աշխատանքը լեգալ աշխատանքի հետ, պահպանել և ընդլայնել իր կապերը ժողովրդական լայն մասսաների հետ, կազմակերպել ու ղեկավարել նրանց տնտեսական ու քաղաքական պայքարը կապիտալիստական մոնոպոլիաների և ֆաշիզմի դեմ՝ հանուն դեմոկրատիայի և սոցիալիզմի հաղթանակի։

### ՀՈՒՆԱՍՏԱՆԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՆ ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԱՆՎԵՀԵՐ ՂԵԿԱՎԱՐՆ ԷՐ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ

Հունաստանի Կոմպարտիայի հեղինակությունն ու ժողովրդականությունը հատկապես բարձրացավ համաշխարհային երկրորդ պատերազմի տարիներին, երբ նա գլխավորեց հույն ժողովրդի հերոսական դիմադրության շարժումը գերմանա-իտալական ֆաշիստական օկուպանտների դեմ և անձնվիրաբար մարտնչեց ազգային անկախության համար։

Հունաստանի Կոմունիստական պարտիայի նախաձեռնությամբ 1941 թվականի սեպտեմբերի 27-ին ստեղծված Ազգային Ազատագրական Ճակատը (ԷԱՄ) իր մարտական դրոշի տակ համախմբեց ավելի քան 2 միլիոն հայրենասերների, որոնք հերոսական պայքարի դուրս եկան օկուպանտների դեմ ժողովրդի պատիվն ու հարազատ հայրենիքի անկախությունը պաշտպանելու համար։ Գյուղական շրջաններում և քաղաքներում ԷԱՄ-ը կազմակերպեց նաև Հունական ժողովրդական ազատագրական բանակի (ԷԼԱՍ) մարտական բազմաթիվ միավորումներ, որոնք իրենց շարքերում Հունաստանի ազատագրման օրերին ընդգրկել էին մոտ 134.000 մարտիկներ։ Ամբողջ երկրով մեկ ընդլայնվեց դիմադրության շարժումը, որը դարձավ համազգային խոշորագույն մասսայական շարժումներից մեկը՝ Հունաստանի նորագույն պատմության մեջ։

Հույն պարտիզանների դեմ կռվելու համար գերմանացիները հարկադրված էին Հունաստանի տերիտորիայում պահել 300.000 զինվորներից բաղկացած օկուպացիոն բանակ. Նրանք չէին կարող այդ ուժերը արևելյան ճակատ փոխադրել, ուր այդ ժամանակ մղվում էին վճռական մարտեր և Սովետական Բանակը ամենուրեք անցել էր հաղթական հակահարձակման։ Հույն հայրենասերների հերոսական պայքարի արդյունքն էր նաև այն, որ չնայած երկրում տիրող տեռորիստական դաժան ռեժիմին, գերմանական զավթիչներին չհաջողվեց ոչ մի հույն զինվոր ուղարկել արևելյան ճակատ՝ Սովետական Միության դեմ կռվելու։ Դա պատիվ է բերում հույն ազատասեր ժողովրդին, հերոսական բանվոր դասակարգին և նրա աննկուն կոմունիստական ավանգարդին, որը հակաիմպերիալիստական ազգային-ազատագրական պայքարի մարտական ղեկավարն է, նրա ոգեշնչողն ու կազմակերպիչը։ Զինված պայքարի կազմակերպման հետ միասին ԷԱՄ-ը լայն գործունեություն ծավալեց նաև ԷԼԱՍ-ի զորքերի կողմից ազատագրված շրջանների վերականգնման ուղղությամբ, ուր դրվեցին ժողովրդական նոր իշխանության հիմքերը։ Ոգևորված Սովետական Բանակի դեպի Բալկանները կատարած հաղթարշավով՝ Հունաստանի ժողովրդա-ազատագրական բանակի քաջարի մարտիկները խիզախորեն հետապնդում էին նահանջող թշնամուն մինչև նրա լիակատար վտարումը Հունաստանի սահմաններից (1944 թ. հոկտեմբերի վերջերը), կործանիչ հարվածներ հասցնում օկուպանտներին։

Հունաստանը գերմանական և իտալական

մերձեցում և ձուլում մեկ համաժողովրդական կոմունիստական սեփականության մեջ և այլն:

Թերություն է և այն, որ բրոշյուրում խիստ շատ են ցիտատները: Առանձին էջեր լցված են միայն ցիտատներով, հեղինակինն են միայն նրանց կապող նախադասությունները:

Ս. Քոչարյանի «Բանականությունը թելադրում է» բրոշյուրը նվիրված է մեր ժամանակաշրջանի ամենակենսական հարցին՝ պատերազմի և խաղաղության պրոբլեմին: Բրոշյուրում խոսվում է աշխարհում երկու հակադիր սիստեմների ուժերի հարաբերակցության մեջ տեղի ունեցած արմատական բեկման, սոցիալիզմը համաշխարհային սիստեմի վերածվելու, իմպերիալիզմի գաղութային սիստեմի կրախի, իմպերիալիստական երկրներում միլիտարիզմի ուժեղացման, «սառը պատերազմի» և այլնի մասին: Հեղինակը նշում է, որ, չնայած իմպերիալիստական պետությունների կառավարող շրջանները ամեն կերպ ձգտում են իրենց ագրեսիվ քաղաքականությամբ թունավորել միջազգային մթնոլորտը և նոր պատերազմ սանձազերծել, սակայն աշխարհի օրեցօր ամրապնդվող խաղաղության ուժերը ընդունակ են կանխելու նոր պատերազմը: Խաղաղության պահպանման ուժերն են՝ Սովետական Միությունը, սոցիալիզմի համաշխարհային լագերը, խաղաղության կողմնակից՝ գաղութային ճնշումից ազատագրված բազմաթիվ երկրները, ամբողջ աշխարհում լայն թափ ու ծավալ ստացած խաղաղության կողմնակիցների շարժումը: Հեղինակը նշում է խաղաղ գոյակցության քաղաքականության կիրառման և զինաթափման անհրաժեշտությունը՝ աշխարհը նոր, կործանիչ պատերազմից փրկելու համար:

Ս. Քոչարյանի բրոշյուրը ևս զերծ չէ թերություններից: Ընդամենը 60 էջից բաղկացած բրոշյուրն ունի երեք բաժին՝ 12 ենթավերնագրերով, որոնցից յուրաքանչյուրը առանձին-առանձին վերցրած մի բրոշյուրի թեմա է: Այդ պատճառով էլ հեղինակը հաճախ սահմանափակվել է յուրաքանչյուր ենթավերնագրի առթիվ համառոտ, ընդհանուր հայտարարություններով:

Բրոշյուրում մեջ բերված առանձին թվական տվյալներ կարող են թյուրիմացության մեջ գցել ընթերցողին: Այսպես, օրինակ, խոսելով իմպերիալիստական երկրների ռազմական ծախսերի մասին, հեղինակը գրում է. «Ուղղակի ապշում ես, դիտելով այն **անհամար ծախսերը** (ընդգծումը մերն է.—Վ. Ս.), որ կուլ է տալիս միլիտարիզմի քաղաքականությունը: Ահա մի քանի տվյալներ» (էջ 28): Եվ հեղինակը բերում է այդ տվյալները: «Օմախում (ԱՄՆ) գտնվող միջցամաքային (պետք է լիներ միջմայրցամաքային—Վ. Ս.) հրթիռների արձակման հրապարակը 250 միլիոն դոլար նստեց: «Ատլաս» հրթիռը 1,2 միլիոն դոլար արժե»: Եվ ահա այդ «մի քանի տվյալները», «մի քանի չոր թվերը», որոնք, հեղինակի կարծիքով պետք է ցուցադրեն «իմպերիալիզմի միլիտարիստական ու ագրեսիվ դեմքը, իմպերիալիզմ, որ իր վրա կրում է պատերազմն այնպես, ինչպես ամպը՝ ամպրոպը»:

Իհարկե, ընթերցողը այդ մի քանի թվերով ամբողջական պատկերացում չի կազմի այն ահռելի ծախսերի մասին, որ կապիտալիստական երկրները կատարում են ռազմական նպատակներով: Լավ կլիներ, եթե հեղինակը ԱՄՆ-ի, ԳՖՌ-ի, Ֆրանսիայի և մյուս կապիտալիստական երկրների տարեկան բյուջեներից տվյալներ բերեր և ցույց տար, թե ինչպես աշխատավորների կեղեքման ու շահագործման հաշվին իմպերիալիստական կառավարությունները հսկայական միջոցներ են հատկացնում սպառազինությանը:

Բրոշյուրում տեղ են գտել մի շարք անհաջող, երբեմն անիմաստ ձևակերպումներ: Բերենք դրանցից մի քանիսը. «Մոնոպոլիստական կապիտալի ասպետները **կենակցում են** պրոֆեսիոնալ մարդասպանների և բանդիտների հետ» (էջ 26): «Իսկ զենքի ժամանակակից տեսակների արտադրությունը հակադարձ համեմատական է դրանց արժեքին» (էջ 28). ««սառը պատերազմը» բարեգործական ձեռնարկություն չէ...» (էջ 30): «Ներկայումս այնպիսի դավադրություն է կազմակերպվում իմպերիալիզմի լագերում խաղաղության դեմ, որ չի կարելի ձեռքերը ծալած սպասել իրադարձությունների տարերային հասունացմանը: Դրանով միայն կարելի է մաքրել ագրեսորների ճանապարհը և **սանձազերծել** նրանց հանցագործ **ձեռքերը**» (էջ 54): Այստեղ մտքերը հստակ չեն ձևակերպված, այդ պատճառով էլ ընթերցողները ոչինչ չեն կարող հասկանալ, թե ինչ է ուզում ասել հեղինակը:

Վ. Ներկարարյանի «Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի նոր էտապը» բրոշյուրում համառոտակի խոսվում է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի էության, նրա առաջին էտապների բնորոշ կողմերի մասին, ապա ավելի հանգամանորեն վերլուծվում են նրա նոր, երրորդ էտապի առանձնահատկությունները: Հեղինակը նշում է, որ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը ոչ թե միայն տնտեսական կամ քաղաքական ճգնաժամ է, այլ այն ընդգրկում է ինչպես կապիտալիստական էկոնոմիկայի բոլոր ոլորտները, այնպես էլ նրա քաղաքականության, գաղափարախոսության և կուլտուրայի բոլոր բնագավառները: Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը, մի կողմից՝ նշանակում է համաշխարհային կապիտալիստական սիստեմի ավելի ու ավելի ուժեղացող քայքայում, իսկ մյուս կողմից՝ կապիտալիզմի սիստեմից նորանոր երկրների անցումը սոցիալիզմի ուղին: Հեղինակը խոսում է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ժամանակաշրջանում կապիտալիստական սիստեմի



տարբեր բնագավառներում տեղի ունեցող պրոցեսների, կապիտալիստական և սոցիալիստական սիստեմների տնտեսական մրցության և այդ մրցության մեջ սոցիալիզմի ձեռք բերած նվաճումների մասին: Ընդգծվում է համաշխարհային զարգացման վրա սոցիալիզմի ունեցած մեծ ներգործուն դերը: Հեղինակը խոսում է նաև կապիտալիզմի գաղութային սիստեմի քայքայման, կապիտալիստական երկրների անհամաչափ զարգացման խորացման, կապիտալիստական երկրների միջև հակասությունների սրման, դասակարգային պայքարի ուժեղացման մասին:

Նա խոսում է սոցիալիստական համաշխարհային սիստեմի հետագա ամրապնդման, համաշխարհային մասշտաբով նրա տնտեսական կշռի և քաղաքական ազդեցության աճի մասին, հակաիմպերիալիստական, ազգային-ազատագրական ռևոլյուցիաների վերելքի մասին, որը հասցրեց իմպերիալիզմի գաղութային սիստեմի քայքայման:

Վ. Ներկարարյանի «Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի նոր էտապը» բրոշյուրը, համեմատաբար հաջող է, սակայն այնտեղ նույնպես կան թերություններ:

Հեղինակը հիմնականում սահմանափակվում է Կոմպարտիաների ներկայացուցիչների Խորհրդակցության հայտարարության և ՍՄԿՊ Ծրագրի համապատասխան դրույթների մեջբերումով (չակերտներով կամ առանց չակերտների), քիչ են մեկնաբանությունները, պարզաբանումները: Մինչդեռ նման բրոշյուրում ավելի շատ տեղ պետք է գրավի առաջ քաշված դրույթների պարզաբանումը: Բրոշյուրում կան կրկնություններ, միևնույն մտքերի տարբեր ձևի շարադրանքներ: Բրոշյուրի լեզուն շատ է չոր, մասսայական ընթերցողների համար դժվարընթեռնելի:

Վերոհիշյալ և մյուս բրոշյուրների հրատարակումով Հայպետհրատը իհարկե, որոշ աշխատանք է կատարել ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը և պարտիայի նոր Ծրագիրը պրոպագանդելու և պարզաբանելու ասպարեզում:

Սակայն այդ թերևս մեծ գործի սկիզբն է միայն: Արդեն ժամանակն է պարտիայի XXII համագումարի որոշումների և Ծրագրի վերաբերյալ ընդհանուր թեմաներից անցնելու նրանցում զետեղված առանձին տեսական պրոբլեմների ու պրակտիկ խնդիրների պարզաբանմանն ու մասսայականացմանը: Բրոշյուրներ պետք է հրատարակել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի և նրա ստեղծման կոնկրետ ուղիների, դասակարգային տարբերությունների հաղթահարման, քաղաքի և գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած տարբերությունների վերացման, բաշխման սոցիալիստական սկզբունքից աստիճանաբար կոմունիստական սկզբունքին, սոցիալիստական աշխատանքից կոմունիստական աշխատանքին անցնելու, ազգերի հետագա մերձեցման, սոցիալիստական պետականության հետագա զարգացման և կոմունիստական ինքնավարության առաջացման և բազմաթիվ այլ պրոբլեմների վերաբերյալ: Չպետք է սահմանափակվել միայն պարտիայի Ծրագրում և XXII համագումարի որոշումներում պարունակված դրույթները կրկնելով, այլ անհրաժեշտ է դրանք պարզաբանել, կոնկրետ տվյալներ բերել մեր առօրյայից, կոմունիստական շինարարության մեր փորձից: Միայն այդ դեպքում բրոշյուրները իրոք կլինեն մասսայական և նպատակասլաց:

Ընթերցողների լայն շրջանները ռեսպուբլիկայի հրատարակչություններից և առաջին հերթին Հայպետհրատից սպասում են ՍՄԿՊ XXII համագումարի նյութերն ու պարտիայի Ծրագիրը պարզաբանող արժեքավոր, բարձրորակ, հետաքրքիր գրված, հանրամատչելի, մեր կյանքի փաստերով հագեցված նոր գրքեր ու բրոշյուրներ:

Վ. ՍԱՀԱԿՅԱՆ

---

երկրի ուղղաձիգ գոտիականությունը: Ցրտահարության ժամկետների քարտեզները կօգնեն գործնական առաջարկություններ անելու՝ տարբեր կուլտուրաների տեղաբաշխման հարցերը քննելիս: Այդ քարտեզները դիտողական մեծ առավելությամբ են ներկայացնում կլիմայի բազմակողմանի ցուցանիշները, որոնք պարզում են գյուղատնտեսական կուլտուրաների մշակության ժամկետների, վնասատուների դեմ պայքար կազմակերպելու ու բազմաթիվ այլ հարցեր, որոնք պայմանավորված են կլիմայով: Բայց «Կլիմայի տիպեր» քարտեզի (էջ 32) վրա Երևանն ու նրա շրջապատը ներկայացված են «ցուրտ ձմեռներ ունեցող գոտում», մինչդեռ «հունվար ամսվա միջին ջերմաստիճանի քարտեզի վրա (էջ 21) այն տեղավորված է «մեղմ ձմեռներ ունեցող գոտում»: Ակիզբեկովի հարավ-արևմուտքում, ագրոկլիմայական քարտեզի (էջ 40) վրա ցույց է տրված երկրագործության համար անպետք տարածություն, իսկ հողահանդակներ[1] քարտեզի վրա (էջ 78) վարելահողեր և այլն:

**Ջրաբանական բաժնում** տրված են ամառվա և ձմեռվա հոսքերը, ինչպես նաև սելավների ու պղտորության քարտեզները: Այդ բաժնում տրված են նաև հոսքի բաշխումը տարվա ընթացքում, ինչպես նաև առավելագույն, նվազագույն ու ձմեռվա հոսքերը: Այդ քարտեզները կօգտագործվեն շինարարական նախագծող հիմնարկների օպերատիվ աշխատանքների համար:

Այս բաժնի (էջ 43 և 46) քարտեզների վրա հոսքի իկոգծերն ըստ երևույթին հիմնված չեն գործնական տվյալների վրա և տեսական բնույթ են կրում, որովհետև ըստ այդ քարտեզների ամառվա հոսքի նվազագույնը ավելի մեծ է, քան տարվա միջինը. օրինակ, Վերին Թալինում, Գառնիում և այլն:

**Բնակչության բաժնում** տրված է բնակչության խտությունը ըստ բնակավայրերի, ազգային կազմի և վարչական շրջանների: Այդ բաժինն առավել մատչելի դիագրամներով ու քարտեզներով է ընդգծել ներգաղթը Սովետական Հայաստան: Առաջին անգամ ուշադրության արժանի մանրամասնությամբ, թվական տվյալներով, ընթերցողներին ներկայացվում է հայերի տեղաբաշխումը 1914, 1916 թվականներին, ինչպես նաև հայերի տարաբնակեցումը աշխարհում:

Ուշագրավ տվյալներ են տրված նաև հայերի տարաբնակեցման վերաբերյալ, սակայն Հայկական ՍՍՌ-ում ապրող հայերին չի կարելի (էջ 59 և 60) տարաբնակ համարել, քանի որ նրանք գտնըվում են իրենց Հայրենիքում:

---

[1] Ըստ Մալխասյանի և Աճառյանի բառարանների հանդակ նշանակում է դեսպան:

Արդյունաբերության քարտեզները ակնառու կերպով պատկերում են Սովետական Հայաստանի ինդուստրացման բարձր մակարդակը և նրա տարբեր ճյուղերի՝ գունավոր մետալուրգիայի, լեռնահանքային և քիմիական արդյունաբերության, էներգետիկայի, մեքենաշինության տեսակարար կշիռը:

Ատլասի քարտեզները ներկայացրել են նաև Հայկական ՍՍՌ-ի հանքային ռեսուրսները՝ պղինձը, մոլիբդենը, նեֆելինային սիենիտները, ցինկը, տուֆը, բարիտը, պեմզան ու գրանիտը, ինչպես նաև հրակայուն կավերը: Ատլասը ընթերցողին ծանոթացնում է քիմիական արդյունաբերության հետ, որ տեղաբաշխված է Երևանում, Կիրովականում, ինչպես նաև արտադրության մնացորդներից պատրաստվող պարարտանյութերի կենտրոններ՝ Ալավերդու և Ղափանի հետ: Գործվածքեղենի ու կարի արտադրանքը ներկայացված է Լենինականում, Երևանում, ինչպես նաև Կիրովականում:

Հայկական ՍՍՌ-ում թողարկվող էլեկտրաշարժիչների, գեներատորների, տրանսֆորմատորների և այլ մեքենաների արտադրանքի հզորությունը առավել ցայտուն է ներկայացված «էքսպորտ» քարտեզի վրա, ցուցադրելով աշխարհի տարբեր երկրներ առաքվող Հայաստանի մեքենաշինության արտադրանքը:

Ատլասը առանձնակի հաջողությամբ է ընդգծել ռեսպուբլիկայի արդյունաբերության հարաճուն կարգացումը և դրա շնորհիվ ստեղծվող տնտեսական կոմբինացված ճյուղերը: Սևան—Հրազդան էներգետիկ կոմպլեքսի քարտեզը բերում է այն սխալ եզրակացության (էջ 74), թե 2000 մետրից բարձր գտնվող Սևանա լճի ավազանի հարակից տարածություններից (ինչպես, օրինակ, Արագածի լեռան լանջերից) ջրերը հնարավոր է Սևան տեղափոխել ինքնահոսքով:

**Գյուղատնտեսական բաժնում** տրված են հողատեսքերի, էլեկտրիֆիկացիայի, այգեգործության, բերքատվության, ինչպես նաև անասնաբուծության քարտեզները: Հողատեսքերի քարտեզը տալիս է Հայկական ՍՍՌ հողատեսքերի տեղաբաշխումը, որը միաժամանակ հանդիսանում է և մեր շրջանների գյուղատնտեսական բնութագիրը:

Ատլասը հիանալի կերպով ցուցադրել է Սովետական իշխանության տարիներին գյուղատնտեսության ասպարեզում մեր ժողովրդի կատարած հսկայական աշխատանքը, որի շնորհիվ Հայկական ՍՍՌ-ի լեռնային պայմաններում՝ գետահովիտների, բարձրավանդակների, ուժգին կառիթափերի ու լեռնային դժվարանցելի հատվածներում ու քարաժայռերի վրա ստեղծվել է բազմաճյուղ գյուղատնտեսություն:

Քարտեզներն ու ներդիր դիագրամները ցուցադրել են գյուղատնտեսության մեքենայացման ու էներգապահովվածության այն մակարդակը, որին Հայկական ՍՍՌ-ն հասել է մանր գյուղացիական տնտեսությունների կոլեկտիվացման շնորհիվ և սովետական խոշոր տնտեսություններ ստեղծելու միջոցով:

Ատլասը ներկայացրել է նաև խաղողի և պըտղատու այգիների աճը: Սակայն քարտեզների և դիագրամների վրա նորատունկերն ու բերքատուները չեն առանձնացված, որի հետևանքով հակասություններ են առաջանում: Ըստ դիագրամների՝ 1958 թվականին խաղողի այգիների 24,5 հազար հեկտարից (էջ 82) հավաքվել է 826 հազար ցենտներ խաղող. կնշանակի յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 33,7 ցենտներ, սակայն Ատլասում (էջ 86) յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը 51,9 ցենտներ է: Նույնն է նաև պտղաբուծության գծով. ըստ դիագրամների՝ մեկ հեկտարից (էջ 83) ստացվել է 15 ցենտներ, սակայն Ատլասում (էջ 86) բերքատվության դիագրամը ցույց է տվել 30,6 ցենտներ և այլն:

Գյուղատնտեսության համար անպետք տարածությունները (քարաժայռեր, ցրոններ, աղուտներ, չինգիլներ, հրաբխաբեկորներ և այլն), որոնք կազմում են ամբողջ հողային ֆոնդի 39,9 տոկոսը, տեղ չեն գտել հողատեսքերի քարտեզի վրա, որովհետև նրանք ցույց են տրված (էջ 78) որպես արոտավայրեր, որով և աղավաղվել է ռեսպուբլիկայի հողատեսքերի փաստացի պատկերը:

**Ընդհանուր տնտեսական քարտեզների բաժնում** տրված են տնտեսական շրջանները, նրանց արդյունաբերական և գյուղատնտեսական առաջատար ճյուղերն ու տեսակարար կշիռը ռեսպուբլիկայում: Շարժման գծերով արտահայտիչ կերպով ներկայացած են շրջանների տնտեսական կապերն ու յուրաքանչյուր շրջանի դերը արդյունաբերության կոմպլեքսում: Միաժամանակ քարտեզ-սխեմաները ընթերցողին վառ պատկերացում են տալիս միութենական բոլոր ռեսպուբլիկաների, մարզերի ու երկրամասերի հետ Սովետական Հայաստանի տնտեսական սերտ կապերի մասին:

Տնտեսական շրջանների գծագրերը (էջ 97) անվանված են սխեմաներ, բայց չի պարզաբանված, թե այդ վերնագիրը քարտեզի մանրամասնությա՞նն է վերաբերում, թե՞ քարտեզների վրա ներկայացված տնտեսական երևույթների բովանդակության ճշտությանը:

**Պատմական բաժնի** 12 քարտեզները ներկայացրել են Հայաստանը ուրարտական Հելլենիստական ժամանակաշրջանում, Հայաստանը I—II դարերում, X դարի վերջին և XI դարի սկզբին, մոնղոլական նվաճումների նախօրյակին, ինչպես նաև Ռուսաստանին միանալու նախօրյակին և Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի ու սովետական կարգերի հաստատման ժամանակաշրջանում:

Սակայն լավ կլիներ Ատլասում զետեղել մեր մատենագիրներ Շիրակացու և Խորենացու տեքստերին հարակատ քարտեզներ, որոնք հարուստ և բազմակողմանի աշխարհագրական գիտելիքներ են հաղորդել ո՛չ միայն հայ, այլև հարևան ժողովուրդների, նրանց տեղաբաշխման, տեղաշարժերի, ինչպես նաև սահմանների մասին:

Խիստ զգալի է բնակավայրերի և առանձին ֆիզիկա-աշխարհագրական օբյեկտների տեքստային համարակալված տեղեկատուի բացակայությունը, մանավանդ որ Հայկական ՍՍՌ բնակավայրերի մեծամասնությունը, անհասկանալի պատճառներով, չի տրված քարտեզների վրա: Նշենք նաև, որ այդպիսի խոշոր աշխատության մեջ տեղ են գտել լեզվական սխալներ և ոճական անհարթություններ: Այսպես, օրինակ, Հայկական ՍՍՌ-ն չի «կազմվել», (էջ V) այլ հաստատվել է պայքարի մարտերում: Մարդահամարը ազգաբնակչության քանակի մասին տվյալներ է ստանում և ոչ «գնահատանք» (էջ V). անիմաստ է նաև «ոռոգելի նախագծվող հողերը» արտահայտությունը (էջ 73) և, վերջապես, բոլոր մանրամասնությունները դիտվում են ոչ թե «քարտեզում» (էջ 110), այլ քարտեզի վրա և այլն:

Հայկական ՍՍՌ կոմպլեքսային Ատլասը լուրջ նվաճում է: Այն ողջունելի, խոշոր աշխատանք է վարչական, տնտեսական և աշխարհագրական պայմաններն ուսումնասիրելու, երկրի արտադրողական ուժերի և բնական հարստությունների ռացիոնալ օգտագործման հնարավորությունները պարզելու, պետական պլանավորող հիմնարկների կարիքները բավարարելու, գիտական հետազոտությունների, ինչպես նաև փաստական տվյալներ հաղորդելու համար:

Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

## ՇԻՆԱՐԱՐՆԵՐԸ ԼՈՒՐՋ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԵՆ ՍՊԱՍՈՒՄ «ԵՐԵՎԱՆ» ԹԵՐԹԻՑ

Ասել, թե «Երևան» թերթը քիչ տեղ է հատկացնում շինարարության հարցերի լուսաբանմանը, ճիշտ չի լինի: Վերջին մի քանի ամսում այդ թեմայով նյութերի կարելի է հանդիպել նրա գրեթե յուրաքանչյուր համարում: «Երևանի շինարարական հրապարակում», «Երևանը կառուցվում է», «Ոչ մի խոչընդոտ շինարարությանը», «Բնակարանային շինարարությանը կանաչ փողոց» և այլ ընդհանուր խորագրերի տակ թերթում պարբերաբար հանդես են գալիս շինարար բանվորներ, աշխղեկներ, ինժեներներ, պարտիական ու տնտեսական օրգանների աշխատողներ, որոնք պատմում են շինարարական աշխատանքների ընթացքի, ձեռք բերված հաջողությունների մասին, քննադատում թերությունները:

Այդ հոդվածների ու թղթակցությունների հրապարակումն արժանի է ուշադրության: Նրանցում բարձրացված և գործիմացությամբ լուսաբանված են շինարարներին հուզող հարցեր: Այդպիսիներից է, օրինակ, Հայկական ՍՍՌ վաստակավոր ռացիոնալիզատոր Լ. Խորասանյանի հոդվածը, որը տպագրված է այս տարվա փետրվարի 22-ի համարում: Հեղինակը գտնում է, որ խոշորապանել շենքեր կառուցելիս անհրաժեշտ է լայնորեն օգտագործել լենինգրադցիների ու մոսկվացիների առաջավոր փորձը: Մոսկվայում և Լենինգրադում այդպիսի շենքերի բոլոր մասերը պատրաստվում են գործարանային պայմաններում, կատարելագործված մեքենաների ու մեխանիզմների միջոցով, առաջավոր տեխնոլոգիական մեթոդներով, որոնք հնարավորություն են տալիս խոշորապանել շենքերը կառուցել ավելի արագ, էժան ու որակով: Մինչդեռ Երևանում, գրում է հեղինակը, այդ ուղղությամբ կատարվող աշխատանքում կան լուրջ թերություններ, որոնք խիստ բացասաբար են անդրադառնում ինչպես շինարարության որակի, այնպես էլ տեմպերի վրա:

Մեկ ուրիշ՝ «Մեկնաբանությունները ավելորդ են» խորագրով հոդվածում (1961 թ. դեկտեմբերի 20), թերթը, բերելով կոնկրետ փաստեր, սուր քննադատության է ենթարկել «Հայքիմարդշին» տրեստին և նրա № 2 շինվարչությանը, որոնց ղեկավարների անպատասխանատվության հետևանքով ձգձգվել է խրոմպիկի գործարանի բիքրոմատի արտադրական կորպուսի շինարարությունը: Նման նյութերը, անշուշտ, շատ են օգնում շինարարներին թերությունները վերացնելու, կառուցման տեմպերն արագացնելու և որակը բարելավելու գործում:

Սակայն մի քանի բովանդակալից հոդվածների հետ մեկտեղ, «Երևան»-ում հանդիպում ենք շինարարության հարցերին վերաբերող այնպիսի հոդվածների ու թղթակցությունների, որտեղ խոր կերպով վերլուծված չէ շինարարական աշխատանքների ընթացքը, կոնկրետ ու համոզիչ փաստեր չեն բերվում: Իսկ այդպիսի ընդհանուր դատողություններից կազմված հոդվածը չի կարող մոբիլիզացնել աշխատավորներին: Անդրադառնանք այդ կարգի նյութերից մի քանիսին:

Այս տարվա փետրվարի 21-ին թերթը հրապարակել է ՀԿՊ Երքաղկոմի շինարարության բաժնի վարիչ Ա. Մկրտչյանի «Պարտավորվել՝ նշանակում է կատարել» խոստումնալից վերնագրով հոդվածը:

Երևան քաղաքի շինարարական կոլեկտիվների 1961 թվականի աշխատանքային հաջողությունները նշելուց հետո հեղինակն ընդգծում է, որ այնուամենայնիվ շինարարական աշխատանքների պլանները թերակատարվել են, պակաս է կառուցվել 12 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն: «Սակայն ինչո՞ւ է այսպես: Ինչո՞ւ թերակատարվեց բնակելի տարածությունը շահագործման հանձնելու 1961 թվականի պլանը»: Հեղինակի փաստարկումներն այս առթիվ այնքան ընդհանուր են և վերացական, որ ընթերցողները կոնկրետ պատկերացում չեն կարող կազմել թերակատարման բուն պատճառների վերաբերյալ:

«Թող ուղեգիր չտան» վերնագրով թղթակցության մեջ նույնպես կարևոր հարց է բարձրացվում (1961 թվականի դեկտեմբերի 2-ին): Թերթը խնդիր է դնում, որ նորակառույց օբյեկտները շահագործման հանձնելուց առաջ պետք է շինարարական կազմակերպություններն անպայման մտահոգվեն շենքերի շրջակայքը բարեկարգելու խնդրով, քանի դեռ չի ավարտված բարեկարգումը, «ընդունող հանձնաժողովները» «թող շենքի շահագործման ուղեգիր» «չտան»: Ինչ խոսք՝ թերթն իրավացի է: Բայց հարկավոր էր թղթակցության մեջ կոնկրետ ցույց տալ, թե այդ ո՞ր շինարարական կազմակերպություններն են խախտում պետական օրենքները, շենքերը շահագործման հանձնում անբարեկարգ շրջապատով: Մինչդեռ թերթը բավարարվել է միայն նրանով, որ հիշատակել է, թե Հրազդանի մեծ կամրջի վրա և աջափնյա մասի նոր բնակելի շենքերի բակերում փոսեր ու շինարարական աղբակույտեր կան: «Եվ ոչ ոք այս երևույթի համար պատասխան չի տալիս» վրդովմունքով նկատում է թերթը: Բայց ո՞վ պետք է խմբագրությանը պատասխան տա, երբ այդ գործում մեղավոր շինարարական կազմակերպություններից և ոչ մեկի անունը թղթակցության մեջ չի տրվում:

Թերթում հաճախ ենք հանդիպում շինարարությունում տեղ գտած թերությունները մերկացնող նյութերի: Դա, իհարկե, լավ է: Սակայն այդ նյութերում միշտ էլ քննադատվում են միայն կողմնակի շինարարական կազմակերպություններն ու հիմնարկները, հեղինակներն անտեսում են իրենց շինարարական կազմակերպությունների աշխատանքի թերությունները, իսկ երբ նշում էլ են դրանք, ապա խիստ անհամարձակ, մեկ-երկու ընդհանուր նախադասությամբ: Այդ հոդվածներն այնպիսի տպավորություն են թողնում, որ միայն ուրիշներն են մեղավոր տվյալ շինարարական վարչության կամ տրեստի անբավարար աշխատանքի համար: Այս տեսակետից բնորոշ է, օրինակ, Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի շինարարության վարչության արտադրական բաժնի պետի տեղակալ էդ. Շահինյանի հոդվածը, որի վերնագիրն է՝ «Բոլոր ուժերն ու միջոցները գործարկվող օբյեկտներին» (1961 թ. դեկտեմբերի 13-ին): Չխոսելով այն մասին, որ թերթը մեծ ուշացումով է անդրադառնում նման խնդրին, այն ժամանակ, երբ տարին արդեն ավարտվում է, ցույց տանք, թե հոդվածում ի՞նչ է ասվում ժողտնտխորհի շինարարության վարչության տրեստների՝ «Հայքիմարդշին»-ի և «Գունարդշին»-ի աշխատանքում տեղ գտած թերությունների վերաբերյալ: Այդ մասին անպայման հանգամանորեն պետք է խոսվեր, որովհետև այնտեղ ասվում է, որ հիշյալ շինարարական կազմակերպությունները թերակատարել են իրենց առաջադրանքները, արդյունաբերական մի շարք կարևոր օբյեկտների կառուցումը ձգձգվում է: Ինչո՞ւ: Ի՞նչն է խանգարում նրանց:

«Արդյունաբերական օբյեկտները ժամանակին չգործարկելու հիմնական պատճառը պետք է որոնել կառույցներում աշխատանքի անբավարար կազմակերպման, մեխանիզմների, տրանսպորտային միջոցների վատ օգտագործման, շինարարության թույլ մեքենայացման մեջ»:

Ահա այն ամբողջը, ինչ ասված է «Հայքիմարդշին»-ի և «Գունարդշին»-ի աշխատանքի թերությունների վերաբերյալ: Այստեղ չկա քննադատություն, թերությունները բացահայտող ոչ մի փաստ: Իսկ երբ հերթը հասնում է ենթակապալառուական կազմակերպություններին, քննադատությունը շատ համարձակ է դառնում: Այստեղ արդեն նշվում են ազգանուններ, կոնկրետ փաստեր, ցույց է տրվում, թե որ օբյեկտը ինչ պատճառով է ետ մնացել և այլն: Հարկավ, քննադատությունը պետք է լինի սուր, դիպուկ, հասցեագրված և ոչ թե այդպիսին լինի միայն այն ժամանակ, երբ խոսքն ուրիշի մասին է:

Այդ նույն ոգով է գրված նաև «Գունարդշին» տրեստի պարտկազմակերպության բյուրոյի քարտուղար Ա. Գուրունյանի հոդվածը՝ «Պարտիան պահանջում է՝ պետք է կատարել» (1962 թ. հունվարի 23-ին):

«Մեր տրեստի կոլեկտիվը,—ասվում է հոդվածում,—թեև 1961 թվականի պլանը կատարեց 100,5 տոկոսով և ժամանակին շահագործման հանձնեց մի շարք կարևոր օբյեկտներ, բայց որոշ կառույցների շինարարությունը այնուամենայնիվ ձգձգվեց, պլանը թերակատարվեց»: Թե ո՞ր պլանն է կատարել տրեստը և ո՞րը թերակատարել, թող «Երևան»-ի խմբագրությունն ասի: Մի բան պարզ է, որ որոշ կարևոր օբյեկտներ շահագործման չեն հանձնվել: Ասվո՞ւմ է հոդվածում, թե կոնկրետ ինչպիսի թերություններ են խանգարել իրենց, տրեստի ո՞ր շինվարչություններն են վատ աշխատել և ինչո՞ւ, ովքե՞ր են մեղավոր գործի ձախողման համար: Ամենևին: Այստեղ էլ ամեն ինչ ավարտվում է մեկ ընդհանուր նախադասությամբ (որ ի դեպ նույնն է, ինչ նախորդ հոդվածինը) և ապա նորից անմիջապես քննադատությունն ուղղվում է ենթակապալառուական կազմակերպությունների հասցեին:

Թերթում տպագրվող յուրաքանչյուր հոդված պետք է լինի կուռ ու նպատակասլաց, զերծ ավելորդաբանություններից ու անճշտություններից: «Երևան»-ի խմբագրությունում, ըստ երևույթին, պատշաճ ուշադրություն չեն դարձնում այս հարցին: Դրանում համոզվելու համար կարելի է կարդալ, օրինակ, այս տարվա փետրվարի 16-ին տպագրված «Դա մանրուք չէ» վերնագրով հոդվածը: Այդ հոդվածի բովանդակությունը հետևյալն է. № 8 հատուկ մոնտաժային տրեստի աշխատանքները դանդաղում են, որով-

նետև ձեր-օնառ կոմբինատը մեկ ու կես ամսում թըվածին ամենևին չի մատակարարել տրեստին, իսկ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը տվել է ընդամենը 70 բալոն, մինչդեռ դրանք օրական պետք է մատակարարեն՝ առաջինը 40, երկրորդը՝ 20 բալոն: Չենք առարկում, այս մասին պետք է գրվեր և ցույց տրվեր, թե ինչու հիշյալ ձեռնարկությունները չեն կատարում իրենց պարտավորությունը շինարարների հանդեպ: Բայց ահա հոդվածագիրը, թերության պատճառները բացահայտելու փոխարեն, չգիտես ինչու, բավականացել է շաղակրատանքով:

«Կոմբինատի և գործարանի հարգելի ղեկավարներ,—գրում է նա,—մենք համոզված ենք, որ դուք շատ կարևոր միջոցառումներ եք իրականացնում 1962 թվականը նորանոր հաջողությունների տարի դարձնելու համար և հասկանալի պատճառով առանձնահատուկ ուշադրություն եք նվիրում արտադրանքի հիմնական տեսակների թողարկման և տեխնիկա-տնտեսական կարևոր ցուցանիշների պլանների կատարման վրա (?):

Մեր կարծիքով, սակայն, պակաս կարևոր չէ շինարարների նկատմամբ ունեցած պարտավորությունների կատարումը: Չէ՛ որ մի շարք օբյեկտներում կոդման աշխատանքները չեն կատարվում այդպիսի բալոններ չլինելու պատճառով, իսկ այդ խոչընդոտում է շինարարությանը, տեղի տափս մոնտաժողների արդարացի բողոքներին:

Ոչ մի խոչընդոտ շինարարությանը. սա պետք է լինի բոլոր այն ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատանքի նշանաբանը, որոնք պարտականություններ ունեն շինարարների հանդեպ: Չենք կասկածում, որ այդպես եք մտածում նաև դուք»:

Հարկ կա՞ր թերթի սուղ էջերը զբաղեցնել նման ավելորդաբանությամբ, մանավանդ, որ այդպիսի դատողություններ են արված նաև հոդվածի սկզբում: Նման թերություններից զերծ չեն նաև «Աշտարակ Երևան ջրատարի տրասսայում» (1962 թ. փետրվարի 1-ին) և այլ նյութեր:

Շինարարության հարցերի լուսաբանման ուղղությամբ թերթի աշխատանքում ուրիշ բացեր էլ կան, որոնք չի կարելի անտեսել:

Թերթը պարտավոր է շինարարներին օգնել ո՛չ միայն քննադատական ելույթներով, այլև այն պետք է լինի առաջավոր փորձի լավագույն պրոպագանդողը. այդ դերը «Երևան»-ը լավ չի կատարում: Ճիշտ է, նրանում քիչ չեն շինարարների դրական աշխատանքը դրվատող նյութերը, սակայն դրանց մեջ նկարագրվում են աշխատանքի ընթացքը, ձեռք բերված հաջողությունները միայն: Իսկ թե շինարարական առաջավոր կոլեկտիվները, բրիգադները աշխատանքի կազմակերպման ինչպիսի՞ եղանակներ են արմատավորել, ի՞նչպես են հասել բարձր ցուցանիշների, թերթն այդ մասին հանգամանորեն չի պատմում ընթերցողին: Մինչդեռ առաջավոր փորձի պրոպագանդան մեծապես կարող է օգնել շինարարներին՝ առաջադրված խնդիրները հաջողությամբ կատարելու գործում:

«Երևան»-ը հազվադեպ է գրում շինարարության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման, շինարարության արժեքի իջեցման, խնայողության ռեժիմի արմատավորման, շինարարական մեխանիզմների բարձր արտադրողական աշխատանքն ապահովելու, շինարարությունը ինդուստրիալ մեթոդներով առաջ տանելու և շինարարության էկոնոմիկայի այլ կարևոր հարցերի մասին: Քաղաքում մեծ ծավալ է ընդունել արդյունաբերական կարևորագույն օբյեկտների շինարարությունը, որոնք ժամանակին շահագործման հանձնելը վճռական նշանակություն ունի յոթնամյա պլանի կենսագործման համար մղվող պայքարում: Այնինչ թերթը դեռևս պատշաճ ուշադրությամբ չի լուսաբանում այդ օբյեկտների կառուցման աշխատանքների ընթացքը:

Երևան քաղաքում շինարարական աշխատանքները տարեցտարի ավելի ու ավելի են ծավալվում: Հետևապես, արդյունաբերական, բնակելի ու կուլտուր-կենցաղային օբյեկտները արագ, էժան և որակով կառուցելու հետ կապված բոլոր կարևոր հարցերը պետք է մշտապես գտնվեն թերթի ուշադրության կենտրոնում: Շինարարների բազմաբովանդակ առօրյան լայնորեն լուսաբանելու հետ մեկտեղ «Երևան»-ը պետք է լրջորեն հոգ տանի տպագրվող նյութերի որակը բարձրացնելու մասին: Հարկավոր է հասնել այն բանին, որ դրանք բոլորն էլ լինեն բովանդակալից ու նպատակասլաց, կոնկրետ պատկերեն շինարարների ստեղծագործական աշխատանքն ու կյանքը:

«Երևան» թերթում շինարարության հարցերին նվիրված հոդվածների գլխավոր թերությունը՝ կոնկրետության պակասն է, քննադատության անզեմությունը, որ մեր համոզմամբ. խմբագրությունը կարող է հաղթահարել:

Զ. ԱՅՎԱԶՅԱՆ
Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ԱՐՅԱՆ ԳՆՈՎ ՆՎԱՃՎԱԾ ԱՆԿԱԽՈՒԹՅՈՒՆ

*Մարտի 18-ին Էվիանում Ֆրանսիայի կառավարությունը և Ալժիրի Ռեսպուբլիկայի ժամանակավոր կառավարությունը ստորագրեցին համաձայնագիր Ալժիրում կրակը դադարեցնելու մասին: Ֆրանսիական իմպերիալիզմը յոթ ու կես տարվա արյունահեղությունից հետո հարկադրըվեց նահանջել և ճանաչել Ալժիրի ժողովրդի ինքնորոշման իրավունքը: Էվիանի համաձայնագիրը փաստորեն վերջ է տալիս Ֆրանսիայի ավելի քան 130-ամյա տիրապետությանն Ալժիրում:* Արյան գնով նվաճված անկախություն, *այսպես պետք է գնահատել Ալժիրի հերոսական ժողովրդի հաղթանակն իմպերիալիզմի նկատմամբ: Այդ խոշոր միջազգային-քաղաքական նշանակության փաստը ցույց է տալիս, որ իմպերիալիզմի ժամը հնչել է և նույնիսկ նրա ծայրահեղ ռազմաշունչ ջոկատները, ի վերջո, ստիպված ընդունում են սեփական պարտությունը:*

*Ֆրանսիական տիրապետության 132 տարիներն Ալժիրում եղել են արյունահեղ պատերազմների, պատժիչ արշավանքների, տնտեսական, քաղաքական ու կրոնական ռեպրեսիաների տարիներ: Ալժիրը նվաճողներից առավել դաժանը և արյունռուշտը՝ մարշալ Բյուժոն, Ֆրանսիայի գաղութակալական քաղաքականության դևիզն արտահայտել է լատինական երկու բառով.* «Ense et oratro» — *«սրով ու արորով»: 1840 թվականի մայիսի 14-ին հանդես գալով Ֆրանսիայի դեպուտատների պալատում, նա ցինիկաբար բացահայտեց այդ դևիզի իմաստը, ասելով. «Գաղութարարներին ամենուրեք պետք է տեղավորել այնտեղ, որտեղ կան լավ ջրեր և բերքառատ հողեր, առանց հարցնելու, թե ում են պատկանում այդ հողերը»: Ալժիրի ժողովրդի բոլոր թշնամիները Բյուժոյից մինչև Սալանը հավատարիմ մնացին այդ դևիզին: Մինչև վերջին ժամանակներն այդպես էին մտածում նաև դը Գոլը և նրա պարտիական համախոհներ՝ Դեբրեն, Շաբան-Դելմասը և ուրիշներ: Այդ տարիներին Ֆրանսիայի տիրապետող դասակարգերի համար Ալժիրը եղել է քաղաքական մեքենայությունների, շահավետ գործարքների և պառլամենտական կասկածելի ինտրիգների առարկա: Հազարավոր բախտախնդիրներ բուրժուական Ֆրանսիայի կարիերիստական սանդուղքով բարձրանալու համար որպես սպեկուլյացիայի միջոց ընտրել էին Ալժիրը՝ նրա հողն ու ընդերքը, բարիքներն ու մարդկանց և, նույնիսկ, բնությունն ու սովորությունները՝ կլորիկ գումարներով վաճառելով դրանք էկզոտիկայի սիրահարներին: 130 տարի շարունակ Ալժիրը փորձել են ներկայացնել որպես «ֆրանսիական երկիր», «Փոքրիկ Ֆրանսիա»:*

*«Ֆրանսիական երկիր»... Այժմ էլ, երբ իմպերիալիստական Ֆրանսիան ստիպված է ընդունել Ալժիրի անկախության գաղափարը, շատ ֆրանսիացիներ շարունակում են այդպես մտածել: Բայց միայն ռասիզմից և մոլեռանդ գաղութակալությունից կուրացած մարդիկ կարող են անտեսել այն պատմական իրողությունը, որ Ալժիրը ֆրանսիական կոչելու համար Ֆրանսիան ծախսել է 40 անհանգիստ տարիներ՝ լեցուն արյունահեղ պատերազմներով ու դիվանագիտական մեքենայություններով: Իսկ «ալժիրյան Ալժիրի» գաղափարն ընդունելու համար անհրաժեշտ եղավ յոթ և կես տարվա կեղտոտ պատերազմ:*




1. ՊՈՐՏՈՒԳԱԼԻԱ
2. ԻՍՊԱՆԱԿԱՆ ՍԱՀԱՐԱ

Ֆրանսիայի հարկադրաբար լքած դիրքերում։ Երկու դեպքում էլ զուտ ռազմական միջամտությունն սպասվող արդյունքներ չի տալիս և հարկ է լինում դիմել ամենակարող դոլարի օգնությանը։ Մի դեպքում դոլարների պատնեշով փորձում են կանխել ներքևից եկող արմատական ռևոլյուցիոն շարժումները, որոնք սպառնում են լինել Կուբայի օրինակի տարբերակը ու հեղեղի պես սրբել տանել ամերիկյան տիրապետության հետքերը։ Մյուս դեպքում ԱՄՆ-ը փորձում են բարեգործի և բարեկամի տպավորություն ստեղծել, որպեսզի գոնե արտաքուստ տարբերվեն իրենց հեղինակազուրկ պարտնյորներից։ Պետք է ասել, որ Միացյալ Նահանգները երբեք չեն խորշում օգտագործել իրենց դաշնակիցների դժվարությունններն ու թույլ կողմերը սեփական պիտակի հեղինակությունը բարձրացնելու համար։ Երկու դեպքում էլ նպատակը մեկն է՝ պահպանել և ընդլայնել ամերիկյան իմպերիալիզմի ազդեցության ոլորտները և աշխարհի ֆինանսական կեղեքման հնարավորությունները։

Ազգային-ազատագրական ռևոլյուցիաների համաշխարհային-պատմական պրոցեսի դեմ սկըսված կատաղի պայքարն ամերիկյան իմպերիալիզմը ներկայացնում է որպես հակակոմունիստական պայքար։ Պատահական չէ, որ ամերիկյան բուրժուական, ռեակցիոն մամուլը Քեննեդիի ուղերձում առաջարկվող տնտեսական ու ռազմական օգնության պլանը համարում է կոմունիզմի տարածման դեմ պայքարելու լավագույն միջոց։ Ինքը՝ պրեզիդենտը, իր ելույթներում շարադրելով ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության առանձնահատկությունները, բազմիցս ընդգծել է այդ հանգամանքը։ Մասնավորապես 1961 թվականի հունիսի 6-ի ռադիոելույթում, ամերիկացիներին պատմելով Վիեննայում Ն. Ս. Խրուշչովի հետ ունեցած զրույցի մասին, նա նշեց. «Պատրաստված կոմունիստների փոքր խումբը կկարողանա դժգոհություն և անկարգություններ տարածել այնպիսի երկրում, որտեղ տարեկան մեկ շնչին հասնող միջին եկամուտը կազմում է 60 կամ 70 դոլար և, հատկապես, դառնալ ամբողջ երկրի վերահսկողը»։

Քեննեդին գտնում է, որ այդ կանխելու համար բավական չէ միայն զինել ու մարզել այն բանակները, որոնք պետք է կռվեն «կոմունիստական ապստամբությունների դեմ։ Դրա համար նա առաջարկում է տնտեսական և այլ կարգի «օգնություն», ընդհուպ մինչև «լավագույն կառավարումը խրախուսելը», «լավագույն հարկային սիստեմը, հողի լավագույն բաշխումը» թելադրելը։ Այլ կերպ ասած, ամերիկյան իմպերիալիզմը, սարսափած ժողովուրդների ռևոլյուցիոն նախաձեռնությունից, հանդես է գալիս ուրիշ երկրների ներքին գործերը սեփական հայեցողությամբ տնօրինելու հավակնությամբ։

Այս պլաններն առաջարկելիս Քեննեդին վկայակոչում է ԱՄՆ-ի ռեսուրսները, անշուշտ ապավինելով դոլարի ուժին։ Սակայն ինքնագիտակցության հասած ժողովուրդները վաղուց ըմբռնել են, որ այդ ռեսուրսները միջազգային կողոպուտի արդյունք են և նրանցից փչում է ատելի գաղութակալության հոտ։ Այդ ամենից հետո բոլորովին էլ զարմանալի չէ, որ չնայած իր ողջ գայթակղիչ ուժին, դոլարը չի կարողանում ամենուրեք ուղի հարթել ամերիկյան ներթափանցման համար։ Դոլարներով դոլարները փրկելու ստրատեգիան ակներևորեն վրիպում է՝ կրելով պարտություն պարտության հետևից։

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ.,
ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ.,
ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ.,
ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ԱՍՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2—56—92

ՎՖ 09512, Պատվեր 978 | Տիրաժ 9820 | Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 16/IV 62 թ.

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան։



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՆԱՍՆԱԲՈՒԺԱԿԱՆ ՎԱԶԵԼԻՆ

Բաքվի 26 կոմիսարների անվան նավթավերամշակման գործարանում սինթեզվել է հատուկ անասնաբուժական վազելին։ Կոլտնտեսությունների և սովխոզների անասնապահական ֆերմաներում մինչև այժմ օգտագործում էին մաքուր բժշկական վազելին, որը շատ թանկ էր նստում։

Նոր սինթետիկ արտադրանքը, որն ստացվում է նավթից, իր հիմնական հատկություններով չի զիջում բժշկական վազելինին և էժան է նրանից մի քանի անգամ։

## ԻՆՔՆԱԹԱՓ ՄՈՏՈՌՈԼԵՐ

Կիրովի ժողտնտխորհի կոնստրուկտորները ստեղծել են «Վյատկա» մարկայի ինքնաթափ մոտոռոլեր։ Նրա վրա տեղավորված է 5,5 ձիաուժ հզորության երկտակտ միագլան շարժիչ։ Լրիվ բեռնվածության դեպքում 100 կմ ճանապարհի վրա այն ծախսում է 6,2 լիտր վառելանյութ։ Մոտոռոլերի արագությունը ժամում 40 կմ է։ Այն կշռում է ընդամենը 270 կիլոգրամ։ Մեքենան նախատեսված է ոչ մեծ տարածությունների վրա բեռներ տեղափոխելու համար։

## ՀԱՏՈՒԿ ՍԱՐՔ ԽՈԶԱՊԱՀՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Վրացլավի (Լեհաստան) «Ռադիոտեխնիկ» արդյունաբերական կոոպերատիվի մի խումբ աշխատողներ խոզապահների համար ստեղծել են հատուկ սարք, որի օգնությամբ հեշտությամբ կարելի է որոշել կենդանի խոզի ճարպի հաստությունը։ Սարքը հնարավորություն է տալիս ամենօրյա ճշգրտությամբ սահմանել խոզերի բտման ընթացքը և ընտրել լավագույն կերային ռացիոն։

## ՊԼԱՍՏՄԱՍՍԱՆԵՐԸ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Բուլղարիայի խոշոր պանելային շինարարության մեջ լայն կիրառում են գտել պլաստմասսաները։ Տարժական պատերի քաշը հասնում է մինչև 80 կիլոգրամի. դրա շնորհիվ հնարավոր է անցնել ազատ ներքին պլանավորման։ Բնակարանների հատակները և սանդուղքների ճաղաշարը պատրաստվում են պլաստմասսայից, ձայնը չհաղորդող միջադիրը՝ չկտրվող պլաստմասսայից։ Սանդղավանդակի համար ներդրվում է օգտագործել վինիլատային բետոն, կոյուղու խողովակների համար՝ էտերնիտ և պլաստմասսաներ։ Այդպիսի նյութերից պատրաստված շենքը սովորականից համարյա 3 անգամ թեթև է լինում։

## ՆՈՐ ՍԱՐՔ ԽԱՂՈՂԱԳՈՐԾՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Պլեվենի (Բուլղարիա) խաղողագործության և գինեգործության գիտա-հետազոտական ինստիտուտում ստեղծել են մի հետաքրքրական սարք, որը պատրաստում է հեղուկ՝ խաղողի թփերը սրսկելու համար։ Մետաղյա հեղուկամանի մեջ 2 մթնոլորտ ճնշման տակ մղում են անհրաժեշտ խտությամբ պղնձարջասպի և կրի լուծույթներ։ Այդ սարքը, որին սպասարկում է մեկ մարդ, մի ժամում կարող է պատրաստել 6000 լիտր հեղուկ։

## ՄԵԽԱՆԻԿԱԿԱՆ ՈՒՂԵՂ

Լոնդոնում պատրաստվում է ռոբոտ (մարդկային աշխատանքի տպավորություն գործող ավտոմատ), որը ընդունակ կլինի քայլելու, կարդալու, գրելու, լսելու և խոսելու։

Նա կարող է ճանաչել իր տիրոջը և շարժագանքել ուրիշներին։ Նրա աչքերը կազմված են լինելու 100 ֆոտոէլեմենտից, իսկ ուղեղը 4000 «բջիջից»։

Այդ մոդելի վրա հնարավոր կլինի մանրամասն ուսումնասիրել մարդկային ուղեղի աշխատանքը, լուծել նրա աշխատանքի բարելավման խնդիրները, կանխել ուղեղի հոգնածությունը, խանգարվածությունը։

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Վերջերս ռուսերեն լեզվով հրատարակվել է ուշագրավ մի գիրք՝ ԳԱԼԻՆԱ ՍԵՐԵԲՐՅԱԿՈՎԱՅԻ «ԿՐԱԿԻ ՀԱՓՇՏԱԿՈՒՄԸ» վեպը: Այստեղ կերտված է Մարքսի վեհ կերպարը իր ամբողջ մոնումենտալությամբ: Նա ռևոլյուցիոն անենկուն ու խիզախ մարտիկ է, բացառիկ բարոյական բարձր հատկանիշների, բյուրեղյա մաքրության տեր մարդ, ազնիվ բարեկամ, սիրելի ամուսին, գորովագութ հայր և մե՜ծ մտածող:

Վեպում ընդգրկված ռևոլյուցիոն մեծ իրադարձությունների, պատերազմների, դասակարգային սուր ընդհարումների այդ շրջանը հեղինակը պատկերել է մեծ վարպետությամբ, չմոռանալով նույնիսկ հերոսների կենցաղային մանրուքները, սակայն, առաջնությունը միշտ տալով պրոլետարիատի ռևոլյուցիոն շարժմանը:

Աշխույժ ոճով և ճշմարտացի վերարտադրելով Մարքսի կյանքն ու պայքարը, մտավոր խիզախումները, կենցաղային առօրյան, Սերեբրյակովան նրա կերպարը ավելի մոտ ու հարազատ է դարձնում ժամանակակից ընթերցողին, և դա այս գրքի անվիճելի, մեծագույն ծառայությունն է:

Գիրքն արժեքավոր է իր համոզչությամբ, շարադրանքի պարզությամբ ու թեմայի հրատապությամբ:

❊❊❊

Հրապարակի վրա է ռուսերեն լեզվով լույս տեսած հունական գրող-ժուռնալիստ ԱԼԵՔՍԱՆԴՐ ՊԱՐԱԴԻՍԻՍԻ «ԲԱԼԹԱԶԱՐ ՔՈՍԱՅԻ ԿՅԱՆՔՆ ՈՒ ԳՈՐԾՈՒՆՆՈՒԹՅՈՒՆԸ» պատմավեպագրական վեպը, որն ընթերցողներին հավաստի փաստերի հիման վրա ծանոթացնում է Հռոմի Հովհան 23-րդ պապի այլասերված կյանքի ավազակաբարո գործունեության սոսկալի եղելջների հետ: Սույն արժեքավոր վեպում վերակերտված է կաթոլիկական եկեղեցու միջնաբերդի՝ Վատիկանի, բռնություններով ու դավերով, կողոպուտով և սպանություններով, սեռական սանձարձակությամբ և ցինիզմով, խավարամտությամբ և քսությամբ հագեցած իշխանության մի կարևոր ժամանակաշրջան: Վարպետորեն միահյուսելով գեղարվեստական պատումներն ու պատմագիտական որոնումները, հեղինակը ցնցող մերկացումներով նկարագծել է Վատիկանի այն ռեակցիոն ուղին, որով նա ընթացել է դարեր ի վեր:

❊❊❊

«ՀԱԶԱՐԱՎՈՐ ԱՐԵՎՆԵՐԻՑ ՊԱՅԾԱՌ»: Ռ. Յունգը իր այս խիստ ուշագրավ գրքում ընթերցողին տանում է արևմտաեվրոպական և ամերիկյան ատոմագետների միջավայրը: Նրա հերոսները գիտական մեծ էրուդիցիայով ու վեհ ձգտումներով գիտնականներ են, որ իմացության անհագ ծարավով թափանցում են բնության ամենախորհրդավոր գաղտնիքների մեջ, ջանալով իրենց կյանքի ամեն մի ակնթարթը օգտակար դարձնել մարդկությանը: Բայց ծնունդ է առնում ատոմային ռումբի գաղափարը, սկսվում է տենդային մի աշխատանք, ու անա նրանք ամերիկյան խոշորագույն մոնոպոլիաների և ԱՄՆ-ի զինվորական իշխանությունների ձիրաններում են:

Գրքում կան բազմաթիվ գունեղ դետալներ կապիտալիստական աշխարհի գիտության մարդկանց կենցաղի ու նկարագրի մասին, բերված են չափազանց հետաքրքիր փաստական նյութեր: Այս ամենը ավելի համոզիչ են դարձնում գիրքը, որով հեղինակը մերկացնում է ամերիկյան պաշտոնական վերսիան այն մասին, որ իբր ատոմային ռումբի արտադրությունը պաշտպանական միջոց է, և ցույց է տալիս ամերիկյան «ատոմային դիվանագիտության» ծնած դրժբախտությունները, մերկացնում «ատոմային քաղաքականությունը» և մարդկությանը պայքարի է կոչում նրա դեմ:

❊❊❊

Գիտական մեծ հետաքրքրություն է ներկայացնում ՅՈՒ. Ի. ԿՈՐՅԱԿԻՆԻ «ԱՏՈՄԻ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ» գիրքը: Հեղինակը միանգամայն ճշմարտացի, գիտական փաստերի հիման վրա գեղարվեստական գունեղ խոսքով ընթերցողին հրամցնում է ատոմային էներգիայի ստացման պատմությունը, սկսած մարդկության ապրած հնագույն շրջանից, երբ ծնվեց ատոմի գաղափարը, մինչև մեր ժամանակները, որ անվանվում է ատոմային դար:

Գրքում ցույց է տրված, որ ատոմի գյուտը, ինչպես բոլոր խոշոր հայտնագործությունները, կատարվել է մարդկության բարօրությանը ծառայելու համար. ատոմային էներգիայի միջոցով ինչե՜ր ասես, որ հնարավոր չէ իրագործել, վարդը համար ստեղծել երջանիկ ապրելու հնարավորություն, բայց այն մարդատյաց իմպերիալիստների ձեռքում վեր է ածվել կենդանական աշխարհը ոչնչացնելու զենքի:

Կապիտալիստները խորհում են ավելի ահեղ, ավերիչ զենք ստեղծել նրանից, իսկ «Սովետական ժողովուրդը և ամբողջ առաջավոր ու պրոգրեսիվ մարդկությունը վճռականորեն պահանջում են՝ ԱՏՈՄԸ ՄԻԱՅՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ»,—այսպես է վերջանում այս գիրքը: